ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ

Kajuni, Manuel
Hnakhosutiwn Hayastani
551

# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ

Ի ՊԷՏՍ ԴՊՐՈՑԱՑ

Ի Հ. ՄԱՆՈՒԷԼԷ ՔԱՋՈՒՆՒՈՅ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԷ

303 ք.



ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1855

Grad
EREN
151
1.11.99

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ազգասիրութեան և հայրենասիրութեան եռանդը կը տեսնենք որ օր քան օրէ աւելնալու վրայ է մեր ազգին մէջ. որոյ համար ոչ սակաւ օգտակար կը ճանչնամք այն գրուածները՝ որ ազգին առաւելութեանցը, հնութեանցը և պատմութեանը վրայ կը խօսին յստակ և դիւրըմբռնելի ոճով և համառօտ խորհրդածութիւններով: Ազգ մը առանց ազգասիրաց, հայրենիք առանց հայրենասէր անձանց կ'ոչնչանան և անհետ կ'ըլլան, և եթէ մնան ալ երկրիս վրայ, կը մնան իբրև անկենդան անպիտան դիակ մը: Ամենուս պարտքն է ձեռքերնիս եկած օգնութիւնն ընել մեր ազգին յառաջադիմութեանը համար. և թէև բարիք կամ օգնութիւն որ ընեմք անոր, մեզի ըրած սեպելու եմք. վասն զի մենք ալ նոյն ազգին ամբողջութեանը, կամ թէ ըսեմ՝ անոր մար-

մեոյն մասն և անդամ եմք . և ինչպէս անոր փառացը և պարծանացը , նոյնպէս և անոր անարգանացը և անշքութեանը մասնակից եմք , և պէտք է այնպէս համարիմք զանձինս ! որովհետև միոյ հօր Հայկայ և Ս . Լուսաւորչի որդիք եմք . ուստի պէտք չէ արհամարհել զիրար , այլ կարեկից և օգնական ըլլալ , և աշխատիլ ընդհանուր ազգին յառաջադիմութեանը համար ։

Մեր դարուս մէջ յազգասիրութեան եռանդը վառողներուն գլխաւորներէն և առաջիններէն մէկը կրնամք սեպել մեր բազմարդիւն ԻՆՃԻՃԵԱՆ Վ . Հ . ՂՈՒԿԱՍ ՎԱՐԴԱՊԵՏը , որ հնացեալ և ցեցակեր գրչագրաց մէջէն և օտարազգի մատենագիրներէն ժողվելով ազգային հին աւանդները , շինեց իր եռահատոր ընդարձակ ՀԱՅՈՑ ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆը , որոյ արդիւնքը որչափ գովելի և աշխատութիւնը բազմարդիւն , այնչափ գործոյն մեծութեանը համար շատերուն անմատչելի է , և որն ալ աւելի գիտնոց քան թէ ժողովրդեան ու տղայոց կրնայ օգտակար ըլլալ ։ Այս պատճառաւ ձեռք զարկի առաջիկայ գործոյս , որուն մէջ , ինչպէս կը տեսնեն ընթերցողք , նոյն Մխիթարեան Հեղինակին պատմագրութեանց հետեւող եղած եմ , և

Մասնաւոր կերպով ջանացած եմ դիւրըմբռնե-
լի ընել այս համառօտ Հնախօսութիւնը ռամիկ
ժողովրդեան և ուսումնասէր պատանեաց , որ-
պէս զի ազգասիրութեան եռանդը ոչ միայն
գիտնոց այլ և հասարակ ժողովրդեան մէջ բոր-
բոքի , ունենալով իր ձեռքը համառօտ գիրք մը
ազգային հնութեանցը , աւանդութեանցը և
պարծանացը վրայ ։



# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ՀԱՅՈՑ

### ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

1. Ազգի մը Հնախօսութիւնը կամ Հնագիտութիւնը ինչ կը սորվեցնէ ։

Մասնաւոր ազգի մը Հնախօսութիւնը կը սորվեցնէ թէ նոյն ազգը երբ սկսած է, ինչ տէրութիւն, ինչ կարգ, ինչ օրէնք, ինչ կրօնք, ինչ սովորութիւն, ինչ գիտութիւն, և ինչ բնութիւն կամ մասնաւոր յատկութիւններ ունեցեր է ։

2. Հայոց ազգին սկզբնաւորութիւնը ո՞ւր և ինչպէս սկսեր է ։

Մեր ազգին սկզբնաւորութիւնն ու մեր երկրին հնութիւնը ճանչնալու համար, պէտք է որ նախ խօսինք Դրախտին տեղւոյն վրայ, ուր որ եղած է մեր ազգին մասնաւոր սկզբնաւորութիւնն ալ ։

## ԳԼՈՒԽ Ա.

### Դրախտին տեղւոյն վրայ:

3. Ո՞ւր էր դրախտը։

Շատ հաւանական ու զօրաւոր պատճառներով կ'երևի թէ Հայաստանի մէջ էր. բայց որովհետև սուրբ Գիրքը որոշ կերպով երկրին անունը չտար, անոր համար արտաքին պատմիչներէն շատը դրախտը Հայաստանէն դուրս օտար երկիրներու մէջ կը դնեն. Հայաստանի այլ և այլ կողմերուն աղէկ տեղեկութիւն չունենալով, և Մովսեսի բերած գլխաւոր նշաններուն աղէկ ուշ չդնելով, և մտքերնին դնելով թէ Ջրհեղեղի ատեն շատ մեծամեծ փոփոխութիւններ եղած են երկրիս վրայ, որով նաև դրախտին տեղն ալ բոլորովին կորսուած կամ փոխուած։ Բայց պէտք էին մտածել, որ Մովսէս մարգարէն Ջրհեղեղէն շատ ետքը այս բաները պատմելով դրախտին դիրքն ու գետերը աչքով տեսածի մը պէս կ'ըստորագրէ, և դրախտին չորս գետերուն երկուքին անունը Մովսեսի ժամանակէն ինչուան հիմա անփոփոխ մնացած է։ Ուրեմն Ջրհեղեղով կորսուած չէ անոր տեղը, հապա աւանդութեամբ ինչուան Մովսեսի ատենը հասած*։

* Սուրբ Գրքին դրախտին տեղւոյն համար դը-

Կ. Հիներէն որո՞նք եղան՚որ դրախտը Հայաստանէն դուրս օտար երկիրներու մէջ դրին ։

Ցովսեպոս և Ցանսեննիոս Եփրատէն ու Տիգրիսէն սկսելով մինչուան Հնդկաստանի Գանգէս ու Եգիպտոսի Նեղոս գետը տարածեցին դրախտին տեղը, Գանգէս գետը Փիսոն * և Նեղոսը Գեհոն կարծելով։ Ոմանք Կիլիկիայի մէջ Ատանա քաղաքին քովերը դրին, այս քաղքին անունը Ադին կամ Եդեմ բառին նմանութիւն մը ունենալուն համար. ոմանք ալ Մէտի-

բուցած խօսքերը. “Եւ տնկեաց Աստուած ըզ դրախտն յԵդեմ ընդ արևելս և եդ անդ զմարդն զոր ստեղծ...։ Եւ գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն, և անտի բաժանի ՚ի չորս առաջս. անուն միոյն Փիսոնն. նա է որ պատէ զամենայն երկիրն Եւիլատայ, անդ ուր ոսկին է, և ոսկի երկրին այնորիկ ազնիւ, և անդ է սուտակն և ակն դահանակ։ Եւ անուն գետոյն երկրորդի Գեհոնն, նա պատէ զամենայն երկիրն Եթովպացւոց. և գետն երրորդ Տիգրիս, նա է որ երթայ յանդիման Ասորեստանի. և գետն չորրորդ Եփրատէս„։

* Պէտք չէ զարմանալ որ մեր Խորենացին իր աշխարհագրութեանը մէջ Գանգէսին Փիսոն ու Նեղոսին Գեհոն անունները կու տայ. վասն զի ոչ եթէ ինքը իր քովէն կը դնէ այս անունները, հապա Պապ Աղեքսանդրացիէն առնլով, որոյ հետեւութեամբը շինած է իր աշխարհագրութիւնը. և իրեն հետեւած են Թովմա Արծրունի, Վարդան աշխարհագիր, և ուրիշներն ալ։

նէյին քովերը դրին նոյն պատճառաւ։ Հընդիկները ու Եւրոպացոցմէ ոմանք դրին Սէյլան կղզւոյն մէջ։ Յոյներն ու Լատինները Ափրիկէի մօտերը Երեկորնական ըսուած երկիր մը. ոմանք ալ Միջագետաց մէջ։

5. Նորերը ո՛ւր կը դնեն դրախտը։

Նորերէն ոմանք, ինչպէս նաև Հարտուին՝ դրին Պաղեստինի մէջ, ուր Մովսեսի բերած նշաններէն մէկն ալ չկայ. վասն զի Մովսէս Հրէաստանի կամ Արաբիոյ դըրքին նայելով հեռու կը դնէ դրախտին տեղը. Թող ուրիշ անյարմարութիւնները գետերուն, օդոյն, բերքին կողմանէ, և այլն։ Իսկ ուրիշները, ինչպէս նաև Յովհաննէս Քլէրք, դրին Ասորւոց երկիրը Լիբանանու կամ Դամասկոսի քովերը, Խրիսորրոա գետը Փիսոն սեպելով և Որոնդէս գետը Գեհոն։ Կելլարիոս երևելի հնագէտը դրաւ դրախտը Քաղդէացւոց աշխարհին մէջ, Եփրատէն ու Տիգրիսէն սկսեալ ինչուան Հնդկաստան տարածելով, Հնդկաստանի Իբարիս գետը Փիսոն կարծելով և Գանգէսը Գեհոն. սուրբ Գրքին մէջ յիշուած ամէն բերքերն ալ այս միջոցին մէջ գտնուելուն համար։ Բայց այս կարծիքը ուրիշ անյարմարութիւններէն զատ, այս ալ ունի, որ Աստուած դրախտը չափաւոր պարտէզ մը հաստատեց, չէ թէ այսչափ ընդարձակ տեղ մը, և ապսպրեց Ադամայ «գործել զնա և պահել»։

6. Օտար ազգաց մէջ ո՛րն եղած է աւելի

ընդհանուր կարծիքը դրախտին տեղւոյն վրայ ։

Օտար ազգաց մէջ ամենէն ընդհանուր կարծիքը այս է, թէ դրախտին տեղը կ'ըլ-նայ այն միջոցը, ուր Տիգրիս և Եփրատ գետերը Քաղդէացւոց աշխարհին մէջ Պասրայէն երկու օրուան ճամբայ վեր, կու գան կը միանան իրարու հետ, ուր է Խոռնա քաղաքը, և հինգ փարսախ տեղ եր-թալէն ետքը՝ նորէն կը բաժնուին երկու ճիւղ, որ կ'ըսուի հիմա Շադ-էլ-արապ, և կը թափին Պարսից ծոցը. այս միացած տե-ղը Եդեմ է կ'ըսեն. երկու առջի գետերը Եփրատ ու Տիգրիս, իսկ երկու վերջի ճիւ-ղերը Փիսոն և Գեհոն ։ Այս կարծիքը հնա-րեց Կալվին, որուն հետևեցան Սկալիգեր, Պետաւիոս, Պօշար, Մոռինոս, Հուետիոս՝ որ շատ հօչակեց այս կարծիքը ։

7. Ինչէ՞ն կը ցուցուի այս դրութեան սը-խալ ըլլալը ։

ա. Սուրբ Գիրքը կ'ըսէ. « Եւ գետ ելա-նէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն ». արդ Հուետիոսին կարծած Եդեմէն գետ չելլեր, հապա երկու գետ կը մտնէ Տիգրիս և Ե-փրատ ։ Շադ-իւլ-արապ ըսուած գետը չէ թէ իր կարծած Եդեմին մէջ կը բղխի՝ սուրբ Գրքին ըսածին պէս, հապա դրսէն կու գայ և հոսկէց կ'անցնի ։

բ. Կ'ըսէ սուրբ Գիրքը. « Եւ անտի բա-ժանի ի չորս առաջս ». Խոռնային քով, ուր կը դնէ դրախտը, չորս առաջք չբաժնուիր,

հապա մտնելէն ետքը երկու կը բաժնուի․ որով Հուետիոսին գրախտին տեղը երկու գետ մնած կ՚ըլլայ, այսինքն Եփրատ և Տի֊գրիս․ և երկու գետ դուրս ելած, որ իրեն ըսածին նայելով Փիսոն և Գեհոնն է, որք չէ թէ տեղէ մը կը բխին, հապա Տիգրի֊սէն ու Եփրատէն ձևացած են․ ուր սուրբ Գիրքը չորս գետ կը դնէ դրախտին մէջէն բխելու համար ։

գ․ Տիգրիսի համար կ՚ըսէ սուրբ Գիրքը․ « Նա է որ երթայ յանդիման Ասորեստա֊նի »․ այսինքն դրախտէն ելլելէն ետքը կ՚եր֊թայ Ասորեստանի կողմերը․ ուր Հուետիո֊սին կարծիքին նայելով թէ որ Խուզնա ըլ֊լար դրախտը, պէտք էր ըսել․ « Նա է որ գայ յերկրէն Ասորեստանեայց » ։

դ․ Տիգրիս և Եփրատ առաջուց միացած չէին, ինչպէս կ՚ըսեն Պլինիոս և Ստրաբոն, հապա 25 մղոն կամ ըստ Ստրաբոնի 7 մղոն իրարմէ հեռու կը թափէին Պարսից ծոցը․ ասով ալ բոլորովին կը փճանայ Հուետիո֊սին կարծիքը, վասն զի այն լիճը ուր չորս առաջք բաժնուած կ՚երևնան՝ վերջէն ե֊ղած է ։

ե․ Իրեն Փիսոն և Գեհոն ըսած երկու ճիւղերը չեն կրնար գետ ըսուիլ․ վասն զի մասնաւոր լեռնէ մը չեն բղխիր, և դար֊ձեալ պզտի առուներ են, որ 18 փարսախ տեղ երթալէն ետքը՝ կը թափին Պարսից ծոցը, ուստի չունին այն երկայնութիւնն ու ընթացքը, որոնց համար կ՚ըսէ սուրբ

Գիրքը թէ ընդարձակ երկիրներ կը պատեն։

8. Հուետիոսին կարծիքը ուրիշ որո՞նք մերժած են։

Հուետիոսին կարծիքը կը մերժեն նաև Պերթի աստուածաբանը, Կալմէթ, և Կելլարիոս։ Այս վերջինը շատ փաստերով մերժելէն ետքը, կ'ըսէ թէ Մովսեսին Գեհոն ու Փիսոն գետերուն վրայ ըրած ստորագրութենէն կ'իմացուի թէ հեռու աշխարհի գետեր են, անոր համար ալ կ'ըստորագրէ իրենց ընթացքը և զանազան բերքերը ուսկից որ կ'անցնին այս գետերը, որպէս զի Հրեայք կարող ըլլան դիւրաւ հասկընալ։ Իսկ թէ որ Խուռնա ըլլար դրախտը՝ հարկ չէր ըլլար այնչափ նշաններ տալ, վասն զի Խուռնա Արաբիոյ անապատին մօտիկ էր, ուր էին այն ատեն Հրեայք. ինչպէս որ Եփրատայ վրայ ալ քիչ կը խօսի, Հրէից մօտ ու ծանօթ ըլլալուն պատճառաւ։

Դարձեալ ինչպէս Եփրատն ու Տիգրիսը գետ կ'անուանէ, նոյնպէս նաև Փիսոնն ու Գեհոնը զատ գետեր կ'անուանէ. որ եթէ Հուետիոսին դրած տեղն ըլլար դրախտը, ինչպէս կրնար Մովսէս Տիգրիսի ու Եփրատայ մէկ մասը զատ գետ անուանել, և երկայն բարակ ստորագրել զասոնք, և բուն գետերը Տիգրիսն ու Եփրատը միայն անունով յիշել։

9. Ուրեմն դրախտին բուն տեղը ո՞ւր է։

Դրախտը Հայաստանի մէջ է, ինչպէս որ կը վկայեն նաև օտարազգիներէն Ռենալտ, Կալմէթ, Բասինի, Պերթի, Նիքոլա մեկնիչը, Լուպին աշխարհագիրը, Մարթինի սուրբ Գրոց մեկնիչը և ուրիշ մէկ քանի նոր աշխարհագիրներ։ Որովհետև դրախտին տեղւոյն գլխաւոր նշանը չորս գետերն են որ կը յիշուին սուրբ Գրքին մէջ, Եփրատ, Տիգրիս, Փիսոն և Գեհոն, ուստի նախ զասոնք քննենք։ Եփրատին ու Տիգրիսին համար ամէն օտարազգի ու ազգային մատենագիրները կ'ըսեն թէ Հայաստանէն կը բխին*, ուստի և ասոնց վրայ տարակոյս չեղեր. և կը մնան մէկալ երկու գետերը, Փիսոն և Գեհոն՝ որոնց վրայ միշտ տարակոյս եղած է, և զորոնք սուրբ Գրոց ըսածին նայելով պէտք է փնտռել Եփրատայ ու Տիգրիսի քովերը։

Եւ որովհետև կան Հայաստանի մէջ Տիգրիսի ու Եփրատին բխած տեղերուն մօտ երկու գետ, այսինքն Երասխ և Ճորոխ, հաւաստի պատճառներով կ'ըսենք թէ Երասխն է Գեհոն, Ճորոխը Փիսոն, թէպէտ և այս անունները բոլորովին աննման ըլլան առջիններուն. վասն զի անուանց փոփոխութիւնը հին ատենուան ուրիշ շատ տեղերու

* Տիգրիս գետը կը բխի Հայաստանի Չորրորդ Հայք ըսուած նահանգին Հաշտեանք գաւառին մէջէն. իսկ Եփրատը Կարնոյ լեռներէն։ Տե՛ս Աշխարհագր. հին Հայաստան. §. 34. 37։

վրայ ալ եղած է, և սակայն ասով տեղ մը իր տեղէն փոխուած չհամարուիր։ Դարձեալ, դրախտին Հայաստան ըլլալուն արգելք մը չըներ դրախտին չորս գետերուն քիչ մը իրարմէ հեռու տեղերէ բղխիլը. վասն զի ինչպէս որ կ'ըսէ Մարթինի մեկնիչը, « Պէտք չէ զարմանալ այս բանիս վրայ, որովհետև այս տեսակ փոփոխութիւններ գետերու, լճերու վրայ եղած են նաև ուրիշ տեղուանք ջրհեղեղներով, երկրաշարժներով և ժամանակին հնութեամբը։

10. Ի՞նչ պատճառներով կը ցուցուի թէ Ճորոխն է Փիսոն գետը։

Որոնք որ դրախտը Հայաստանին մէջ կը դնեն՝ Պտղոմէոսէն, Ստրաբոնէն, ու Պլինիոսէն յիշուած Փասիս գետը՝ որոյ աղբերակունքը Հայաստանին մէջն է կ'ըսեն, Եփրատ գետոյն մօտ, կը համարին որ սուրբ Գրքին մէջ յիշուած Փիսոն գետը նոյն իսկ Փասիսն է, որուն կը վկայէ նաև անուան մօտիկութիւնը։ Այս Փասիս գետոյն մեր լեզուով ըսուած է Ծորոխ կամ Ճորոխ, վասն զի օտարազգի մատենագիրները ինչ ընթացք որ կու տան Փասիս գետոյն, նոյնը կու տան ազգային մատենագիրները Ճորոխին։ Եւ ասոր ապացոյց՝ մեր Ճորոխ գետը օտարազգի հին աշխարհագիրներէն յիշուած չէ, և անոր տեղը Փասիսը։ Իսկ թէ որ Ճորոխը զատ գետ մը ըլլար, պէտք էր որ զայն ալ յիշէին, ուր Հայաստանի մէջի Ճորոխէն մանր գետերն ալ կը յիշեն։

Այս փասիս գետը ոմանք սխալմամբ և առանց քննելու կը նոյնացընեն Հիմակուան Ֆաշ կամ Րիոն ըսուած գետոյն հետ, որ կը բխէ Կովկասու լեռներէն, և կ'իյնի Վրաստանի հիւսիսային կողմը Հայաստանէն հեռու ։

11 . Ի՞նչպէս կը մեկնես սուրբ Գրքին այս վկայութիւնը որ կ'ըսէ Փիսոն գետոյն համար . « Նա է որ պատէ զամենայն երկիրն Եւիլատայ, անդ ուր ոսկին է, և ոսկի երկրին այնորիկ ազնիւ, և անդ է սուտակն և ակն պահանակ » ։

Եւիլատ երկիրը որոյ չորս կողմը կը պատէր Փիսոն գետը, կը կոչուի Եւիլա անունէն, որ Յեկտանայ տասուերկք որդւոց մէկն էր . և ինչպէս կը կարծուի թէ Ոփիր, որ նոյնպէս Յեկտանայ որդին էր, բնակեցաւ Սպեր, և իր անունովը կոչեց տեղը, այսանկ ալ իրեն եղբայրը Եւիլա բնակած կը կարծուի անոր մօտիկ . ուստի իրեն բնակած տեղը պիտի ըլլայ Սպերայ մօտ Խաղտիք աշխարհը ։ Վասն զի Եբրայեցիք Եւիլատայ տեղ կ'ըսեն Խաւիլաա, որ շատ նմանութիւն ունի մեր Խաղտիք բառին, որուն օտարազգի հին մատենագիրները կ'ըսեն Խալիվք կամ Քալիփք, որոյ գրեթէ չորս կողմը կը պատէ Ծորոխ կամ Ճորոխ գետը, կամ ըստ սուրբ Գրոց Փիսոն գետը * ։

* Սուրբ Գրոց մէջ յիշուած Սուտակը . Լտ. Carbunculo. տճ. Սեմճան՝ մութ կարմիր, ազնիւ և

12. Ի՞նչ պատճառներով կը ցուցուի թէ Երասխն է Գեհոն գետը :

Դրախտին իրեք գետերը գտնելէն ետև, հարկաւ կը հետևի որ չորրորդն ալ անոնց մօտերը ըլլայ, և այս է մեր Երասխ գետը՝ որ կը բխի Կարնոյ լեռներէն Եփրատ գետոյն բխած տեղւոյն մօտ : Երասխ գետոյն Յոյները կ՚ըսեն Արաքսիս :

Ոմանք Օքսոս գետը՝ որուն Արաբացիք Ծահուն կամ Ծէյհուն կ՚ըսեն, նոյն կարծեցին Գեհոնին հետ, արաբացի անուան նըմանութեանը նայելով*. բայց սխալ է այս կարծիքը. վասն զի — ա. այս գետը Կասպից ծովուն անդիի կողմը կ՚ըլլնի, և կը բղխի Թուրքաստանի մէջ Սմրղանդ քաղքին մօտ : — բ. այս գետը հին ատեն միշտ Օքսոս կը կոչուէր, և ետքը Արաբացիք Ծահուն կոչեցին :

13. Ի՞նչպէս կը մեկնուի սուրբ Գրքին

Թափանցիկ քար մի է, որուն կ՚ըսենք նաև Կուրկէհան և Կոյծ : Իսկ Դուհանակը. լա. Malachitta. պր. և տճ. Ցէհնէճ, կանաչագոյն գխմահար քար մի է : Այս քարերը Թէպէտ և չգտնուին հիմա այն կողմերը, սակայն կրնայ ըլլալ որ հին ատենը կային. և հիմա չէ մնացեր կամ հողոյն տակը ծածկուած կեցեր են. ինչպէս որ Կիպրոս կղզւոյն մէջ ալ հին ատեն այլևայլ գոհարներ կան եղեր, բայց հիմա չեն գտնուիր :

* Այս կարծիքիս հետևող է նաև մեր Մատթէոս ուռհայեցի պատմիչը որ կ՚ըսէ. "Անցեալ ընդ մեծ գետն Ջահունից որ կոչի Գեհոն" :

այս վկայութիւնը որ կ'ըսէ Գեհոն գետոյն համար. «Նա պատէ զամենայն երկիրն Եթովպացւոց»։

Նախ պէտք է գիտնալ թէ եօթանասնից թարգմանութիւնը ուր որ Եթովպիա կ'անուանէ, եբրայականը շատ հեղ Քուշ կը դնէ. և Յովսեպոս, Հարտուին, Պօշար և Կելլարիոս կ'ըսեն թէ, Քուշ կամ Եթովպացի ազգը թէ Ափրիկէի մէջ կը գտնուի, որ է հիմակուան Հապէշները, և թէ Ասիոյ մէջ, որ են Հնդկաստանի և Արաբիայի բնակիչները։ Դարձեալ, պէտք է գիտնալ որ Եբրայեցւոց քուս կամ քուշ անուանը Քաղդէացիք քուր կ'ըսէին. այս բանիս համար Կալմէտ Գուրք կամ Մկիւրացիք ըսուած ազգը, որ հին ատեն Երասխայ մօտ կը բնակէին, նոյն կը դնէ սուրբ Գրոց Եթովպիա ըսուած աշխարհին հետ։ Բայց ստոյգը մեզի այս կ'երևի թէ Մովսեսին Եթովպիա ըսած երկիրը ըլլայ Հայաստանի Արցախ և Ուտի նահանգները, որոց գրեթէ չորս բոլորը կը պատէ մէկ կողմէն Երասխ գետը, մէկալ կողմէն Կուր գետը, որ Երասխայ պէս մեծ է։ Թող որ հիները Եթովպացի կ'անուանէին ամէն սևամորթ ազգերը, այս պատճառաւ Եթովպացւոց անունը Հնդկաց ալ կու տային. ինչպէս Երեմիայի մէջ ալ կայ. «Միթէ փոխիցէ՞ Եթովպացին զմորթ իւր», ուր մեր թարգմանութիւնը կը դնէ Հնդիկ. Եթովպացի և Հնդիկը մի և նոյն բան նշանակելուն համար։

Կայ նաև Հայաստանի Ուտի նահանգին մէջ ժողովուրդ մը որ իրենց Սև կամ Սևուկ նախահաւուն անունովը Սևորդիք կոչուած են, ինչպէս կ'ըսէ Յովհաննէս Կաթողիկոս *։

14. Սուրբ Գիրքը ի՞նչ նշաններ կու տայ դրախտին տեղւոյն վրայ։

ա. Ինչպէս որ ըսինք, գլխաւոր նշանն է դրախտին չորս գետերը, որոնց բխած տեղերը չափաւորեալ միջոցի մէջ պէտք է որ ըլլան։

բ. Արևելեան կողմը պիտի ըլլայ։

գ. Արարատէն ու Հրէաստանէն հեռու։

դ. Չափաւոր մեծութիւն պիտի ունենայ, ու տեղն ալ ջրարբի ըլլայ։ Եւ ահա այս ամէն նշանները Հայաստանի մէջ ամբողջ կը գտնենք։

15. Ի՞նչպէս կը մեկնես սուրբ Գրքին այս վկայութիւնը. « Եւ տնկեաց Աստուած զդրախտն յԵդեմ ընդ արևելս ». արդեօք Հայաստան նոյն դիրքը ունի՞։

Սուրբ Գիրքը արևելեան կողմ կ'ըսէ, կամ Արաբիոյ անապատին դիրքը նայելով՝ ուր կը գրէր Մովսէս իր Հնգամատեանը, և կամ

* Թերևս Սև կամ Սևուկ անունը կը տրուի եղեր Քամայ կամ անոր Քուշ որդւոյն, ուսկից եկած է Սև կամ Սևորդիք անունը. վասն զի Քամ կ'ըստուգաբանի արևային ու սև. և աւանդութիւն է թէ Քամայ դէմքը սև էր։

Հրէաստանի դիրքին նայելով, ուր պիտի բնակէին Իսրայելացիք. և Հայաստան այս երկու դիրքին ալ նայելով արևելեան կողմը կ'իյնայ. վասն զի Ծննդոց գրքին մէջ կ'ըսէ Մովսէս Ջրհեղեղէն ետքը մարդկանց ցրուելուն համար. «Եւ 'ի խաղալն նոցա յԱրևելից». ամէնքը կը վկայեն թէ Մովսէս հոստեղը Արարատայ լեռները Արևելք անունով կոչած է։ Արդ Հայաստանի մէջ դնելով դրախտը, գ. նշանն ալ կը ստուգուի Արաբիայէն կամ Հրէաստանէն հեռու ըլլալը։

16. Եդեմ կամ Ադին-դրախտը Հայաստանի մէջ ո՞ր կողմը կ'իյնայ։

Շատ հաւանական կ'երևի թէ դրախտը կամ Եդեմը՝ Բարձր Հայոց մէջ Կարնոյ գաւառին կողմերը կ'ըյնի*, որոյ մօտ են Բիւրակնեան լեռները, որ կ'ըսուին նաև Կարնոյ լեռներ, ուսկից կը բղխին այս երեք գետերը Եփրատ, Երասխ, (որ է ըստ սուրբ Գրոց Գե-

*Եդեմը կամ դրախտը մեր բազմահմուտ Ինճիճեան Հ. Ղուկաս վարդապետը կը դնէ Չորրորդ Հայոց Հաշտեանք գաւառին մէջ, և կը ձգէ ինչուան Բիւրակնեան լեռներուն գօտիները։ Գաւառին անունը մօտիկ է հեշտին, հեշտեայ բառերուն, որ ըսել է Փափկութիւն. վասն զի Եդեմ բառը, որ շատերը յատուկ անուան տեղ կ'առնուն, ոմանք ալ փափկութեան նշանակութեամբ։ Հաշտեանք գաւառը շատաջուր, զուարճալի ու բարեբեր ըլլալուն համար, մեր թագաւորներուն որդւոցը բնակարան եղած էր։

հոն), Ծորոխ՝ (որ է փիւռն). և կը մնայ միայն անդին Տիգրիս գետը որ Զորրորդ Հայոց Հաշտեանք գաւառին մէջ կը բղխի, և շատ հեռու չէ մեկալ գետերուն բղխած տեղէն: Ուստի հաւանական կ'երևի թէ դրախտը Կարնոյ կողմերը կ'ըյնի, որոյ երկրին պտղաբերութիւնը գովելով Խորենացին կ'ըսէ իր պատմութեանը մէջ. արգաւանդահող, շատաջուր և բերրի:

17. Կարնոյ կողմերը ինչպէս են հիմա:

Դրախտին այս յատկութիւնները, այսինքն շատաջուր ըլլալը, երկրին առատ պտղաբերութիւնը, օդոյն գեղեցկութիւնը, ինչուան հիմա յայտնի կ'երևի Պինկէօլ ըսուած զօտևոր լեռներուն կողմերը, որ ըսել է հազար լիճ կամ բիւրակն և կ'ըյնի բարձր Հայոց մէջ որոյ համար կ'ըսէ Խորենացի. «Ըստ անուանդ բարձր է քան զամենայն երկիր, և ընդ չորս կողմանս արձակէ գետս»: Այս զօտևոր լեռները որ մինչև Զորրորդ Հայոց կողմերը կը ձգուին, իրենց ստորոտէն կը բխեն անթիւ աղբիւրներ, որ տեղ տեղ լճեր ու գետակներ կը ձևացընեն, և այս աղբիւրներուն շատութիւնը ցուցընելու համար տաճկերէն Պինկէօլ ըսուած է: Այս աղբիւրներուն կրնայ յարմարիլ սուրբ Գրոց ըսածը. «Եւ աղբիւր ելանէր յերկրէ և ոռոգանէր զամենայն երեսս երկրի», և կամ «Գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն». վասն զի ամէնն ալ մէկ նոյն լեռնէն և իրարու մօտ կը բխէին:

Այս գետակները կամ աղբիւրները որ եզակի կը յիշուին, դրախտը ոռոգանելէն ետև անկէ դուրս կ'ելլեն, և չորս առաջք բաժնուելով կը ձևացընեն դրախտին չորս գետերը ։

Այս ամէն պատճառներով հաւանական կը տեսնուի թէ դրախտը Հայաստանի մէջ եղած է, և այնչափ աւելի հաւանական, որչափ որ կը տեսնենք ուրիշ օտար կարծեաց սխալ ու անհիմն ըլլալը ։ Այս բանս քիչ պարծանք չէ մեր հայրենի երկրին որ երբեմն երանութեան բնակարան ու մարդկութեան խանձարուրք եղած է․ բայց աւա՜ղ որ հիմա թշուառութեան և ողորմելութեան մէջ կը տեսնուի ։

## ԳԼՈՒԽ Բ․

### Նոյի տապանին Հայաստան իջնելուն վրայ ։

18․ Ե՞րբ եղաւ ջրհեղեղը ։

Ըստ եօթանասնից հաշուին եղաւ աշխարհիս 2262 թուականին, իսկ ըստ Եբրայեցւոց կամ ժամանակագրաց հաշուին 1656ին․ քառասուն օր գիշեր ցորեկ անձրև գալով, ու երկնքի սահանքները և երկրիս աղբիւրները բացուելով, բոլոր երկիրս ջուրը կոխեց, ու ամենայն կենդանիք և մարդիկ ջնջուեցան բաց 'ի Նոյէն ու իրեն հետ եղած մարդիկներէն և կենդանիներէն ։

19. Ջրհեղեղէն ետև մարդիկ նախ ո՞ւր տեղ չատցան։

Ինչպէս մարդուս առջի բնակութիւնը Հայաստանի մէջ եղաւ, և հոն նախ մարդիկ սկսան չատնալ, նոյնպէս և երկրորդ բնակութիւնը ջրհեղեղէն ետքը հոն եղաւ. վասն զի Նոյ և իրեն տղաքը տապանէն ելլելէն վերջը՝ Մասիս լերան կողմերը բնակեցան։

20. Ո՞ւր իջաւ Նոյի տապանը։

Գրեթէ ամէն ազգ կը վկայէ թէ Հայաստանի լեռներուն վրայ իջաւ տապանը, սուրբ Գրքին խօսքին նայելով որ կ'ըսէ. «Եւ նստաւ տապանն յեօթներորդում ամսեան 'ի 27 ամսոյն 'ի վերայ լերանց Արարատայ». այսպէս կը դնէ նաև եբրայականը և սամարացին. իսկ Վուլկաթան և ասորւոց թարգմանութիւնը կը դնէ Արմէնիա, նոյն սեպելով Արարատն ու Արմէնիա։ Իսկ Արաբացւոց թարգմանութիւնը կը դնէ Քարտու լերանց վրայ՝ որ է Հայաստանի Կորդուաց լեռները, զատոնք Արարատեան լեռներուն հետ միացած կարծելով։

21. Արտաքին պատմիչներէն ո՞վ կը վկայէ տապանին Հայաստան իջնելուն վրայ։

Կը վկայեն տապանին Հայաստանի լերանց վրայ իջնելուն նաև արտաքին պատմիչներէն Աղեքսանդր Բազմավէպը 'ի քրոնիկոնին Եւսեբեայ, ըսելով. «Եւ տեղին յորում վայրք ելեալ կային (մարդիկ 'ի

Նաւէ) Հայոց աշխարհն էր», և դարձեալ. «Եւ ի Նաւէն ուր չոգաւ դադարեաց, և ցայժմ սակաւ ինչ մասն ՚ի Կորդուացւոց լերինն ՚ի Հայոց աշխարհին մնալ ասեն»: — Աբիւդենոս առ Եւսեբեայ. «Եւ Նաւն երթեալ յաշխարհ Հայոց դադարէր, և ՚ի փայտիցն դեղ օգնականութեան բնակչաց աշխարհին պարգևէր»: Բերոս քաղդէացին առ Եւսեբեայ. «Վիպագրեաց և վասն արկղակերտ տապանին՝ որով Նովքոս (Նոյ) նախնին մերոյ ազգիս ապրեցաւ, և երթեալ դադարէ ՚ի գլուխ լերանց Հայաստան աշխարհին»: Նոյնպէս նաև կը վկայեն թէ Հայոց լերանց վրայ իջաւ տապանը՝ Իսիդորոս, սուրբն Հերոնիմոս, Ոսկեբերան որ կ՚ըսէ.. «Հաւատայցէ՞ք արդեօք եթէ եղև Ջրհեղեղ, եթէ առանցելոց ինչ բանք թուիցին ձեզ, ուր և լերինքն յորս տապանն դադարեաց՝ վկայեն, զՀայոց լերանցն ասեմ»: Դարձեալ ուրիշ տեղ կ՚ըսէ. «Ապաքէն և զարդիս լերինք Հայաստանեայց վկայեն (վասն Ջրհեղեղին), ուր եկաց տապանն, ո՞չ ապաքէն և այժմ անդանօր պահեալ կան նշխարք նորա ՚ի մեր խրատ»: Ուստի աւելորդ է խօսիլ մէկ քանի աննշան մարդկանց կարծեացը վրայ, որք Արարատ լեռը Պարսկաստան, Միջագետք, Թաթարըստան, Չինու երկիրը դրին. վասն զի ուրիշ օտարազգի հեղինակներն ալ մերժած են անոնց կարծիքը:

22. Նոյի տապանը Հայաստան իջնելուն ինչ արտաքին ապացոյցներ ունինք:

Կը վկայեն տապանին Հայաստան իջնե-
լուն նաև ինչուան հիմա կեցած տեղւոյ ա-
նունները: Վասն զի՝ ինչպէս որ կը կար-
ծուի՝ այն տեղը ուսկից որ երևցան լեռ-
ներու գլուխները՝ Երևան կոչեցին նոյն ա-
տենուան մարդիկը: Ուր որ Նոյ տապանէն
ելլելէն ետքը իջաւ և բնակեցաւ՝ Նախ ճա-
շան կամ Նախ իջևան դրին: Ուր որ մեռաւ
և թաղուեցաւ Նոյ և անոր մօտ եղած գա-
ւառը կոչեցին Ագռոյոտն: Ուր որ Նոյ այգի
տնկեց, դրին Արկուռի որ վերջը ռամկօրէն
ըսուեցաւ Ակոռի*: Ուր որ Նոյի Նոյեմ-
զար կինը** թաղուեցաւ՝ Մարանդ (իբր մայր
անդ): Այս բառերուն նշանակութեանցը
վրայ դարձեալ կը խօսինք:

23. Առարկութիւն. Նոյի սերունդը որ կը
բնակէին Արարատայ լերանց կողմերը, ա-
րևելքի կողմէն ելան և եկան Սենաար դաշ-
տը (Ծն. ժա. 2). և հոն Բաբելոն քաղաքը
շինեցին. արդ Հայաստան Սենաարին ա-
րևելեան կողմը չըլնիր, հապա հիւսիսա-
կողմը:

Սուրբ Գիրքը կը խօսի, ինչպէս կ'ը-

* Այս գեղը 1840ին Մասեաց հրաբուխին տակ ծածկուեցաւ: Մեր նախնեաց գրքերուն մէջ գե-ղին անունը միշտ Ակոռի ըսուած է, Արկուռի չկայ:

** "Եւ Նոյ լեալ ամաց հինգհարիւրից ծնանի զՍեմ, զՔամ և զՅաբեթ 'ի Նոյեմզարայ կնոջէ իւրմէ,,. Սամուէլ Երէց:

սէ Պօշար, Ասորեստանեայց սովորութեանը համեմատ, որոց տէրութեանը մէջէն անցնելով Տիգրիսը, գրեթէ երկու հաւասար մաս կը բաժնէ: Արդ այն մասը որ Տիգրիսի անդիի կողմը կ'ըլնի կ'ըսեն Արևլեան, իսկ այն որ ասդիի կողմը կ'ըլնի՝ Արևմտեան: Որովհետև Արարատեան լեռները ուսկից մարդիկ ցրուեցան, կ'ըլնին Տիգրիսի անդիի կողմը անոր համար ալ սուրբ Գիրքը կ'ըսէ. « Ի խաղալն նոցա յարևելից »: Բայց թէ ինչպէս անցան Տիգրիսի ասդիի կողմը, պէտք չէ զարմանալ, վասն զի գիտէին այն ատեն նաւակ շինելու կերպը. բաց ասկէ կրնային առանց նաւակի ալ Տիգրիսին ծանծաղ տեղերէն անցնիլ, ինչպէս որ անցան մեծին Աղեքսանդրի զօրքերը Նինուէի մօտ:

24. Տապանին այլ և այլ կտորներուն վրայ ինչ գիտելիք կայ:

Բազմավէպն Աղեքսանդր* և Բերոսոս Բելայ քուրմը կը գրուցեն, թէ Հայաստանի Կորդուաց լեռներուն վրայ մնացած էր տապանին մէկ մասը, որոյ վրայէն քերուած նաւթը բժժանաց ու հիւանդութիւններէ

* Աղեքսանդր Բազմավէպ 'ի քրոնիկոնի Եւսեբեայ. " Եւ ցայժմ սակաւ ինչ մասն 'ի Կորդուացւոց լերին 'ի Հայոց աշխարհին մնալ նշխարս (տապանին) ասեն, և ոմանց քերել բերել 'ի ծեփածոյ նաւին նաւթոյ 'ի բժշկութիւն 'ի ջնջոց ցաւոց ինչ բժժանաց ":

առողջանալու համար կը գործածէին մարդիկ: Կը գրուցեն նաև Յովսեպոս և սուրբն Եպիփան Թէ տապանին այլևայլ կտորները կը գտնուին Կորդուաց լեռներուն վրայ: Ասկէ կ'երևի որ սուրբն Յակոբ Մծբնայ հայրապետէն շատ առաջ կային տապանին այլևայլ կտորները: Իսկ Կորդուաց լեռներուն վրայօք տես ինչ որ վերը ըսինք (20):

## ԳԼՈՒԽ Գ.

*Այլևայլ գիտելիք Նոյի ու անոր Սեմ, Քամ, Յաբէթ որդւոցը և անոնց սերնդոցը վրայ:*

25. Ջրհեղեղէն ետև ինչուան մարդկանց Հայաստանէն դուրս ցրուիլը մրջափ ատեն անցաւ:

Ջրհեղեղէն ետև ինչուան ժողովրդեան Սենաար դաշտը երԹալը Փաղէկ նահապետին ատեն, եօԹանասնից ու Սամարացւոց ճիշդ հաշուին նայելով, որ աւելի կը համաձայնի սուրբ Գրքին և արտաքին պատմուԹեանց, է 430 տարի*:

* Հոս եօԹանասնիցը նահապետաց կարգին մէջ Արփաքսադէն ետև ու Սաղայէն առաջ՝ որ Սեմայ չորրորդն է՝ կը յիշէ Կայնանը, որոյ 130երորդ (ըստ Խոր. 120երորդ) տարին ծնաւ կ'ըսէ Սաղան, ասով փոխանակ 432 տարի ըլլալու 562 տարի կ'ըլլայ ինչուան Փաղէկ: Բայց կ'երևի Թէ եօԹանասնից մէջ սխալմամբ մնած է Կայնանին

Հրէաստանի գրքին նայելով, ուր պիտի բնակէին Իսրայելացիք. և Հայաստան այս երկու գրքին ալ նայելով արևելեան կողմը կ'իյնայ. վասն զի Ծննդոց գրքին մէջ կ'ըսէ Մովսէս Ջրհեղեղէն ետքը մարդկանց ցրուելուն համար. « Եւ 'ի խաղալն նոցա յԱրևելից ». ամէնքը կը վկայեն թէ Մովսէս հօստեղը Արարատայ լեռները Արևելք անունով կոչած է։ Արդ Հայաստանի մէջ գնելով դրախտը, գ. նշանն ալ կը ստուգուի Արաբիայէն կամ Հրէաստանէն հեռու ըլլալը։

16. Եդեմ կամ Ադին դրախտը Հայաստանի մէջ ո՞ր կողմը կ'իյնայ։

Շատ հաւանական կ'երևի թէ դրախտը կամ Եդեմը՝ Բարձր Հայոց մէջ Կարնոյ գաւառին կողմերը կ'ըլլայ*, որոյ մօտ են Բիւրակնեան լեռները, որ կ'ըսուին նաև Կարնոյ լեռներ, ուսկից կը բղխին այս իրեք գետերը Եփրատ, Երասխ, (որ է ըստ սուրբ Գրոց Գե-

*Եդեմը կամ դրախտը մեր բազմահմուտ Ինճիճեան Հ. Ղուկաս վարդապետը կը դնէ Չորրորդ Հայոց Հաշտեանք գաւառին մէջ, և կը ձգէ ինչուան Բիւրակնեան լեռներուն զօտիները։ Գաւառին անունը մօտիկ է հէշփէնէ, հէշփէնայ բառերուն, որ ըսել է Φοινικόβιον. վասն զի Եդեմ բառը, որ շատերը յատուկ անուան տեղ կ'առնուն, ոմանք ալ փափկութեան նշանակութեամբ։ Հաշտեանք գաւառը շատաջուր, զուարճալի ու բարեբեր ըլլալուն համար, մեր թագաւորներուն որդւոցը բնակարան եղած էր։

հոն), Ծորոխ՝ (որ է Փիսոն). և կը մնայ միայն անդին Տիգրիս գետը որ Չորրորդ Հայոց Հաշտեանք գաւառին մէջ կը բղխի, և շատ հեռու չէ մէկալ գետերուն բղխած տեղէն: Ուստի հաւանական կ'երևի թէ դրախտը Կարնոյ կողմերը կ'ըյնի, որոյ երկրին պտղաբերութիւնը գովելով Խորենացին կ'ըսէ իր պատմութեանը մէջ. արգաւանդահող, շատաջուր և բերրի:

17. Կարնոյ կողմերը ինչպէս են հիմա:

Դրախտին այս յատկութիւնները, այսինքն շատաջուր ըլլալը, երկրին առատ պտղաբերութիւնը, օդոյն գեղեցկութիւնը, ինչուան հիմա յայտնի կ'երևի Բինկեօլ ըսուած գօտևոր լեռներուն կողմերը, որ ըսել է հազար լիճ կամ թիւրակն և կ'ըյնի բարձր Հայոց մէջ որոյ համար կ'ըսէ Խորենացի. «Ըստ անուանդ բարձր է քան զամենայն երկիր, և ընդ չորս կողմանս արձակէ գետս»: Այս գօտևոր լեռները որ մինչև Չորրորդ Հայոց կողմերը կը ձգուին, իրենց ստորոտէն կը բխեն անթիւ աղբիւրներ, որ տեղ տեղ լճեր ու գետակներ կը ձևացընեն, և այս աղբիւրներուն շատութիւնը ցուցընելու համար տաճկերէն Բինկեօլ ըսուած է: Այս աղբիւրներուն կրնայ յարմարիլ սուրբ Գրոց ըսածը. «Եւ աղբիւր ելանէր յերկրէ և ոռոգանէր զամենայն երեսս երկրի», և կամ «Գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն». վասն զի ամէնն ալ միևնոյն լեռնէն և իրարու մօտ կը բխէին:

Այս գետակները կամ աղբիւրները որ ե֊
զակի կը յիշուին, դրախտը ոռոգանելէն ե֊
տև անկէ դուրս կ'ելլեն, և չորս առաջք
բաժնուելով կը ձևացընեն դրախտին չորս
գետերը ։

Այս ամէն պատճառներով հաւանական
կը տեսնուի թէ դրախտը Հայաստանի մէջ
եղած է, և այնչափ աւելի հաւանական,
որչափ որ կը տեսնենք ուրիշ օտար կար֊
ծեաց սխալ ու անհիմն ըլլալը ։ Այս բանս
քիչ պարծանք չէ մեր հայրենի երկրին որ
երբեմն երանութեան բնակարան ու մարդ֊
կութեան խանձարուրք եղած է. բայց ա֊
ւա՜ղ որ հիմա թշուառութեան և ողորմե֊
լութեան մէջ կը տեսնուի ։

## ԳԼՈՒԽ Բ.

### Նոյի տապանին Հայաստան իջնելուն վրայ ։

18. Ե՞րբ եղաւ ջրհեղեղը ։

Ըստ եօթանասնից հաշուին եղաւ աշ֊
խարհիս 2262 թուականին, իսկ ըստ Ե֊
բրայեցւոց կամ ժամանակագրաց հաշուին
1656ին. քառասուն օր գիշեր ցորեկ անձրև
գալով, ու երկնքի սահանքները և երկրիս
աղբիւրները բացուելով, բոլոր երկիրս ջու֊
րը կոխեց, ու ամենայն կենդանիք և մար֊
դիկ ընկղմեցան բաց 'ի Նոյէն ու իրեն հետ
եղած մարդիկներէն և կենդանիներէն ։

19. Ջրհեղեղէն ետև մարդիկ նախ ո՞ւր տեղ չուացան։

Ինչպէս մարդուս առջի բնակութիւնը Հայաստանի մէջ եղաւ, և հոն նախ մարդիկ սկսան շատնալ, նոյնպէս և երկրորդ բնակութիւնը ջրհեղեղէն ետքը հոն եղաւ. վասն զի Նոյ և իրեն տղաքը տապանէն ելլելէն վերջը՝ Մասիս լերան կողմերը բընակեցան։

20. Ո՞ւր իջաւ Նոյի տապանը։

Գրեթէ ամէն ազգ կը վկայէ թէ Հայաստանի լեռներուն վրայ իջաւ տապանը, սուրբ Գրքին խօսքին նայելով որ կ'ըսէ. « Եւ նստաւ տապանն յեօթներորդում ամսեան 'ի 27 ամսոյն 'ի վերայ լերանց Արարատայ ». այսպէս կը դնէ նաև եբրայականը և սամարացին. իսկ Վուլկադան և ասորւոց թարգմանութիւնը կը դնէ Արմէնիա, նոյն սեպելով Արարատն ու Արմէնիա։ Իսկ Արաբացւոց թարգմանութիւնը կը դնէ Քարտու լերանց վրայ՝ որ է Հայաստանի կորդուաց լեռները, զասոնք Արարատեան լեռներուն հետ միացած կարծելով։

21. Առաջին պատմիչներէն ո՞վ կը վըկայէ տապանին Հայաստան իջնելուն վըրայ։

Կը վկայեն տապանին Հայաստանի լերանց վրայ իջնելուն նաև արտաքին պատմիչներէն Աղեքսանդր Բազմավէպը 'ի քրոնիկոնին Եւսեբեայ, ըսելով. « Եւ տեղին յորում վայրք ելեալ կային (մարդիկ 'ի

նաւէ) Հայոց աշխարհն էր», և դարձեալ. «Եւ ի նաւէն ուր չոգաւ դադարեաց, և ցայժմ սակաւ ինչ մասն 'ի Կորդուացւոց լերինն 'ի Հայոց աշխարհին մնալ ասեն»։ — Աբիւդենոս առ Եւսեբեայ. «Եւ նաւն երթեալ յաշխարհ Հայոց դադարէր, և 'ի փայտից դեղ օգնականութեան բնակչաց աշխարհին պարգևէր»։ Բերոս քաղդէացին առ Եւսեբեայ. «Վիպագրեաց և վասն արկղակերտ տապանին՝ որով Նովքոս (Նոյ) նախնին մերոյ ազգիս ապրեցաւ, և երթեալ դադարէ 'ի գլուխ լերանց Հայաստան աշխարհին»։ Նոյնպէս նաև կը վկայեն թէ Հայոց լերանց վրայ իջաւ տապանը՝ Իսիդորոս, սուրբն Հերոնիմոս, Ոսկեբերան որ կ'ըսէ.· «Հաւատայցէ՞ք արդեօք եթէ եղև ջրհեղեղ, եթէ առանցելոց ինչ բանք թուիցին ձեզ, ուր և լերինքն յորս տապանն դադարեաց՝ վկայեն, զՀայոց լերանցն ասեմ»։ Դարձեալ ուրիշ տեղ կ'ըսէ. «Ապաքէն և զարդիս լերինք Հայաստանեայց վկայեն (վասն ջրհեղեղին), ուր եկաց տապանն, ո՞չ ապաքէն և այժմ անդանօր պահեալ կան նշխարք նորա 'ի մեր խրատ»։ Ուստի աւելորդ է խօսիլ մէկ քանի աննշան մարդկանց կարծեացը վրայ, որք Արարատ լեռը Պարսկաստան, Միջագետք, Թաթարըստան, Չինու երկիրը դրին. վասն զի ուրիշ օտարազգի հեղինակներն ալ մերժած են անոնց կարծիքը։

22. Նոյի տապանը Հայաստան իջնելուն ինչ արտաքին ապացոյցներ ունինք։

Կը վկայեն տապանին Հայաստան իջնելուն նաև ինչուան հիմա կեցած տեղւոյ անունները: Վասն զի՝ ինչպէս որ կը կարծուի՝ այն տեղը ուսկից որ երևցան լեռներու գլուխները՝ Երևան կոչեցին նոյն ատենուան մարդիկը: Ուր որ Նոյ տապանէն ելլելէն ետքը իջաւ և բնակեցաւ՝ Նախիջաւան կամ Նախիջևան գրին: Ուր որ մեռաւ և թաղուեցաւ Նոյ և անոր մօտ եղած գաւառը կոչեցին Առնոյոտն: Ուր որ Նոյ այգի տնկեց, դրին Արկուռի որ վերջը ռամկօրէն ըսուեցաւ Ակոռի*: Ուր որ Նոյի Նոյեմզար կինը** թաղուեցաւ՝ Մարանդ (իբր մայր անդ): Այս բառերուն նշանակութեանցը վրայ դարձեալ կը խօսինք:

23. Առարկութիւն. Նոյի սերունդը որ կը բնակէին Արարատայ լերանց կողմերը, արևելքի կողմէն ելան և եկան Սենաար դաշտը (Ծն. ժա. 2). և հոն Բաբելոն քաղաքը շինեցին. արդ Հայաստան Սենաարին արևելեան կողմը չըյնիր, հապա հիւսիսակողմը:

Սուրբ Գիրքը կը խօսի, ինչպէս կ՚ը-

* Այս գեղը 1840ին Մասեաց հրաբուխին տակ ծածկուեցաւ: Մեր նախնեաց գրքերուն մէջ գեղին անունը միշտ Ակոռի ըսուած է, Արկուռի չկայ:

** “ Եւ Նոյ լեալ ամաց հինգհարիւրից ծնանի զՍեմ, զՔամ և զՅաբեթ 'ի Նոյեմզարայ կնոջէ իւրմէ „. Սամուէլ Երէց:

սէ Փօշար, Ասորեստանեայց սովորութեանը համեմատ, որոց տէրութեանը մէջէն անցնելով Տիգրիսը, գրեթէ երկու հաւասար մաս կը բաժնէ։ Արդ այն մասը որ Տիգրիսի անդիի կողմը կ՚ըլնի կ՚ըսեն Արևելեան, իսկ այն որ աստիի կողմը կ՚ըլնի՝ Արևմտեան։ Որովհետև Արարատեան լեռները ուսկից մարդիկ ցրուեցան, կ՚ըլնին Տիգրիսի անդիի կողմը անոր համար ալ սուրբ Գիրքը կ՚ըսէ. «Ի խաղալն նոցա յարևելից»։ Բայց թէ ինչպէս անցան Տիգրիսի աստիի կողմը, պէտք չէ զարմանալ, վասն զի գիտէին այն ատեն նաւակ շինելու կերպը. բաց ասկէ կրնային առանց նաւակի ալ Տիգրիսին ծանծաղ տեղերէն անցնիլ, ինչպէս որ անցան մեծին Աղեքսանդրի զօրքերը Նինուէի մօտ։

24. Տապանին այլ և այլ կտորներուն վրայ ինչ գիտելիք կայ։

Բազմավէպն Աղեքսանդր * և Բերոսոս Բելայ քուրմը կը գրուցեն, թէ Հայաստանի Կորդուաց լեռներուն վրայ մնացած էր տապանին մէկ մասը, որոյ վրայէն քերուած նաւթը բժժանաց ու հիւանդութիւններէ

* Աղեքսանդր Բազմավէպ 'ի քրոնիկոնի Եւսեբեայ. " Եւ ցայժմ սակաւ ինչ մասն 'ի Կորդուացւոց լերին 'ի Հայոց աշխարհին մնալ նշխարս (տապանին) ասեն, և ոմանք քերել բերել 'ի ծեփածոյ նաւին նաւթոյ 'ի բժշկութիւն 'ի ընչից ցաւոց ինչ բժժանաց "։

*առողջանալու համար կը գործածէին մար-
դիկ: Կը գրուցեն նաև Յովսեպոս և սուրբն
Եպիփան թէ տապանին այլևայլ կտորները
կը գտնուին Կորդուաց լեռներուն վրայ:
Ասկէ կ'երևի որ սուրբն Յակոբ Մծբնայ
հայրապետէն շատ առաջ կային տապանին
այլևայլ կտորները: Իսկ Կորդուաց լեռնե-
րուն վրայօք տես ինչ որ վերը ըսինք* (20):

## ԳԼՈՒԽ Գ.

### Այլևայլ գիտելիք Նոյի ու անոր Սեմ, Քամ, Յաբեթ որդւոցը և անոնց սերնդոցը վրայ:

25. *Ջրհեղեղէն ետև ինչուան մարդ-
կանց Հայաստանէն դուրս ցրուիլը որչափ
ատեն անցաւ:*

*Ջրհեղեղէն ետև ինչուան ժողովրդեան
Սենաար դաշտը երթալը Փաղէկ նահա-
պետին ատեն, եօթանասնից ու Սամա-
րացւոց ճիշդ հաշուին նայելով, որ աւե-
լի կը համաձայնի սուրբ Գրքին և ար-
տաքին պատմութեանց, է* 430 *տարի**:

** Հոս եօթանասնիցը նահապետաց կարգին մէջ
Արփաքսադէն ետև ու Սաղայէն առաջ՝ որ Սե-
մայ չորրորդն է՝ կը յիշէ Կայնանը, որոյ* 130*ե-
րորդ (ըստ Խոր.* 120*երորդ) տարին ծնաւ կ'ըսէ
Սաղան, ասով փոխանակ* 432 *տարի ըլլալու* 562
*տարի կ'ըլլայ ինչուան Փաղէկ: Բայց կ'երևի թէ
եօթանասնից մէջ սխալմամբ մտած է Կայնանին*

Այս միջոցին մէջ Նոյ Նահապետ քանի որ ողջ էր հօր պէս կ'առաջնորդէր ամենուն, և ամէնքը հանգիստ և խաղաղ կեանք կ'անցընէին երկրագործութեան և հովուութեան ետևէ ըլլալով, որով այս միջոցը ըսուեցաւ Ոսկեդար։ Ոմանք Ջրհեղեղէն ինչուան ժողովրդեան ցրուիլը ըստ Եբրայեցւոց հաշուին 100 տարի կը դնեն *։

անունը, վասն զի ոչ Եբրայեցւոց, և ոչ իսկ Սամարացւոց Թարգմանութեան մէջ կայ, որոյ հետ եօթանասնիցը ինչուան Փաղեկայ առեն համաձայն կ'երթայ՝ բաց այս սխալմունքէն։ Դարձեալ եօթանասնից Թարգմանութեան հին օրինակներուն մէջ Կայնանին անունը չկայ, և ետքերը մըտած է։ Այս բանիս ամենևին արգելք մը չըներ Ղուկասու աւետարանչին մէջ Կայնանին անունը յիշուիլը, վասն զի կ'երևի թէ մէկը Ղուկաս աւետարանչին լուսանցքին մէջ դնելով Կայնանին անունը, ետքը բնագրին մէջ մտեր է և այնպէս մնացեր կ'ըսեն իմաստունք։

* Ինճիճեան բազմարդիւն վարդապետը ըստ Եբրայեցւոց հաշուին 100 տարի կը դնէ ինչուան Փաղեկ նահապետին առեն (Հնախօս. Ա. էջ 282, 283, 305։ Հյ. Պատմ. Չամչեան. հտ. Ա. 155, 156), Կալմէթը իրեն առաջնորդ առնելով, և անկէց այլ և այլ հետևանքներ հանելէն զատ՝ կը հետևցընէ նաև թէ Հայկ Սենաար դաշտէն դառնալէն ետքը դեռ ողջ էր Նոյ Նահապետը։ Այս հաշիւը մեզի ստոյգ չերևիր, հապա ճշմարիտ է եօթանասնից ու Սամարացւոց հաշիւը որ կը դնեն ինչուան Փաղեկայ առեն 432 տարի, ուր եբրայականը կը դնէ 102 տարի. վասն զի՝ ա. անկարելի է

26. Ի՞նչ պատճառաւ ուզեցին մարդիկ Հայաստանէն ելլել երթալ։

Պատճառը սուրբ Գիրքը որոշ չըներ, բայց յայտնի կ'երևի թէ մարդկանց շատնալն

որ 100 տարուան մէջ այն աստիճան շատնայ ժողովուրդը, որ երկիրը իրենց չբաւելով, ելլեն երթան Սենաար դաշտը՝ ու հոնկէ ասդին անդին ցրուին, ուր երկրորդ դարուն սկիզբը 7,000 կամ 8.000 հազիւ շատցած կ'ըլլայ ժողովուրդը. իսկ հինգերորդ դարուն Փաղեկայ ատեն ինչուան 4.000,000 կամ 5,000,000։ Բ. Վուլկադային հաշուին նայելով Աբրահամու ծնունդը կ'իյնի ջըրհեղեղէն 292 տարի ետքը, այսինքն 58 տարի Նոյի մահուանէն առաջ, և 218 տարի Սեմայ մահուանէն առաջ։ Արդ թէ որ Աբրահամ տեսած ըլլար Նոյ և Սեմ նահապետները, անկարելի կ'երևնայ որ Մովսէս Աբրահամու վարքը պատմելու ատեն, չյիշէր սաանկ երևելի դիպուած մը. վասն զի Մովսէս այն ամէն բաները որ պարծանք մը կը բերեն Աբրահամ նահապետին՝ բոլորը կը յիշէ, ո՞ւր մնաց սաանկ մեծ պարծանք մը այս երկու նահապետները տեսած ըլլալուն և անոնց հետ խօսած ըլլալուն համար։ Ուրեմն Մովսեսի լռութենէն ալ կ'երևի թէ Աբրահամ նահապետ ոչ Նոյ տեսեր է և ոչ Սեմը։ Գ. Սուրբ Գրքին նայելով Աբրահամու կոչման ժամանակ ժողովուրդը շատցած էր, և ասդին անդին մանր տէրութիւններ կային, որոնք իրարու հետ սկսեր էին պատերազմիլ, որոցմէ ոմանք քիչ ատենէն ետքը մեծամեծ ինքնակալութիւններ եղան. այս ամէն բաները եղած չէր կրնար ըլլալ թէ որ ըստ Վուլկադային հաշուին ջրհեղեղէն ետև 367 տարի անցած ըլլար ինչուան Աբրահամու կոչումը. վասն զի անկարե-

էր, որով երկիրը չէր բաւեր իրենց. մանաւանդ ունեցած ոչխարներուն, կովերուն պատճառաւ, որ խիստ բազմաթիւ էին, վասն զի այն ատեն ամէնքն ալ հովուութեան և երկրագործութեան ետևէ կ'ըլլային։ Ուստի շատ հոգի ելան Հայաստանէն ու գնացին Սենաար դաշտը, և հոն լեզունին խառնակելով, ասդին անդին ցրուեցան։ Աւանդութիւն մը կայ թէ Նոյ դեռ

լի է որ այնչափ քիչ ժամանակի մէջ երկրիս վրայ այնչափ այլևայլ փոփոխութիւններ, ազգեր, ու թագաւորութիւններ ըլլան, որոնք բաւական ծաղկած էին. ուր որպէս զի տասնկ փոփոխութիւններ եղած ըլլան երկրիս վրայ, պէտք է գէթ ութը ինը դար աւելցընել անոնց վրայ. անոր համար շատ յարմար և ստոյգ կ'երևնայ եօթանասնից ժամանակագրութիւնը, որ ինչուան Աբրահամու կոչումը 1247 տարի կը դնէ, և արտաքին պատմութեանց ալ հակառակ չելլար, այլ կը միաբանի անոնց հետ։

Եօթանասնից ժամանակագրութիւնը քան զեբրայականը աւելի ընտրելնուս մէկ պատճառն ալ այս է, որ մեր նախնիքը սկզբանէ 'ի վեր միշտ եօթանասնիցը գործածած են, ինչպէս նաև Յոյները, նաև Լատինացիք ինչուան սրբոյն Հերոնիմոսի ատեն։ Այս Հնախօսութեանս մէջ թուականները եօթանասնից ժամանակագրութեանը համեմատ գրինք. ուստի Հայկազանց տէրութեան տևելը փոխանակ դնելու ըստ ժամանակագրաց հաշուին 1779 տարի, սկսելով 2107 տարի առաջ Քրիստոսի Ծննդենէն, դրինք 2018 տարի, այսպէս իմա և ուրիշ թուականներն ալ։

չմեռած բաժներ է աշխարհիս իրեք մասը իրեն Սեմ, Քամ, Յաբեթ որդւոցը ժառանգելու համար. ինչպէս որ կը յիշէ այս բանս սուրբն Եպիփան, և ուրիշներն ալ: Այս բանիս յիշատակութիւն կայ հեթանոսաց գրուածոց մէջ ալ, որ կ'ըսեն թէ Զրուան, Տիտան և Յապետոսթէ, կամ Դիոս, Պոսիդոն և Պղուտոն՝ իրենց մէջ երկիրս բաժնեցին, որ են Նոյի իրեք որդիքը՝ Սեմ, Քամ Յաբեթ:

27. Հեթանոսները Նոյին ի՞նչ անուն կու տային:

Հեթանոսները Նոյին Սատուռնոս անուն կու տային, որ ըստ Յունաց կ'ըսուէր նաև Կռոնոս. և իրեն Սեմ, Քամ, Յաբեթ որդիքը՝ կը կոչէին Դիոս, Պոսիդոն և Պղուտոն: Իսկ Ասորեստանեայք կոչեցին զՆոյ Քսիսութրոս իրենց թագաւորներուն մէկուն անուամբը: Նոյնպէս և ուրիշ արևելեան ազգերը, ինչպէս վերը ըսինք, Նոյին կ'ըսէին Քսիսութրոս, և իրեն որդւոցը՝ Զրուան, Տիտան, և Յապետոս: Դիցաբանութեան մեկնիչները կ'ըսեն թէ հեթանոսներէն ոմանք Քամին՝ Դիոս, կամ ըստ լատ. Եօվիս կամ Եուպիտէր կ'ըսէին, և Եգիպտացիք Ամմոն. Յաբեթին՝ Պոսիդոն կամ Նեպտուն, որ էր ծովու աստուած, վասն զի իրեն բաժին ինկան կղզիներն ու թերակղզիները, իսկ Սեմայ Պղուտոն անունը կու տային, որ կը նշանակէ մեծատուն:

28. Ո՞ւր էր Սեմայ բնակութեան տեղը:

Սեմ՝ որ է Զրուան կամ Զրադաշտ՝ որուն Ցոյնք և Հռոմայեցիք կ՚ըսեն Զորօաստր, նախ Հայաստանի Սիմ լեռը բնակեցաւ, որ իր անունովը կոչուած է. ետքը Պարսկահայք նահանգին Զարուանդ գաւառը, որ նոյնպէս իրեն անունովը կոչուեցաւ (Խոր. Ա. գ.)։

29. Տարբանին վրայ ինչ գիտելիք կայ։

Խորենացին Ոլոմպիոդոր փիլիսոփայէն առնլով կը գրուցէ, թէ Սեմայ պզտիկ տղոցմէ մէկը Տարբան անուամբ երեսուն մանչ զաւակով ու տասնըհինգ աղջիկ զաւակով և ուրիշ մարդիկներով՝ բաժնուեցաւ իր հօրմէն, և գնաց Տարօնայ կողմերը բնակեցաւ, զոր իր անունովը կոչեց. իսկ այն տեղը ուսկից որ իր զաւկըները իրմէ բաժնուեցան Ցրօնք անուանեց։ Այս Տարբանը ետքերը գնաց Բակտրիոյ կողմերը, բայց քիչ մը ատեն կենալէն ետքը ինքը դարձաւ, սակայն իր տղոցմէ մէկը հոն մնաց, որ եղաւ բակտրիացի Զօրօաստրը, որոյ վրայ ուրիշ տեղ կը խօսինք։

30. Աստղիկի և Որսիրայ վրայ ինչ գիտելիք կան։

Աստղիկ և Որսիր, ըստ աւանդութեան, Սեմայ քոյրն և եղբայրն էին. Աստղիկ բնակեցաւ Տարօնոյ մէջ, ուր կայ Աստղընբերդ կամ Աստղեբերդ, իր անունովը կոչուած։ Որսիր ալ բնակեցաւ Կորճայք նահանգին մէջ, ուր իրեն անունովը կոչուած կայ Որսիրանք գաւառը։

31. Եմուղին վրայ ի՞նչ գիտելիք կան։
Եմուղն Արամայ որդին Սեմայ թոռն էր (Ծն. Ժ. 23). որ ըստ Եբրայեցւոց է Հուլ։ Յովսեպոս Հուլը կը կոչէ նաև Ուղրոս, և իրեն բնակութիւնը Հայաստանի մէջ կը դընէ։ Պօշար հաւանական կը կարծէ թէ Ուղրոսէն եղած ըլլայ Ողինի անունը, որ է Ուտի, Հայաստանի տասնըհինգ նահանգներէն մէկը։

32. Յեկտան ո՞ւր բնակեցաւ։
Յեկտան Եբերայ որդին Սեմայ ցեղէն, բնակեցաւ Հայաստանի մէջ Մասիսին մօտիկ։ Պէտք չէ շփոթել այս Յեկտանը մէկալ Յեկտանին հետ՝ որ Աբրահամու և Քետուրայ որդին էր, և որ Արաբիային մէջ բնակեցաւ, ինչպէս որ Կալմէթ ալ կը հաստատէ։ Եբերայ որդին Յեկտանը տասուերեք որդի ունէր, որոնք Մասիսէն սկսեալ ինչուան Սոփիեր կամ Սպեր բնակեցան (§. 11)։

33. Ո՞ւր էր Յաբէթին բնակութեան տեղը։
Յաբեթ կամ Յապետոսթէ և կամ Պոսիդոն յայտնի է թէ առջի բերան Հայաստան բնակեցաւ, բայց որոշ չգիտցուիր թէ ուր էր իր բնակութեան տեղը, իսկ իրեն սերունդները ցրուեցան Փոքր Ասիա, Միջերկրական ծովուն կղզիները, Եւրոպա և Ասիոյ կողմերը։

34. Գամերայ վրայ ի՞նչ գիտելիք կան։
Գամերայ կամ Գոմերայ Յաբեթի որ-

դւոյն համար, կ'ըսէ Յովսեպոս թէ Գաղատիայի մէջ բնակեցաւ, և որ առաջուց Գոմարք կ'ըսուէր։ Բայց աւելի ստոյգ է թէ բնակեցաւ Գամիրք ըսուած երկիրը՝ որ է Կապադովկիա, ինչպէս որ կը վկայէ նաև մեր Յովհաննէս կաթողիկոս։

35. Մագոգին վրայ ինչ գիտելիք կան։

Մագոգ Յաբեթի երկրորդ որդին՝ բնակեցաւ, կ'ըսէ Պօշար, Ստրաբոնէն ու Պլինիոսէն յիշուած Կոկարենի գաւառին մէջ. վասն զի կ'ըսէ թէ Գոգ նոյն է Մագոգին հետ։ Արդ այս Կոկարինի ըսուած գաւառը մեր Գուգարք նահանգն է, որ իբր թէ ըլլար Գոգ հարք, այսինքն տեղի ուր բնակեցան Գոգայ կամ Մագոգայ հայրերը։ Բայց ետքը Մագոգին սերունդները ցրուեցան Կովկասու լեռներուն վրայ, անկէց անցան Ռուսաստան և Թաթարստանին վարի կողմերը, ուր են Մանչուք և Մողոլ ըսուած ազգերը, որ Մագոգ անունէն կոչած են։ Յովհաննէս կաթողիկոս Մագոգին սերունդներէն եղած է կ'ըսէ Կեղտաց, Գաղատացւոց և Մարաց ազգերը։

36. Մոսքին վրայ ինչ գիտելիք կան։

Մոսք Յաբեթին եօթներորդ որդին, ըննակեցաւ Մոսքիքեան լերանց վրայ, որոնք Հայաստանը Վրաստանէն կը բաժնեն, և կ'երթան ինչուան Պոնտոսի և Կապադովկիոյ կողմերը։ Այս զօտևոր լեռները կոչեցան Մոսքին անունովը, որոյ սերունդները գնացին նաև Մոսկովստան։ Ուստի

Մոսկովք անունը ելած կը կարծուի Մոսոք կամ Մոսքիք անունէն, որ Մոսքիքեան լեռներուն վրայ բնակող ազգ մ'էր, և հոնկէ գաղթական գնացին Ռուսաստան կամ Մոսկովստան. իսկ Ռուսաց անուան համար ոմանք կը զրուցեն թէ ելած է Ռոս կամ Ռաս անունէն, որ Երասխ կամ ըստ յն. Արաս գետոյն անուան աւրուածն էր, որ կը տրուէր նոյն գետոյն քով բնակող ազգի մը։ Այս ազգէն գաղթական երթալով Մոսկովստանի կողմերը Ռուսք կոչեցան։ Եզեկիէլի մէջ կը յիշուի Գոգ և Մագոգ Ռովսմեսովքայ իշխանը, որ Ռոսք և Մեսովք բառերէն միացած է, որ երկու զանազան ժողովրդոց անուններ էին։ Յովհաննէս Կաթողիկոս Եւսեբիոսէն առնլով՝ Լիւրիկեցիներն ալ Մոսոքէն ելած կը համարի։

37. Ասքանազին վրայ ինչ գիտելիք կան։

Ասքանազ որ Գամերայ որդին էր* բընակեցաւ նախ՚ի Հայաստան, և իրեն անունով մեր ազգն ալ Ասքանազեան ըսուեցաւ, ինչպէս որ կը վկայէ Յովհաննէս Կթ. որուն կը համաձայնի Ս. Գիրքն ալ Երեմիա մարգարէին բերնովը որ կ'ըսէ. « Պա-

* Յովհ. Կթ. զԱսքանազ կը դնէ Թիրասայ որդի, ըսելով. " Թիրաս որ երրորդ էր՚ի Յաբեթէ ծնաւ զերիս որդիս, զԱսքանազ, զՐիփատ և Թորգոմ,,. ուր սուրբ Գիրքը կ'ըսէ. " Որդիք Գամերայ Ասքանազ և Րիփաթ և Թորգոմ,,։

տուէր տուք յինէն այրարատեան թագաւորութեանցն և Աշքանազեան գնդին» ուր երկուքն ալ մէկ թագաւորութեան համար ըսուած են։ Նոքերը Աշքանազին ցեղէն գաղթական գնացին Փռիւգիա և Բիւթանիա, և հոն այլ և այլ քաղաքներ և գետեր իրենց անունովը կոչեցին։

38. Թորգոմին վրայ ինչ գիտելիք կան։

Թորգոմին համար՝ որ Գամերայ երրորդ որդին էր, զոր Խորենացի և Յովհ. Կթ. Թիրասայ որդի կը դնեն, կ'ըսեն արտաքին պատմիչներէն Եւսեբիոս, Թէոդորետոս և սուրբ Իսիդորոս՝ թէ Հայոց ազգին նախահաւն էր. իսկ Յովսեպոս, Հերոնիմոս և Պօշար՝ թէ Փռիւգացւոց ազգին էր. և հիմակուան մատենագիրներէն շատերը կ'ըսեն թէ Թորգոմացւոց աշխարհը Թորգոմանաց երկիրն էր, որ կ'ըյնի Թաթարստանի և Սկիւթիայի մէջ։ Բայց մենք ստոյգ ազգային պատմութեամբ գիտենք թէ Թորգոմ էր Հայկին հայրը, և ինչպէս Հայկին անունովը, նոյնպէս նաև Թորգոմին անունովը կոչեցաւ մեր ազգն ու աշխարհը, որ առաջ Աշքանազին անունովը կը կոչէր։ Այս բանս կ'ընդունին նաև Կալմէթ և ուրիշները, և սուրբ Գիրքն ալ կը վկայէ կոչելով. «Տունն Թորգոմայ 'ի ծագացն հիւսիսոյ». (Եզեկ. Բ. 60.) ուր կ'ըյնի Հայաստան։ Տարակոյս չկայ թէ նոքերը Թորգոմին սերունդներէն գնացին Թաթարստանի կողմերն ալ, ուր կ'երևի թէ Թուր-

քամանք և Թուրք ըսուած ազգերը Թորգոմին անունէն ելած են ։

39. Ո՞ւր է Գամայ բնակութեան տեղը ։

Գամ, ինչպէս ուրիշ տեղ ըսած ենք (§. 13), բնակած կ'երևի նախ Ուտի նահանգին մէջ, որոյ բնակիչները իրեն անունովը Սևորդիք կոչուեցան. և իրեն Գուշ որդին բնակած կ'երևի Արցախ նահանգին Գուստի գաւառին մէջ. ուսկից ելան գնացին իրեն յաջորդները նաև Սկիւթիա, Գուշանաց և Գթաց երկիրները, և Մազքութք որ կ'ըսուի նաև Մեծ Գորք ։

## ԳԼՈՒԽ Դ.

Հայկ, ու մեր տէրութեան սկզբնաւորութիւնը, և տէրութեան ընդարձակող թագաւորները *:

40. Թորգոմ մեր առաջին նախահայրը քանի՞ զաւակ ունէր ։

Թորգոմ՝ ինչպէս կ'ըսէ Ստ. Օրպէլեանը,

* Այս հնախօսութեանս մէջ մտքերնիս այն չէ որ ազգային պատմութիւն գրենք, հապա մեր Թագաւորներուն մէջ որոնք որ երևելի եղան քաջութեամբ և աշխարհաշէն գործքերով զանոնք միայն յիշատակել, Թողլով ուրիշ մանրամասն գիտելիքները ազգային պատմութենէ սորվելու ։ Իսկ նախարարութեանց վրայ կ'ուզենք ընդարձակ խօսիլ, դասատանց համար գրուած ազգային պատմութեանց մէջ տեղն 'ի տեղը՝ խօսուած չըլլալուն պատճառաւ ։

էր, որով երկիրը չէր բաւեր իրենց. մանաւանդ ունեցած ոչխարներուն, կովերուն պատճառաւ, որ խիստ բազմաթիւ էին, վասն զի այն ատեն ամէնքն ալ հովուութեան և երկրագործութեան ետևէ կ'ըլլային: Ուստի շատ հոգի ելան Հայաստանէն ու գնացին Սենաար դաշտը, և հոն լեզունին խառնակելով, ասդին անդին ցրուեցան: Աւանդութիւն մը կայ թէ Նոյ դեռ

լի է որ այնչափ քիչ ժամանակի մէջ երկրիս վրայ այնչափ այլեայլ փոփոխութիւններ, ազգեր, ու թագաւորութիւններ ըլլան, որոնք բաւական ծաղկած էին. ուր որպէս զի ասանկ փոփոխութիւններ եղած ըլլան երկրիս վրայ, պէտք է գէթ ութը ինը դար աւելցընել անոնց վրայ. անոր համար շատ յարմար և ստոյգ կ'երևնայ եօթանասնից ժամանակագրութիւնը, որ ինչուան Աբրահամու կոչումը 1247 տարի կը դնէ, և արտաքին պատմութեանց ալ հակառակ չըլլար, այլ կը միաբանի անոնց հետ:

Եօթանասնից ժամանակագրութիւնը քան զեբրայականը աւելի ընտրելնուս մէկ պատճառն ալ այս է, որ մեր նախնիքը սկզբանէ 'ի վեր միշտ եօթանասնիցը գործածած են, ինչպէս նաև Յոյները, նաև Լատինացիք ինչուան սրբոյն Հերոնիմոսի ատեն: Այս Հնախօսութեանս մէջ թուականները եօթանասնից ժամանակագրութեանը համեմատ գրինք. ուստի Հայկազանց տէրութեան տևելը փոխանակ դնելու ըստ ժամանակագրաց հաշուին 1779 տարի, սկսելով 2107 տարի առաջ Քրիստոսի Ծննդենէն, գրինք 2018 տարի, այսպէս իմա և ուրիշ թուականներն ալ:

չմնացած բաժներ է աշխարհիս իրեք մասը իրեն Սեմ, Քամ, Յաբեթ որդւոցը ժառանգելու համար. ինչպէս որ կը յիշէ այս բանս սուրբն Եպիփան, և ուրիշներն ալ։ Այս բանիս յիշատակութիւն կայ հեթանոսաց գրուածոց մէջ ալ, որ կ'ըսեն թէ Զրուան, Տիտան և Յապետոսթէ, կամ Դիոս, Պոսիդոն և Պղուտոն՝ իրենց մէջ երկիրս բաժնեցին, որ են Նոյի իրեք որդիքը՝ Սեմ, Քամ Յաբեթ։

27. Հեթանոսները Նոյին ի՞նչ անուն կու տային։

Հեթանոսները Նոյին Սատուռնոս անուն կու տային, որ ըստ Յունաց կ'ըսուէր նաև Կռոնոս. և իրեն Սեմ, Քամ, Յաբեթ որդիքը՝ կը կոչէին Դիոս, Պոսիդոն և Պղուտոն։ Իսկ Ասորեստանեայք կոչեցին զՆոյ Քսիսութրոս իրենց թագաւորներուն մէկուն անուամբը։ Նոյնպէս և ուրիշ արևելեան ազգերը, ինչպէս վերը ըսինք, Նոյին կ'ըսէին Քսիսութրոս, և իրեն որդւոցը՝ Զրուան, Տիտան, և Յապետոսը։ Դիցաբանութեան մեկնիչները կ'ըսեն թէ հեթանոսներէն ոմանք Քամին՝ Դիոս, կամ ըստ լատ. Եօվիս կամ Եուպիտեր կ'ըսէին, և Եգիպտացիք Ամոն. Յաբեթին՝ Պոսիդոն կամ Նեպտուն, որ էր ծովու աստուած, վասն զի իրեն բաժին ինկան կղզիներն ու թերակղզիները, իսկ Սեմայ Պղուտոն անունը կու տային, որ կը նշանակէ մեծատուն։

28. Ո՞ւր էր Սեմայ բնակութեան տեղը։

Սեմ՝ որ է Զրուան կամ Զրադաշտ՝ ո-րուն Յոյնք և Հռոմայեցիք կ'ըսեն Զօրօաստր, նախ Հայաստանի Սիմ լեռը բնակեցաւ, որ իր անունովը կոչուած է. ետքը Պարս-կահայք նահանգին Զարեւանդ գաւառը, որ նոյնպէս իրեն անունովը կոչուեցաւ (Խոր. Ա. գ.)։

29. Տարբանին վրայ ինչ գիտելիք կայ։

Խորենացին Ողոմպիոդոր փիլիսոփայէն առնլով կը գրուցէ, թէ Սեմայ պզտիկ տը-ղոցմէ մէկը Տարբան անուամբ երեսուն մանչ զաւակով ու տասնըհինգ աղջիկ զա-ւակով և ուրիշ մարդիկներով՝ բաժնուեցաւ իր հօրմէն, և գնաց Տարօնայ կողմերը բնա-կեցաւ, զոր իր անունովը կոչեց. իսկ այն տեղը ուսկից որ իր զաւկըները իրմէ բաժ-նուեցան Ցրօնք անուանեց։ Այս Տարբանը ետքերը գնաց Բակտրիոյ կողմերը, բայց քիչ մը ատեն կենալէն ետքը ինքը դար-ձաւ, սակայն իր տղոցմէ մէկը հոն մնաց, որ եղաւ բակտրիացի Զօրօաստրը, որոյ վրայ ուրիշ տեղ կը խօսինք։

30. Աստղիկի և Որսիրայ վրայ ինչ գի-տելիք կան։

Աստղիկ և Որսիր, ըստ աւանդութեան, Սեմայ քոյրն և եղբայրն էին. Աստղիկ բնա-կեցաւ Տարօնոյ մէջ, ուր կայ Աստղընբերդ կամ Աստղբերդ, իր անունովը կոչուած։ Որսիր ալ բնակեցաւ Կորճայք նահանգին մէջ, ուր իրեն անունովը կոչուած կայ Որ-սիրանք գաւառը։

31. Եմուզին վրայ ի՞նչ գիտելիք կան ։

Եմուզն Արամայ որդին Սեմայ թոռն էր (Ծն. Ժ. 23). որ ըստ Եբրայեցւոց է Հուլ ։ Յովսեպոս Հուլը կը կոչէ նաև Ոդրոս, և իրեն բնակութիւնը Հայաստանի մէջ կը դընէ ։ Պօշար հաւանական կը կարծէ թէ Ոդրոսէն եղած ըլլայ Ոդինի անունը, որ է Ուտի, Հայաստանի տասնըհինգ նահանգներէն մէկը ։

32. Յեկտան ո՞ւր բնակեցաւ ։

Յեկտան Եբերայ որդին Սեմայ ցեղէն, բնակեցաւ Հայաստանի մէջ Մասիսին մօտիկ ։ Պէտք չէ շփոթել այս Յեկտանը մէկալ Յեկտանին հետ՝ որ Աբրահամու և Քետուրայ որդին էր, և որ Արաբիային մէջ բնակեցաւ, ինչպէս որ Կալմէթ ալ կը հաստատէ ։ Եբերայ որդին Յեկտանը տասնուերեք որդի ունէր, որոնք Մասիսէն սկսեալ ինչուան Սոփիր կամ Սպեր բնակեցան (§. 11) ։

33. Ո՞ւր էր Յաբէթին բնակութեան տեղը ։

Յաբեթ կամ Յապետոսթէ և կամ Պոսիդոն յայտնի է թէ առջի բերան Հայաստան բնակեցաւ, բայց որոշ չգիտցուիր թէ ուր էր իր բնակութեան տեղը, իսկ իրեն սերունդները ցրուեցան Փոքր Ասիա, Միջերկրական ծովուն կղզիները, Եւրոպա և Ասիոյ կողմերը ։

34. Գամերայ վրայ ի՞նչ գիտելիք կան ։

Գամերայ կամ Գոմերեայ Յաբեթի որ-

դւոյն համար, կ'ըսէ Յովսեպոս թէ Գաղատիայի մէջ բնակեցաւ, և որ առաջուց Գոմարք կ'ըսուէր։ Բայց աւելի ստոյգ է թէ բնակեցաւ Գամիրք ըսուած երկիրը՝ որ է Կապադովկիա, ինչպէս որ կը վկայէ նաև մեր Յովհաննէս Կաթողիկոս։

35. Մագոգին վրայ ի՞նչ գիտելիք կան։

Մագոգ Յաբեթի երկրորդ որդին՝ բնակեցաւ, կ'ըսէ Պօշար, Ստրաբոնէն ու Պլինիոսէն յիշուած Կոկարենի գաւառին մէջ. վասն զի կ'ըսէ թէ Գոգ նոյն է Մագոգին հետ։ Արդ այս Կոկարիենի ըսուած գաւառը մեր Գուգարք նահանգն է, որ իբր թէ ըլլար Գոգ հարք, այսինքն տեղի ուր բնակեցան Գոգայ կամ Մագոգայ հայրերը։ Բայց ետքը Մագոգին սերունդները ցրուեցան Կովկասու լեռներուն վրայ, անկէց անցան Ռուսաստան և Թաթարստանին վարի կողմերը, ուր են Մանչուք և Մողոլ ըսուած ազգերը, որ Մագոգ անունէն կոչած են։ Յովհաննէս Կաթողիկոս Մագոգին սերունդներէն ելած է կ'ըսէ Կեղտաց, Գաղատացւոց և Մարաց ազգերը։

36. Մոսոքին վրայ ի՞նչ գիտելիք կան։

Մոսոք Յաբեթին եօթներորդ որդին, բընակեցաւ Մոսքիքեան լերանց վրայ, որոնք Հայաստանը Վրաստանէն կը բաժնեն, և կ'երթան ինչուան Պոնտոսի և Կապադովկիոյ կողմերը։ Այս զօտեոր լեռները կոչեցան Մոսոքին անունովը, որոյ սերունդները գնացին նաև Մոսկովստան։ Ռուսի

Մոսկովք անունը ելած կը կարծուի Մոսոք կամ Մոսքիք անունէն, որ Մոսքիքեան լեռներուն վրայ բնակող ազգ մ'էր, և հոնկէ գաղթական գնացին Ռուսաստան կամ Մոսկովստան. իսկ Ռուսք անուան համար ոմանք կը գրուցեն թէ ելած է Ռոս կամ Ռոսս անունէն, որ Երասխ կամ ըստ յն. Արաս գետոյն անուան աւրուածն էր, որ կը տրուէր նոյն գետոյն քով բնակող ազգի մը։ Այս ազգէն գաղթական երթալով Մոսկովստանի կողմերը Ռուսք կոչեցան։ Եզեկիէլի մէջ կը յիշուի Գոգ և Մագոգ Ռոսմեսովքայ իշխանը, որ Ռոսք և Մեսովք բառերէն միացած է, որ երկու զանազան ժողովրդոց անուններ էին։ Յովհաննէս Կաթողիկոս Եւսեբիոսէն առնլով՝ Լիւրիկեցիներն ալ Մոսոքէն ելած կը համարի։

37. Ազքանազին վրայ ինչ գիտելիք կան։

Ազքանազ որ Գամերայ որդին էր* բնակեցաւ նախ'ի Հայաստան, և իրեն անունով մեր ազգն ալ Ազքանազեան ըսուեցաւ, ինչպէս որ կը վկայէ Յովհաննէս Կթ. որուն կը համաձայնի Ս. Գիրքն ալ Երեմիա մարգարէին բերնովը որ կ'ըսէ. «Պա-

* Յովհ. Կթ. զԱսքանազ կը դնէ Թիրասայ որդի, ըսելով. “Թիրաս որ երրորդ էր'ի Յաբեթէ ծնաւ զերիս որդիս, զԱսքանազ, զՐիփաթ և Թորգոմ,,. ուր սուրբ Գիրքը կ'ըսէ. “Որդիք Գամերայ Ասքանազ և Րիփաթ և Թորգոմ,,։

տուէր տուք յինէն այրարատեան թագա-ւորութեանցն և Աշքանազեան ցեղին » ուր երկուքն ալ մէկ թագաւորութեան համար ըսուած են։ Ետքերը Աշքանազին ցեղէն գաղթական գնացին Փռիւգիա և Բիւթա-նիա, և հոն այլ և այլ քաղաքներ և գետեր իրենց անունովը կոչեցին։

38. Թորգոմին վրայ ի՞նչ գիտելիք կան։

Թորգոմին համար՝ որ Գամերայ երրորդ որդին էր, զոր Խորենացի և Յովհ. Կթ. Թիրասայ որդի կը դնեն, կ'ըսեն արտաքին պատմիչներէն Եւսեբիոս, Թէոդորետոս և սուրբ Իսիդորոս՝ թէ Հայոց ազգին նախա-հաւն էր. իսկ Յովսեպոս, Հերոնիմոս և Պօշար՝ թէ Փռիւգացւոց ազգին էր. և հիմա-կուան մատենագիրներէն շատերը կ'ըսեն թէ Թորգոմացւոց աշխարհը Թորգոմանաց երկիրն էր, որ կ'ըյնի Թաթարստանի և Սկիւթիայի մէջ։ Բայց մենք ստոյգ ազ-գային պատմութեամբ գիտենք թէ Թորգոմ էր Հայկին հայրը, և ինչպէս Հայկին անու-նովը, նոյնպէս նաև Թորգոմին անունովը կոչեցաւ մեր ազգն ու աշխարհը, որ ա-ռաջ Աշքանազին անունովը կը կոչէր։ Այս բանս կ'ընդունին նաև Կալմէթ և ու-րիշները, և սուրբ Գիրքն ալ կը վկայէ կոչելով. «Տունն Թորգոմայ 'ի ծագացն հիւսիսոյ». (Եզեկ. Բ. 60.) ուր կ'ըյնի Հայաստան։ Տարակոյս չկայ թէ ետքերը Թորգոմին սերունդներէն գնացին Թաթար-ստանի կողմերն ալ, ուր կ'երևի թէ Թուրք-

քամանք և Թուրք ըսուած ազգերը Թորգոմին անունէն եղած են ։

39. Ո՞ւր է Քամայ բնակութեան տեղը ։

Քամ, ինչպէս ուրիշ տեղ ըսած ենք (§. 13), բնակած կ'երևի նախ Ուտի նահանգին մէջ, որոյ բնակիչները իրեն անունովը Սևորդիք կոչուեցան. և իրեն Քուշ որդին բնակած կ'երևի Արցախ նահանգին Քուստի գաւառին մէջ. ուսկից ելան գնացին իրեն յաջորդները նաև Սկիւթիա, Քուշանաց և Գթաց երկիրները, և Մազքութք որ կ'ըսուի նաև Մեծ Գուրք ։

## ԳԼՈՒԽ Դ.

*Հայկ, ու մեր տէրութեան սկզբնաւորութիւնը, և տէրութեան ընդարձակող թագաւորները *:*

40. Թորգոմ մեր առաջին նախահայրը քանի՞ զաւակ ունէր ։

Թորգոմ՝ ինչպէս կ'ըսէ Ստ. Օրպէլեանը,

* Այս Հնախօսութեանս մէջ մտքերնիս այն չէ որ ազգային պատմութիւն գրենք, հապա մեր թագաւորներուն մէջ որոնք որ երևելի եղան քաջութեամբ և աշխարհաշէն գործքերով զանոնք միայն յիշատակել, թողլով ուրիշ մանրամասն գիտելիքները ազգային պատմութենէ սորվելու ։ Իսկ նախարարութեանց վրայ կ'ուզենք ընդարձակ խօսիլ, դասատանց համար գրուած ազգային պատմութեանց մէջ տեղն 'ի տեղը' խօսուած չըլլալուն պատճառաւ ։

ութը զաւակ ունէր աչաւոր և հսկայ մարդիկ, որոց առջինը ու մեծն էր Հայկ, ետքը Քարթլաւս կամ Քարթլօս, Բարդաւս, Մովկան, Լեկան, Հերաւս, Կովկաս և ութերորդը Եգրէս։ Թորգոմ ասոնց վրայ բաժնելով իր ժառանգութիւնը, Հայկին տըւաւ Հայաստանը բոլոր իր սահմանովը մէկտեղ. իսկ Վրաստանը և ուրիշ սահմանակից երկիրները Քարթլաւսին և մէկալ որդւոցը։

41. Հայկին վրայ ինչ գիտելիք կան։

Հայկ՝ Թորգոմայ որդին՝ Նոյէն առնլով հինգերորդ էր. վասն զի Նոյին որդին Յաբեթ, Յաբեթի որդին Գամեր, Գամերայ որդին Թորգոմ, Թորգոմի որդին Հայկ։ Հայկ Բաբելոնի աշտարակը շինողներուն մէկն էր. բայց երբոր ուրիշներուն հետ իր լեզուն ալ խառնակեցաւ, ու իմացաւ Աստուծոյ բարկութիւնը, չուզելով Նեբրովթայ հնազանդիլ, որ կ'ուզէր ինքզինքը Աստուծոյ պէս պաշտել տալ, և ուզելով Հայկ աստուածպաշտութեան մէջ հաստատ մնալ, դարձաւ Հայաստան իբր 140 տարիէն ետքը, ուր որ կային այլևայլ ժողովուրդներ աղխանդին Հայաստանի զանազան կողմերը, որոց լեզուն անփոխ մնացեր էր. և Հայկ իր կորսնցուցած լեզուն նորէն սովրեցաւ, որ էր հայերէն լեզուն, մէկդի թողլով իր վերջէն իբրև պատիժ ունեցած լեզուն։ Հայկ երբոր Սենաար դաշտը գնաց 130 տարուան էր, և հոն ծնաւ զԱրմենակ, զՄանաւազ, զԽոռ, և այլն։

42. Ի՞նչ պատճառաւ Սենաար դաշտին մէջ մարդկանց լեզուն խառնակեցաւ։

Մարդիկ բազմութեամբ Հայաստանէն ելլելէն ետև երբոր հասան Սենաար դաշտը որ Ասորեստանի մէջ է, հոն դեռ իրարմէ չբաժնուած ուզեցին ամբարտաւանութեան խորհուրդով բարձր աշտարակ մը շինել, և անով իրենց անունը անմահ թողուլ*։ Այս բանս մեծ չարութեան գործ կը համարին Ոսկեբերան և սուրբն Օգոստինոս։ Բայց ինչպէս որ ստոյգ կ'երևի, աշտարակաշինութեան գործոյն մէջ մտաւ նաև կռապաշտութեան խորհուրդ, որով ուզեցին աշտարակը դիցի մեհեան ընել. անոր համար՝ ինչպէս որ կ'ըսէ մեր Ս. Լուսաւորիչը, լեզուաց խառնակութեան պատիժն առին։ Այս բանիս ապացոյց է նաև աս ալ՝ որ Բաբելոնի աշտարակին մնացորդը Բելայ տաճար եղաւ, ուր կը պաշտէին զինքը. և թէ Բէլ եղաւ կռապաշտութեան առջի հնարողը, ինքզինքը Աստուծոյ պէս պաշտել տալով։ Բէլ՝ սուրբ Գրքին մէջ կ'ըսուի Նեբրովթ, որ էր աշտարակը շինողներուն գլուխը։

43. Հայկ Սենաար դաշտէն Հայաստան դառնալէն ետև նախ ո՞ւր բնակեցաւ։

Հայկ երբոր դարձաւ Սենաար դաշտէն իր տնով տեղովն, զաւկըներովն ու թոռներո-

* Սիւնկեղոս, Կեդրենոս և ուրիշները կը դնեն թէ ինչուան 40 տարիի չափ աշխատեցան աշտարակին շինութեանը վրայ։

վը որ 300 հոգիէն աւելի էին, և ուրիշ ծառաներով և օտար մարդերով որ իրեն յարուեր էին, բնակեցաւ նախ Ասորեստանի կողմերը, որոնք ետքերը ըսուեցան Մոկք և Կորճայք, ուր մնացեր էին այլևայլ մարդիկ որ չէին գնացեր Սենաար դաշտը, և հնազանդեցընելով զանոնք, հոն լերան մը ոտքը դաշտի մը մէջ իրեն բնակութեան տեղ ու կալուածներ շինեց. բայց ետքէն թողլով զանոնք իր Կադմոս թոռին՝ որ Արմենակայ որդին էր, ինքը ելաւ գնաց Տուրուբերանի Հարք գաւառը՝ որոյ անունը ինքը դրաւ իր նախահարցը յիշատակը պահելու և ցուցընելու համար թէ հոն բնակեցան իրեն հայրերը. և հոն շինեց իր անունով Հայկաշէն աւանը:

44. Հայկ ինչպէս իշխեց Հայաստանին:

Հայկ Բելայ յաղթելէն ետև Հայոց ձոր ըսուած դաշտին մէջ, որ կ'ըլնի Բզնունեաց ծովուն մօտերը, աւելի ընդարձակեց իր սահմանը, ու եղաւ առաջին տիրապետող ու Հայաստանը ընդարձակող: Բաց ասկէ եղաւ մեր առաջին նախահայրը, որոյ անունովը կոչեցաւ մեր ազգը հայ, երկիրը Հայք կամ Հայոց աշխարհ, որ անկէ առաջ կ'ըսուէր Աշքանազեան աշխարհ, և ետքը ըսուեր էր Թորգոմական աշխարհ: Իսկ ինքն Հայկ՝ Բելայ մահուընէն ետև իր զաւկըներովը մէկտեղ խաղաղութեամբ կառավարեց Հայաստանը տանուտէրական իշխանութեամբ, ինչուան որ մեռաւ: Եւ իր որ-

դին Արմենակ բնակեցաւ Այրարատ նահանգին մէջ Արագած լերան մօտիկ որ իր անունովը կոչուած է. Արմայիս Արմենակին որդին բնակեցաւ Արմաւիրի մէջ, Շարայ Արմայիսին որդին Շիրակ գաւառին մէջ։ Նոյնպէս Արմենակին երկու եղբայրները Մանաւազ և Խոռ բնակեցան Հարք և Խոռխոռունիք գաւառներուն մէջ. Բազ Մանաւազայ որդին Բզնունեաց մէջ. Գեղամ Արմայիսին թոռը Գեղարքունի գաւառին մէջ և, Գեղամայ որդին Սիսակ՝ Սիւնեաց երկրին կամ Սիսականին մէջ, և այլն։

45. Հայկէն ետև ո՛վ եղաւ Հայաստանի սահմանը ընդարձակող։

Հայաստանը ընդարձակողներուն մէջ առջինը կը սեպուի Արամ, որ իր թշնամիները Հայաստանէն հալածելու պատճառաւ, տիրեց նաև օտար երկիրներու։ Արևելեան կողմէն ընդարձակեց ինչուան Զարասպ լեռը՝ որ կ՚ըյնի Ատրպատական աշխարհին մէջ, հալածելով Մեդացիները՝ որոնք Նիւքարին առաջնորդութեամբը կ՚ապատակէին Հայաստանի արևելեան կողմերը։ Այս կողմը յանձնեց Սիսական ցեղին, և երկիրը իրեն հարկատու ըրաւ ինչուան Նինոսի թագաւորութեան ատենը։

Հարաւային կողմէն Բարշամը հալածելով տիրեց Ասորեստանի մէկ մասին, այսինքն Կորճայք, Մոկք և Պարսկահայք նահանգներուն՝ որ Ասորեստանի կողմ կը համա-

րուին. նոյնպէս տիրեց Միջագետաց մեծ մասին։ Եւ Ասորեստանի այս կողմերուն վրայ առաջնորդ դրաւ Կադմոսի ցեղը։

Արեւմտեան կողմէն տիրեց մասին Փոքր Ասիոյ, հալածելով Պայապիսը Արշիպեղագոսի կղզիներուն մէկուն մէջ, որ բռնացած կը տիրէր Սև ու Միջերկրական ծովերուն միջոցը եղած երկիրներուն վրայ. և հոն Մշակ անունով մէկը 10,000 զօրքով կողմնապահ դրաւ, որոյ զօրանիստ քաղաքը Մշակին անունովը ըսուեցաւ Մաժաք որ ետքը Կեսարիա կոչեցաւ։ Եւ Արամ Կեսարիայէն ինչուան իր բուն սահմանը իրեք մաս բաժնեց, և կոչեց Առաջին, Երկրորդ և Երրորդ Հայք։ Բայց ասկէ այս կողմը շատ տեղ բնակչօք լեցուց. և հրաման տուաւ որ ամէնքն ալ հայերէն սովրին ու խօսին։

Հիւսիսային կողմը Կուր գետէն անդին անցաւ, և Վրացիներն ու Աղուանքը հնազանդեցուց և հարկատու ըրաւ, որոնք կ'երևի թէ Արամէն առաջ ալ Հայոց հպատակ էին։

46. Երկրորդ աշխարհակալը ո՞վ եղաւ։

Երկրորդ աշխարհակալը եղաւ մեծն Տիգրան, որոյ համար Խորենացին կ'ըսէ թէ Հայաստանը ընդարձակելով հասցուց իր բուն սահմանին։ Վասն զի Արամ Նահապետին Հայաստանէն դուրս տիրած երկիրներուն շատը իրեն յաջորդներուն ատենը կորսուեցան Հայոց ձեռքէն, և Հայու սահմաններուն ուրիշները կը տիրէին. զասոնք

ամէնքն ալ հալածեց Տիգրան, և զուրիշները իրեն հարկատու ըրաւ, այսինքն Կապադովկացիները, Վիրքն ու Աղուանքը, և այլն. և Աժդահակին յաղթելով ու զինքն ալ սպաննելով՝ տիրեց Մարաց աշխարհին ալ, և շատ ընդարձակեց իր տէրութիւնը։

47. Վաղարշակայ վրայ ի՞նչ գիտելիք կան։

Մեծն Արշակ Պարթևը շատ երկիրներու տիրելով և ուզելով իր տէրութիւնը հաստատ պահել, իր եղբայրը Վաղարշակը Հայաստանի վրայ թագաւոր դրաւ՝ իրեն թագաւորութեան կէսը անոր յանձնելով, այսինքն Ասորւոց երկրին արևմտեան կողմը, և Կղեսուրը որ է ստորին Ասորիք, Պաղեստինը, բոլոր Փոքր Ասիա, Պոնտոս ծովէն ինչուան Կասպից ծովը եղած Սկիւթացւոց երկիրը, այսինքն Վրաց, Աղուանից, Եգերացւոց և բոլոր Կովկասային ազգերուն երկիրը և Ատրպատական աշխարհը*, և իրեն թագաւորանիստ քա-

* Խորենացի Գիրք Ա գլ. Ը. "Քաղաք թագաւորութեան տայ (Արշակ) նմա (Վաղարշակայ) զՄծբին, և սահման հատանէ նմա զմասն ինչ յարևմտեան Ասորւոց և զՊաղեստին և զԱսիա և զամենայն Միջերկրեայս, և զԹիտալիա, 'ի ծովէն Պոնտոսի մինչև 'ի տեղին ուր Կովկաս յարևմտեան յանգի ծով, և զԱտրպատական,,: Միջերկրեայ ըսելով կ'իմանայ բոլոր Փոքր Ասիան, որ կ'իյնի Պոնտոսի և Միջերկրական ծովուն մէջ. Թիտալիա ըսելով կ'իմանա Սկիւթիա. իսկ արևմտեան ծովն է Կասպից

դաք տուաւ Մծբինը։ Խորենացին կ՚ըսէ թէ այս սահմաններուն վրայ Վաղարշակ իր քաջութեամբը ուրիշ ալ աւելցուց, մանաւանդ երբոր Մորփիւղիկէսը սպաննեց, և իրեն հպատակ ըրաւ Պոնտացիները, Կապադովկացիքը ու Եգերացիները, որոցմով գլուխ քաշեր էր Մորփիւղիկէս։

48. Չորրորդ աշխարհակալ և ընդարձակող թագաւորը ո՞վ եղաւ։

Արտաշէս Ա. որ ամէն իր նախորդներէն աւելի ընդարձակեց տէրութիւնը, պահելով բոլոր Վաղարշակին սահմանները։ Ինքը առջինը եղաւ որ տիեզերակալութեան ետևէ եղաւ. վասն զի Արամ, Տիգրան, Վաղարշակ ընդարձակեցին իրենց տէրութիւնը՝ թշնամիները հալածելու պատճառաւ որ իրենց երկիրը կոխեր էին. իսկ Արտաշէս միայն տիեզերակալութեան համար տիրեց Պարսկաստանի՝ Նախագահութեան պատիւը անոնցմէ ինքն առնլով։ Եւ զմեծն Միհրդատը, իր փեսան, Պոնտոսի վրայ թագաւոր դնելէն, և Լիւդացւոց Կրեսոս թագաւորը սպաննելէն և բոլոր Փոքր Ասիայի տիրելէն ետև, անցաւ շատ զօրքով և նաւով Թրակիա, և տիրեց Յունաստանի, Լակեդեմոնի, Թեբէի, Փովկիսացւոց և ուրիշ կողմերու. բայց և ոչ մէկը

ծովը որ Պարթևաց երկրին արևմտեան կողմը կ՚ըլ-
նի, ուր մեծն Արշակ կը թագաւորէր Բահլ քաղ-
քին մէջ։

կրցաւ պահել․ վասն զի զօրքին մէջ խռովութիւն ելլելով սպաննեցին զինքը *։

**49. Մեծն Միհրդատայ վրայ ինչ գիտելիք կան։**

Մեծն Միհրդատ թէպէտ և մեր թագաւորներուն կարգը չէր, բայց միջին Տիգրանայ քեռայրն ըլլալով, և անոր հօրը Արտաշէսին ձեռքով Պոնտոսի թագաւոր նստելով, իրեն ըրած քաջութիւններն ալ մեր ազգին պարծանք կրնանք սեպել։ Եւ դարձեալ ամէն յաղթութիւններուն որ ըրաւ փոքր Ասիայի այլևայլ ազգերուն վրայ, այսինքն Բիւթանացւոց, Կարիացւոց, Կապադովկացւոց, Փռիւգացւոց, Կողքիսացւոց երկիրներուն տի-

* Արտաքին պատմիչներուն, այսինքն Յունաց և Լատինացւոց մէջ՝ բոլորովին անծանօթ է մեր Արտաշէս Այն անունը և իրեն ըրած քաջութիւնները. անոր համար օտարազգի մատենագիրներէն ոմանք, ինչպէս նաև Սէն-Մարթէն, կը տարակուսին և չեն հաւատար Արտաշէսին ըրած քաջութիւններուն, այսինքն Լիւդացւոց Կրեսոս թագաւորը սպաննելուն, ծովով Թրակիա անցնելուն ու Յունաստանի առնելուն, և այլն. որոնք թէպէտ և հիմա գտնուած Յոյն ու Լատին հին մատենագրաց մէկն ալ չպատմէ ալ՝ բայց մեզի աւելի հաւանական կ'երևի Խորենացիին պատմածը, որ ազգային դիւաններէ և ուրիշ Յոյն մատենագիրներէ առած է, որոնք կորսուած են հիմա, թէպէտ և պատմածնուն մէջ քիչ մ'ալ չափազանցութիւն ըլլայ։

ըելով, նաև Հռոմայեցւոց և Յունաց դէմ ըրած յաղթութիւններուն, որ ինչուան Յունաստան, Թրակիա, Մակեդոնիա ու Կիմմերեան Տաւրիա, որ է Քերսոնեսոն, իր յաղթական բանակը տարաւ, այս ամէն յաղթութեանց կ'ըսեմ՝ ձեռնտու էր զօրքով մեր Միջին Տիգրանը, և նեղութեան ատեն իրեն ամուր ապաւէն. ինչուան բաղդին փոփոխելովը Միհրդատ իր կեանքին հետ բոլոր իր տէրութիւնն ալ կորսնցուց, որ իրմէ վերջը Հռոմայեցւոց հարկատու եղաւ:

50. Միջին Տիգրան որչափ ընդարձակեց Հայաստանի սահմանը:

Միջին Տիգրան իր հօրը Արտաշէսին Ասիոյ մէջ տիրած երկիրները որչափ կըրցաւ ձեռքը պահեց, ու տիրեց նաև Հրէաստանի, ուսկից որ շատ հրեայ գերի բերաւ: Բայց երբոր Պոմպէոսէն յաղթեցաւ, Հայաստանէն դուրս եղած երկիրներուն մեծ մասը ձեռքէն գնաց, այսինքն Հրէաստան ու Փոքր Ասիայի մէջ եղած երկիրները: Այս Տիգրանը Հռոմայեցւոց պատմիչներուն մէջ մեծ անուն ունի, իրենց հետ շատ վերաբերութիւն ունենալուն համար, և Հայոց թագաւորներուն մէջ ամենէն վեր կը դնեն, ուր ընդ հակառակն մեր պատմիչներուն մէջ այնչափ մեծ չսեպուիր, և չհաւասարիր Արամին, Ա. Տիգրանին, Վաղարշակին, ու Ա. Արտաշէսին, և այլն:

51. Միջին Տիգրանայ մահուընէն ետև ի՞նչ եղաւ Հայաստանի վիճակը:

Միջին Տիգրանայ մահուընէն ետև Հայաստանէն դուրս եղած երկիրները աւելի սկըսան թօթափել Հայոց ձեռքէն. բայց մինչուան մեծին Խոսրովու և Տրդատայ ատեն դեռ հիւսիսային կողմի Հայաստանի մօտիկ երկիրներուն կը տիրէին, այսինքն Աղուանից, Վրաց ու Ալանաց վրայ, նաև Փոքր Հայոց ու Կապադովկիային՝ զոր Պոմպէոս առեր էր Հայոց ձեռքէն։ Մեծն Խոսրով գնաց յարձակմամբ Պարսկաստան և հալածեց Սասանեան Արտաշիրը, և հասաւ մինչուան Հնդկաստան. տիրեց նաև Ասորեստանին, և հոն շինեց Դաւրէժ քաղաքը, ու մէջը պահապան զօրք թողլով դարձաւ եկաւ Հայաստան։ Իրմէ ետև երևելի եղաւ Տրդատ որ Պարսկաստանի և Ասորեստանի այլևայլ կողմերուն տիրեց։

52. Տրդատայ մահուանէն ետև Հայաստանի վիճակը ինչպէս եղաւ։

Տրդատայ մահուանէն ետև սկսան Հայաստանէն դուրս եղած երկիրները բոլորովին ելլել մեր թագաւորներուն ձեռքէն, որ են Փոքր Հայք, Միջագետք, Ատրպատական, Վիրք, Աղուանք. բաց ասկէց նաև Հայաստանի այլևայլ մասերը, ինչպէս Փայտակարան, Արցախ, Ուտի, Աղձնիք, Կորճայք, Գուգարք, Տմորիք, Կորդրիք, Պարսկահայք, Չորրորդ հայք ըստ մանին, և այլն։ Եւ ասով Հայաստանի սահմանը շատ ամփոփեցաւ, մինչուան որ վերջապէս Արշակունեաց տէրութիւնը և սկսաւ Մարզ-

պանաց իշխանութիւնը, և անկէց ետև Բագրատունեաց տէրութիւնը, որոց ժամանակ Հայաստան խիստ քիչ տեղ կը բովանդակէր։

53. Բագրատունեաց մէջ որո՞նք աշխարհակալ Թագաւոր կրնան ըսուիլ։

Բագրատունեաց մէջ երևելի եղան Աշոտ Ա, Սմբատ Ա, որոնք Հայաստանի այլևայլ կողմերը որ Թշնամեաց ձեռքը անցեր էին՝ ազատեցին, և հիւսիսային կողմէն իրենց սահմանը ինչուան Կովկասային լեռները ընդարձակեցին, և Վիրքն ու Աղուանքը նուաճեցին, և գնդերացիները հարկատու ըրին։

54. Ռուբինեանց մէջ ո՞րոնք աշխարհակալ Թագաւոր կրնան ըսուիլ։

Կիլիկեցւոց մէջ առաջին աշխարհակալ կրնանք համարիլ նոյն իսկ Ռուբէնը, որոյ անունով տէրութիւնն ալ Ռուբինեանց տէրութիւն ըսուած է, որ Բագրատունեաց Գագիկ վերջի Թագաւորին ազգականն էր, և երթալով Կիլիկիա և հոն տեղի Հայերը իրեն կողմը ձգելով, տիրեց շատ բերդերու և Տօրոս լերան, հալածելով զՅոյները որոց ձեռքն էր այն կողմերը։ — Երկրորդ, անուանի եղաւ Թորոս Ա, որ իր տէրութիւնը ինչուան Միջերկրական ծովն ընդարձակեց, տիրելով Կիլիկիայի մեծ մասին։ — Երրորդ՝ Լևոն Ա, որ Թէպէտ խիստ քաջ մարդ էր և իր տէրութիւնը շատ ընդարձակեց, տիրելով նաև Իսաւրիոյ,

բայց վերջը եղբօր անթիւ բազմութեամբ Յունաց Գերմերուժէն կայսրը Կիլիկիոյ վրայ վազեց, Լեւոն գերի բռնուեցաւ, և աշխարհն ալ Յունաց ձեռքը անցաւ. Թէպէտ և քիչ ատենէն Լեւոնի որդին՝ Թորոս Բ զօրանալով նորէն տիրեց բոլոր Կիլիկիային ու Իսաւրիային, և շատ քաջութիւններ ըրաւ Յունաց դէմ: — Բայց Ռուբինեանց մէջ քան զամէնը վերադաս կրնայ համարուիլ Լեւոն Բ քաջութեան և առաքինի գործոց կողմանէ, որով արժանի եղաւ 1198ին թագաւոր օծուելու, Գերմանացւոց Հենրիկոս Զ կայսեր կողմանէ թագ ընդունելով. ու ետքը նոյնպէս թագ ընդունեցաւ Յունաց Ալեքս կայսրէն, և պատուեցաւ Հագարացւոց ամիրապետէն:

## ԳԼՈՒԽ Ե.

*Ասելի ո՞ր ազգերը յարձակեցան մեր աշխարհը, և Հայաստան որո՞ց հարկատու եղած է:*

55. Հայկազունեաց ատեն Հայաստան որոց հարկատու եղած է:

Հայկազունեաց ատեն Արային մահուընէն ետև Շամիրամ Ասորեստանցոց թագուհին տիրեց Հայաստանի վրայ, ու իրմէ ետքն ալ Հայերը ատեն ատեն Ասորեստանցւոց հարկատու եղած են (§. 71):

56. Հայաստան երբ Յունաց ձեռքն անցաւ:

րուին · նոյնպէս տիրեց Միջագետաց մեծ մասին ։ Եւ Ասորեստանի այս կողմերուն վրայ առաջնորդ դրաւ Կադմոսի ցեղը ։

Արեւմտեան կողմէն տիրեց մասին Փոքր Ասիոյ, հալածելով Պայապիսը Արշիպեղագոսի կղզիներուն մէկուն մէջ, որ բռնացած կը տիրէր Սև ու Միջերկրական ծովերուն միջոցը եղած երկիրներուն վրայ · և հոն Մշակ անունով մէկը 10,000 զօրքով կողմնապահ դրաւ, որոյ զօրանիստ քաղաքը Մշակին անունովը ըսուեցաւ Մաժաք որ ետքը Կեսարիա կոչեցաւ ։ Եւ Արամ Կեսարիայէն ինչուան իր բուն սահմանը երեք մաս բաժնեց, և կոչեց Առաջին, Երկրորդ և Երրորդ Հայք ։ Բաց ասկէ այս կողմը շատ տեղ բնակչօք լեցուց · և հրաման տուաւ որ ամէնքն ալ հայերէն սովրին ու խօսին ։

Հիւսիսային կողմը Կուր գետէն անդին անցաւ, և Վրացիներն ու Աղուանքը հնազանդեցուց և հարկատու ըրաւ, որոնք կ'երևի թէ Արամէն առաջ ալ Հայոց հպատակ էին ։

**46 · Երկրորդ աշխարհակալը ով եղաւ ։**

Երկրորդ աշխարհակալը եղաւ մեծն Տիգրան, որոյ համար Խորենացին կ'ըսէ թէ Հայաստանը ընդարձակելով հասցուց իր բուն սահմանին ։ Վասն զի Արամ Նահապետին Հայաստանէն դուրս տիրած երկիրներուն շատը իրեն յաջորդներուն ատենը կորսուեցան Հայոց ձեռքէն, և Հայու սահմաններուն ուրիշները կը տիրէին · զասոնք

ամէնքն ալ հալածեց Տիգրան, և զուրիշ-ները իրեն հարկատու ըրաւ, այսինքն կա-պադովկացիները, Վիրքն ու Աղուանքը, և այլն. և Ածդահակին յաղթելով ու զինքն ալ սպաննելով՝ տիրեց Մարաց աշխարհին ալ, և շատ ընդարձակեց իր տէրութիւնը ։

47. Վաղարշակայ վրայ ինչ գիտելիք կան ։

Մեծն Արշակ Պարթեւք շատ երկիրներու տիրելով և ուզելով իր տէրութիւնը հաս-տատ պահել, իր եղբայրը Վաղարշակը Հայաստանի վրայ թագաւոր դրաւ՝ իրեն թագաւորութեան կէսը անոր յանձնելով, այսինքն Ասորւոց երկրին արեւմտեան կող-մը, և կղեսուրը որ է ստորին Ասորիք, Պա-ղեստինը, բոլոր Փոքր Ասիա, Պոնտոս ծովէն ինչուան կասպից ծովը եղած Սկիւ-թացւոց երկիրը, այսինքն Վրաց, Աղուա-նից, Եգերացւոց և բոլոր Կովկասային ազգերուն երկիրը և Ատրպատական աշ-խարհը*, և իրեն թագաւորանիստ քա-

* Խորենացի Գիրք Ա. գլ. Ը. " Քաղաք Թագաւո-րութեան տայ (Արշակ) նմա (Վաղարշակայ) զՄծբին, և սահման հատանէ նմա զմասն ինչ յարեւմտեան Ասորւոց և զՊաղեստին և զԱսիա և զամենայն Մի-ջերկրեայս, և զԹետալիա, 'ի ծովէն Պոնտոսի մին-չև 'ի տեղին ուր Կովկաս յարեւմտեան յանգի ծով, և զԱտրպատական ,,: ՄԻՋԵՐԿՐԵԱՅ ըսելով կ'իմա-նայ բոլոր Փոքր Ասիան, որ կ'իյնի Պոնտոսի և Մի-ջերկրական ծովուն մէջ. ԹԵՏԱԼԻԱ ըսելով կ'իմա-նա ։Սկիւթիա. իսկ արեւմտեան ծովն է կասպից

*դակք տուաւ Մծբինը։ Խորենացին կ'ըսէ թէ այս սահմաններուն վրայ Վաղարշակ իր քաջութեամբը ուրիշ ալ աւելցուց, մանաւանդ երբոր Մորփիւղիկէսը սպաննեց, և իրեն հպատակ ըրաւ Պոնտացիները, Կապադովկացիքը ու Եգերացիները, որոցմով գլուխ քաշեր էր Մորփիւղիկէս։*

48. *Չորրորդ աշխարհակալ և ընդարձակող թագաւորը ո՞վ եղաւ։*

*Արտաշէս Ա. որ ամէն իր նախորդներէն աւելի ընդարձակեց տէրութիւնը, պահելով բոլոր Վաղարշակին սահմանները։ Ինքը առջինը եղաւ որ տիեզերակալութեան ետևէ եղաւ. վասն զի Արամ, Տիգրան, Վաղարշակ ընդարձակեցին իրենց տէրութիւնը՝ թշնամիները հալածելու պատճառաւ որ իրենց երկիրը կոխեր էին. իսկ Արտաշէս միայն տիեզերակալութեան համար տիրեց Պարսկաստանի՝ նախագահութեան պատիւը անոնցմէ ինքն առնլով։ Եւ զՄեծն Միհրդատը, իր փեսան, Պոնտոսի վրայ թագաւոր դնելէն, և Լիւդացւոց Կրեսոս թագաւորը սպաննելէն և բոլոր Փոքր Ասիայի տիրելէն ետև, անցաւ շատ զօրքով և նաւով Թրակիա, և տիրեց Յունաստանի, Լակեդեմոնի, Թեբէի, Փովկիսացւոց և ուրիշ կողմերու. բայց և ոչ մէկը*

ծովը որ Պարթևաց երկրին արևմտեան կողմը կ'ըլնի, ուր մեծն Արշակ կը թագաւորէր Բահլ քաղաքին մէջ։

կրցաւ պահել. վասն զի զօրքին մէջ խռովութիւն ելլելով սպաննեցին զինքը*։

49. Մեծն Միհրդատայ վրայ ինչ գիտելիք կան։

Մեծն Միհրդատ թէպէտ և մեր թագաւորներուն կարգը չէր, բայց միջին Տիգրանայ քեռայրն ըլլալով, և անոր հօրը Արտաշէսին ձեռքով Պոնտոսի թագաւոր նստելով, իրեն ըրած քաջութիւններն ալ մեր ազգին պարծանք կրնանք սեպել։ Եւ դարձեալ ամէն յաղթութիւններուն որ ըրաւ փոքր Ասիայի այլևայլ ազգերուն վրայ, այսինքն Բիւթանացւոց, Կարիացւոց, Կապադովկացւոց, Փռիւգացւոց, Կողքիսացւոց երկիրներուն տի-

* Արտաքին պատմիչներուն, այսինքն Յունաց և Լատինացւոց մէջ՝ բոլորովին անծանօթ է մեր Արտաշէս Ային անունը և իրեն ըրած քաջութիւնները. անոր համար օտարազգի մատենագիրներէն ոմանք, ինչպէս նաև Սէն-Մարթէն, կը տարակուսին և չեն հաւատար Արտաշէսին ըրած քաջութիւններուն, այսինքն Լիւդացւոց Կրեսոս թագաւորը սպաննելուն, ծովով Թրակիա անցնելուն ու Յունաստանի տիրելուն, և այլն. որոնք թէպէտ և հիմա գտնուած Յոյն ու Լատին հին մատենագրաց մէկն ալ չպատմէ ալ՝ բայց մեզի աւելի հաւանական կ'երևի Խորենացիին պատմածը, որ ազգային դիւաններէ և ուրիշ Յոյն մատենագիրներէ առած է, որոնք կորսուած են հիմա, թէպէտ և պատմածնուն մէջ քիչ մ'ալ չափազանցութիւն ըլլայ։

րելով, նաև Հռոմայեցւոց և Յունաց դէմ ըրած յաղթութիւններուն, որ ինչուան Յունաստան, Թրակիա, Մակեդոնիա ու Կիմմերեան Տաւրիա, որ է Քերսոնեսոն, իր յաղթական բանակը տարաւ, այս ամէն յաղթութեանց կ՚ըսեմ՝ ձեռնտու էր զօրքով մեզ Միջին Տիգրանը, և նեղութեան ատեն իրեն ամուր ապաւէն. ինչուան բաղդին փոփոխելովը Միհրդատ իր կեանքին հետ բոլոր իր տէրութիւնն ալ կորսնցուց, որ իրմէ վերջը Հռոմայեցւոց հարկատու եղաւ։

50. Միջին Տիգրան որչափ ընդարձակեց Հայաստանի սահմանը։

Միջին Տիգրան իր հօրը Արտաշէսին Ասիոյ մէջ տիրած երկիրները որչափ կըրցաւ ձեռքը պահեց, ու տիրեց նաև Հրէաստանի, ուսկից որ շատ հրեայ գերի բերաւ։ Բայց երբոր Պոմպէոսէն յաղթեցաւ, Հայաստանէն դուրս եղած երկիրներուն մեծ մասը ձեռքէն գնաց, այսինքն Հրէաստան ու Փոքր Ասիայի մէջ եղած երկիրները։ Այս Տիգրանը Հռոմայեցւոց պատմիչներուն մէջ մեծ անուն ունի, իրենց հետ շատ վերաբերութիւն ունենալուն համար, և Հայոց թագաւորներուն մէջ ամենէն վեր կը դնեն, ուր ընդ հակառակն մեր պատմիչներուն մէջ այնչափ մեծ չսեպուիր, և չհաւասարիր Արամին, Ա. Տիգրանին, Վաղարշակին, ու Ա. Արտաշէսին, և այլն։

51. Միջին Տիգրանայ մահուընէն ետև ինչ եղաւ Հայաստանի վիճակը։

Միջին Տիգրանայ մահուընէն ետև Հայաստանէն դուրս եղած երկիրները աւելի սկըսան Թօթափիլ Հայոց ձեռքէն. բայց ինչուան մեծին Խոսրովու և Տրդատայ ատեն դեռ հիւսիսային կողմի Հայաստանի մօտիկ երկիրներուն կը տիրէին, այսինքն Աղուանից, Վրաց ու Ալանաց վրայ, նաև Փոքր Հայոց ու Կապադովկիային՝ զոր Պոմպէոս առեր էր Հայոց ձեռքէն։ Մեծն Խոսրով գնաց յարձակմամբ Պարսկաստան և հալածեց Սասանեան Արտաշիրը, և հասաւ ինչուան Հնդկաստան. տիրեց նաև Ատըրպատականին, և հոն չինեց Դաւրէժ քաղաքը, ու մէջը պահապան զօրք Թողլով դարձաւ եկաւ Հայաստան։ Իրմէ ետև երևելի եղաւ Տրդատ որ Պարսկաստանի և Ասորեստանի այլևայլ կողմերուն տիրեց։

52. Տրդատայ մահուանէն ետև Հայաստանի վիճակը ինչպէս եղաւ։

Տրդատայ մահուանէն ետև սկսան Հայաստանէն դուրս եղած երկիրները բոլորովին ելլել մեր Թագաւորներուն ձեռքէն, որ են Փոքր Հայք, Միջագետք, Ատրպատական, Վիրք, Աղուանք. բաց ասկէց նաև Հայաստանի այլևայլ մասերը, ինչպէս Փայտակարան, Արցախ, Ուտի, Աղձնիք, Կորճայք, Գուգարք, Տմորիք, Կորդրիք, Պարսկահայք, Չորրորդ Հայք ըստ մասին, և այլն։ Եւ ասով Հայաստանի սահմանը շատ ամփոփեցաւ, ինչուան որ վերջացաւ Արշակունեաց տէրութիւնը և սկսաւ Մարզ-

պանաց իշխանութիւնը, և անկէց ետև Բագրատունեաց տէրութիւնը, որոց ժամանակ Հայաստան խիստ քիչ տեղ կը բովանդակէր:

57. Բագրատունեաց մէջ որո՞նք աշխարհակալ թագաւոր կրնան ըսուիլ:

Բագրատունեաց մէջ երևելի եղան Աշոտ Ա., Սմբատ Ա., որոնք Հայաստանի այլևայլ կողմերը որ թշնամեաց ձեռքը անցեր էին՝ ազատեցին, և հիւսիսային կողմէն իրենց սահմանը ինչուան Կովկասային լեռները ընդարձակեցին, և Վիրքն ու Աղուանքը նուաճեցին, և գնդերացիները հարկատու ըրին:

58. Ռուբինեանց մէջ որո՞նք աշխարհակալ թագաւոր կրնան ըսուիլ:

Կիլիկեցւոց մէջ առաջին աշխարհակալ կրնանք համարիլ նոյն ինք Ռուբէնը, որոյ անունով տէրութիւնն ալ Ռուբինեանց տէրութիւն ըսուած է, որ Բագրատունեաց Գագիկ վերջի թագաւորին ազգականն էր, և երթալով Կիլիկիա և հոն տեղի Հայերը իրեն կողմը ձգելով, տիրեց շատ բերդերու և Տօրոս լերան, հալածելով զՅոյները որոց ձեռքն էր այն կողմերը: — Երկրորդ, անուանի եղաւ Թորոս Ա., որ իր տէրութիւնը ինչուան Միջերկրական ծովը ընդարձակեց, տիրելով Կիլիկիայի մեծ մասին: — Երրորդ՝ Լևոն Ա., որ թէպէտ խիստ քաջ մարդ էր և իր տէրութիւնը շատ ընդարձակեց, տիրելով նաև Իսաւրիոյ,

բայց վերջը երբոր անթիւ բազմութեամբ Յունաց Գերմերուժէն կայսրը Կիլիկիոյ վրայ վազեց, Լեոն գերի բռնուեցաւ, և աշխարհն ալ Յունաց ձեռքը անցաւ․ Թէպէտ և քիչ ատենէն Լեոնի որդին՝ Թորոս Բ զօրանալով նորէն տիրեց բոլոր Կիլիկիային ու Իսաւրիային, և շատ քաջութիւններ ըրաւ Յունաց դէմ։ — Բայց Ռուբինեանց մէջ քան զամէնը վերադաս կրնայ համարուիլ Լեոն Բ քաջութեան և առաքինի գործոց կողմանէ, որով արժանի եղաւ 1198ին թագաւոր օծուելու, Գերմանացւոց Հենրիկոս Զ կայսեր կողմանէ թագ ընդունելով․ ու ետքը նոյնպէս թագ ընդունեցաւ Յունաց Ալեքս կայսրէն, և պատուեցաւ Հագարացւոց ամիրապետէն։

## ԳԼՈՒԽ Ե․

*Ասելի որ ազգերը յարձակեցան մեր աշխարհը, և Հայաստան որոց հարկատու եղած է։*

55․ Հայկազուննեաց ատեն Հայաստան որոց հարկատու եղած է։

Հայկազուննեաց ատեն Արայէն մահուընէն ետև Շամիրամ Ասորեստանեաց թագուհին տիրեց Հայաստանի վրայ, ու իրմէ ետքն ալ Հայերը ատեն ատեն Ասորեստանցւոց հարկատու եղած են (§․ 71)։

56․ Հայաստան երբ Յունաց ձեռքն անցաւ։

Վահէ հայկազունեաց վերջի Թագաւորը երբոր մեծին Աղեքսանդրի հետ պատերազմելով մեռաւ, մեծն Աղեքսանդր տիրեց բոլոր Հայաստանին, և իրեն մահուանէն ետև կը կառավարուէր Հայաստան, Սելևկացւոց կուսակալներուն ձեռքովը \որ 180 տարիի չափ տևեց ինչուան Վաղարշակայ ատեն:

57 . Հայաստան երբ Հռոմայեցւոց ձեռքը անցաւ:

Հայաստան Հռոմայեցւոց ձեռքն անցաւ Արշամայ ատեն որ Աբգարու հայրն էր, և Հայք հարկ կու տային Հռոմայեցոց ինչուան ետքը: Նախ Հռոմ կը խաւրէին հարկը, բայց կայսրութիւնը արևելք անցնելէն ետև Կոստանդնուպօլիս կը խաւրէին. որով անկէց ետքը սկսաւ Նուազիլ Հռոմայեցւոց իշխանութիւնը Հայոց վրայէն և սկսան Յոյները իշխել, կամ թէ ըսենք Կոստանդնուպօլսի կայսրները: Վարազդատին մահուընէն ետև չորրորդ դարուն վերջերը, Յունաց Արկադէոս կայսեր և Պարսից Շապուհ Թագաւորին ատեն Հայաստան երկու բաժնուեցաւ. Փոքր Հայք, Բարձր Հայք և Չորրորդ հայք Յունաց ձեռքը անցաւ. իսկ Մեծ Հայք և միւսացած մէկալ գաւառները Պարսից: Այն ատեն Յունաց բաժնին մէջ եղած Հայերը Յունաց հարկ կու տային, իսկ Պարսից բաժնին մէջ եղածները՝ Պարսից: Եւ անկէ ետքը սովորութիւն եղաւ Յունաց ձեռքը եղած

Հայաստանի մասը Արևմտեան կոչել կամ բաժին Յունաց, իսկ Պարսից ձեռքինը՝ Արևելեան կամ աշխարհ Հայոց, Արարատ Թագաւորանիստ նահանգը Պարսից մասին մէջ ըլլալուն, և Պարսից մասը Յունաց մասէն շատ մեծ ըլլալուն համար։ Իսկ Յոյնք բոլոր Պարսից մասին Պարսկահայք կ'ըսէին, զոր պէտք չէ շփոթել Պարսկահայք նահանգին հետ։

58. Հայք Յոյներէն ի՞նչ նեղութիւն քաշած են։

Հայերը Յոյներէն այնչափ նեղութիւն չեն քաշած՝ որչափ որ քաշած են ուրիշ շրջակայ ազգերէն. Թէպէտ և Յոյներն ալ ատեն ատեն զանազան յարձակումներ ըրած են Հայաստանի վրայ ու շատ վնասներ հասուցած։ Ետքերը Հայոց և Յունաց մէջ հաւատոյ վէճեր մտնելով, և Անի Բագրատունեաց մայրաքաղաքը մեծ կոտորածով Յունաց ձեռքն անցնելով, մասնաւոր ատելութիւն մը մտաւ, որոյ պատճառաւ այլևայլ ատեն Հայերը Յոյներէն շատ հալածանք և նեղութիւն կրեցին։

59. Հայերը հիւսիսային ազգերէն ի՞նչ նեղութիւն քաշած են։

Հիւսիսային ազգերը, այսինքն Սարմատացիները, Խազիրք, Բասիլք, Հոնք և կամ Քուշանք ասպատակութեամբ միայն վազած են Հայաստանի վրայ, և աւար առնելով դարձած իրենց երկիրը։ Ուստի Հայերը հիւսիսային ազգերէն շատ նեղու-

թիւն չեն քաշած, և գրեթէ միշտ յաղթող եղած են։ Ինչպէս մեծն Խոսրով իր հօրը վրէժը առնելոյ համար, որ Խազրաց և Բասլաց դէմ մեծամեծ յաղթութիւններ ընելէն ետև մեռեր էր հոն, Խոսրով անոնց չարաչար յաղթելէն ետև, իրենց մեծամեծներէն հարիւրին մէկ պատանդ առաւ ու դարձաւ։ Նոյնպէս Տրդատ չարաչար յաղթեց Բասլաց ու իրենց Գեդռեհոն թագաւորն ալ գերի բռնեց։ Ասանկ ուրիշ անգամներ ալ Հայերը յաղթող եղած են հիւսիսային ազգերու դէմ։ Իսկ Վիրք և Աղուանք որ հիւսիսային ազգերու կարգ կըլնան սեպուիլ, առջի բերան մեր տէրութեան տակն էին ու հարկատու. բայց երբոր սկսան Հայերը տկարանալ ու անոնք զօրացան, այն ատեն Հայաստանի հիւսիսային կողմի այլևայլ գաւառները, որ են Գուգարք, Ուտի, Արցախ, և այլն, իրենց ձեռքն անցաւ, ու իրենք կը տիրէին հինգերորդ դարէն սկսեալ ինչուան ԺԲ, ԺԳ դարերը, թէպէտ և ատեն ատեն նորէն Հայոց ձեռքը անցան։ Բաց ասկէ ԺԳ դարուն ատեն մէկ երկու անգամ յարձակմունք ըրին Հայաստանի վրայ, ու տիրեցին Անի քաղքին, որ թշնամեաց ձեռքը աւար եղեր էր։

60. Պարսիկները երբ սկսան Հայաստանի վրայ յարձակիլ։

Պարսիկները մեծին Խոսրովու մահուընէն ետև, սկսան ատեն ատեն վազել Հայա-

ստանի վրայ. բայց աւելի յաճախեցին երբոր մեր նախարարները իրենց Արտաշէս Թագաւորը իր գէշ և անառակ վարքին համար Պարսից Վռամ Թագաւորին մատնելով, ուզեցին անոր հնազանդիլ Պարսիցմէ իրենց վրայ մարզպան դնել տալով։ Ասով Պարսից Թագաւորը իրենց տէր ըլլալով, սկսաւ իրեն մասին մէջ եղած Հայերը նեղել, և իրեն կրօնքը դարձընելու համար չարաչար հալածանք հանել և սաստիկ տուրք առնուլ, ինչուան իրենք ալ կը զարմանային թէ Հայաստանէն այնչափ գանձ ելլելէն ետև, ինչպէս դեռ չէին կը կենայ աշխարհը։ Հայերը բաց՚ի տուրքէն կու տային Պարսից ամէն տարի այսչափ թուով այրուձի, ու պատերազմի ատեն հեծեալ զօրք. և Հայոց զօրքին քաջութեամբն էր որ շատ անգամ կը յաղթէին Պարսիկք Թըշնամեաց։

61. Ի՞նչ պատճառաւ Պարսից և Հայոց մէջ ատելութիւն մտեր էր։

Քանի որ Պարթևաց ցեղը կը թագաւորէր Պարսկաստանի մէջ՝ մեծն Արշակ Պարթևէն ետև որ տիրեց Պարսկաստանի ալ, Հայոց Թագաւորները միշտ բարեկամ և ընտանի էին Պարսից հետ՝ նոյն ցեղէն ըլլալուն համար. և Պարսից Թագաւորներուն երկրորդը կը համարուէին։ Բայց երբոր Պարսից Թագաւորութիւնը Պարթևաց ցեղէն Սասանեանց ցեղին անցաւ, ինչուան ետքը անդադար պատերազմ էր։ Պատե-

րազմը նախ Հայոց կողմէն սկսաւ. վասն զի մեր մեծն Խոսրով Թագաւորը ուզելով Պարսից Թագաւորութիւնը նորէն պարթևական ցեղին անցընել, պատերազմով Արտաշիր սասանեանը ինչուան Հնդկաստան հալածեց, ու երբոր յաղթող դարձաւ ու նորէն կը պատրաստուէր երկրորդ տարին պատերազմ բանալ Պարսից դէմ, Անակ Պարթևը դաւաճանութեամբ զինքն սպաննեց, որով Պարսիկները զօրացան անկէ ետքը:

62. Խոսրովայ մահուանէն ետև Հայերը ինչ նեղութիւն քաշեցին Պարսիկներէն:

Արտաշիր Պարսից Թագաւորը երբոր լսեց Խոսրովայ մահը, մէկէն վազեց Հայաստանի վրայ, և շատ աւերմունքով նըւաճեց բոլոր Հայաստան: Անկէ ետքը 28 տարի առանց Թագաւորի մնաց Հայաստան ու Պարսից գործակալներով կը կառավարուէր, ինչուան որ Տրդատ Թագաւորը զօրանալով հալածեց Պարսիկները Հայաստանէն, ու յարձակեցաւ ինչուան իրենց Տիզբոն մայրաքաղաքէն անդին: Բայց երբոր ինքը մեռաւ, Հայերը սկսան նորէն շատ նեղութիւններ կրել, և մանաւանդ Բ Շապուհին ու Բ Յազկերտին ատենները, որ տակն ու վրայ ըրին Հայոց երկիրը, շատ հալածումներ, կոտորածներ ընելով: Բ Յազկերտին ատեն կ'իյնայ Վարդանանց պատերազմն ու նահատակութիւնը:

63. Հայերը Արաբացոցմէ ինչ նեղութիւն քաշեցին:

Արտաքսեցիք՝ որ կ'ըսուին նաև Հագարացիք, Իսմայելացիք Տաճիկք և Սարակինոսք, Է դարէն սկսեալ ինչուան ԺԱ դարը շատ անգամ յարձակմունք ընելով անհնարին վնասներ հասուցին Հայաստանի, ուրիշ թշնամիներէն աւելի, ու շատ աւերմունք, կոտորած և գերութիւն ըրին, մանաւանդ իններորդ դարուն մէջ Բուղայի ատեն, և տասներորդ դարուն Յուսփայ ոստիկանին ատեն, և անհնարին հարկահանութեամբ կը նեղէին ժողովուրդը, եկեղեցիները կը կողոպտէին, առած քաղաքնին կ'այրէին և կը կործանէին, և մէջի բնակիչները թրէ կ'անցընէին կամ գերի կը տանէին: Ետքերը հնարք մտածելով որպէս զի դիւրաւ կարենան տիրել Հայաստանի, Վլիթ ամիրապետին ատեն ութերորդ դարուն՝ Կասմ արաբացի հրամանատարը կանչեց խաբէութեամբ ամէն նախարարները Նախջուան քաղաքը իրենց զօրքերովը մէկտեղ, իբրև թէ կ'ուզէ աշխարհագիր ընել: Երբոր ատոնք միամտութեամբ եկան, հոն զօրքը երկու եկեղեցւոյ մէջ փակեց, և եկեղեցիով մէկտեղ այրեց զիրենք. իսկ զնախարարները սկսաւ տանջել իրենցմէ ստակ պահանջելով, և ետքը զանոնք ալ սպաննեց: Ասով Հայաստան շատ խեղճութեան մէջ ընկաւ, և մնացած իշխանազուն մարդերէն շատերն ալ Հայաստանէն դուրս օտար երկիրներ փախան. և շատերն ալ որ այս կոտորածէն

դուրս մնացեր էին, Բուղա և Յուսուփ ոստիկանները սուտ երդմունքով ձեռք ձգելէն ետև, զոմանս սպաննեցին և զոմանս քշեցին Ասորեստանի կողմերը, և ասով Հայաստան ողորմելի և արտասուաց արժանի տեսարան մը եղաւ, զրկուելով իր իշխաններէն ու նախարարներէն. և երկիրն ալ ոտնակոխ ըլլալով ու արեամբ ներկուելով։ Այս միջոցն էր Բագրատունեաց տէրութեան ժամանակը։

64. Արաբացոց յարձակմանց ժամանակը Հայոց ձեռքը ո՞րչափ երկիր մնացեր էր։

Ութերորդ դարէն սկսեալ Հայաստանի մեծ մասին Արաբացիք տիրած էին. ուստի տասներորդ դարուն մէջ Հայոց ձեռքը մնացեր էր Այրարատ նահանգը՝ ուր Բագրատունիք կը թագաւորէին, Վասպուրական՝ ուր Արծրունիք կը թագաւորէին։ Այլազգիներուն ձեռքն էր Փայտակարան, Կորճայք և Պարսկահայք նահանգները և Սիւնեաց Գողթն գաւառը. իսկ Մոկք և Աղձնիք նահանգներուն կէսը այլազգեաց կէսն ալ Հայոց ձեռքն էր։ Գուգարք, Տայք նահանգները Վրաց ձեռքը. Ուտի և Արցախին մէկ մասը Աղուանից ձեռքը. Բարձր հայք, Չորրորդ հայք ու Տուրուբերանին մէկ մասը՝ այսինքն Տարօն* և Հարք գաւառները Յունաց ձեռքը։

* Տարօն գաւառը իններորդ դարուն մէջ առանձին այլազգի ամիրայի մը ձեռք էր։

65. Մետասաներորդ դարուն ի՞նչ փոփոխութիւն եղաւ Հայաստանի սահմաններուն վրայ:

Մետասաներորդ դարուն Սենեքերիմ Վասպուրականի թագաւորը թշնամեաց ձեռքէն ազատելու համար, գնաց ինքնակամ իր տէրութիւնը ու աշխարհը Յունաց կայսեր տուաւ, որոյ մէջ 4,000 գեղ, 72 բերդ ու 12 քաղաք կար, ու անոնց տեղը Սեբաստիա քաղաքն առաւ իր շրջակայ սահմանովը ու հոն գնաց բնակեցաւ իր 14,000 զօրքովը և տնով տեղովը գրեթէ 40,000 հոգի: Իրեն օրինակին ուրիշներն ալ հետևեցան ու գնացին իրենց երկիրները Յունաց կայսեր տուին, ինչպէս նաև Յովհաննէս Բագրատունի թագաւորը Անի մայրաքաղաքը իր Շիրակ գաւառովը մէկտեղ, Կարուց թագաւորը Կարս քաղաքը Վանանդ գաւառովը մէկտեղ, Գրիգոր Մագիստրոս՝ Կայեան, Կայծոն և Բջնի ամրոցները տուաւ, որոց տեղ առաւ Միջագետքի մէջ այլևայլ քաղաքներ ու գեղեր, Միջագետաց մէկ մասին վրայ դուքս ըլլալով: Ասով երկոտասաներորդ դարուն մէջ բոլոր Հայաստան օտար ազգաց ձեռքն էր:

66. Տուղրիլեանց վրայ ի՞նչ գիտելիք կան:

Տուղրիլ Սելճուգեան և իր որդին Ալփասլան, որ թէպէտ և թուրք էին ազգաւ, բայց Պարսից վրայ թագաւոր եղան, երկուքն ալ անհնարին չարիք հասուցին

Հայաստանի վրայ և շատ աւերմունք ըրին հնգտասաներորդ դարուն մէջ Արաբացոցմէ ետև: Մեր մատենագիրները զասոնք և իրենց յաջորդները կ'անուանեն երբեմն թուրք, երբեմն պարսիկ, և երբեմն ալ հին անուամբ սկիւթացիք:

67. Թաթարները ե՞րբ սկսան Հայաստանի վրայ վազել:

Երեքտասաներորդ դարուն սկիզբները Մողոլ Թաթարները սկսան վազել Հայաստանի վրայ, որ կ'ըսուին նաև մեր մատենագրաց մէջ Ազգ նետողաց՝ որ Ճինկիզխանին ցեղէն էին, և տիրեցին Հայաստանի մեծ մասին, բայց առանց մեծ կոտորած և արիւնհեղութիւն ընելու, և հարկատու ըրին Հայաստանը: Ասոնցմէ ետև չորեքտասաներորդ դարուն վերջերը յարձակեցաւ կատաղի Լէնկթիմուրը, որ շատ աւերմունք և կոտորածներ ըրաւ, և երկիրը արեամբ ներկեց. վասն զի չկար մէկը որ կարենար դէմ դնել սոսկալի գազանին. Լէնկթիմուրի ատեն Հայաստանի առջի շնորհքն և ուժը բոլորովին գացեր էր, և գրեթէ աւերակ եղեր էր Արաբացւոց և Տուղրիլեանց յարձակմունքէն, և նախարարները Հայաստանէն դուրս ասդիս անդին ցրուեր, և Հայոց Թագաւորութիւնը Կիլիկիայէն ալ վերցուեր էր:

68. Եգիպտացիք ի՞նչ յարձակմունք ըրած են Հայաստանի վրայ:

Եգիպտացիք Ռուբինեանց տէրութեան

ժամանակ, այլ և այլ անգամ յարձակե-
ցան Կիլիկիայի վրայ և շատ աւերմունք
ըրին: Ասոնց մէջ ամէնէն դաժան յար-
ձակմունքը եղան Հեթում Աին, Լևոն Եին
և Լևոն Գին ատեն եղածները, որով Կի-
լիկիա բոլոր աւեր և անապատ դարձաւ,
ու Լևոն վեցերորդ ալ բռնուելով Եգիպտո-
սի սուլդանէն գերի եղաւ, որով և վերջա-
ցաւ իրմով Կիլիկիայի տէրութիւնը 1375ին:

## ԳԼՈՒԽ Ջ.

### Քաղաքական կառավարութեան վրայ.

69. Հայերը քանի՞ տեսակ կառավարու-
թիւն ունեցան:

Հայաստանի կառավարութիւնը երեք
տեսակ կը բաժնուի, Տանուտէրական, Միա-
պետական և Իշխանական:

70. Ո՞րն է Տանուտէրական իշխանու-
թիւնը:

Տանուտէրական իշխանութիւնը կամ
կառավարութիւնը նահապետաց ատենն
էր որ իւրաքանչիւր մարդ խաղաղութեամբ
իրեն կալուածներուն և անոր մէջի մարդ-
կանց կ'իշխէր, և կը կոչուէր Տանուտէր:

71. Ո՞րն է Միապետական իշխանու-
թիւնը, և երբ սկսաւ Հայոց մէջ:

Միապետական կ'ըսուի այն իշխանու-
թիւնը՝ ուր Թագաւորը կամ իշխանը՝ առանց
իրեն հպատակներէն կախումն ունենալու

ինքնիշխան կը կառավարէ զիրենք։ Միապետական իշխանութիւնը սկսաւ Հայոց մէջ Արամայ ատեն, որ պատերազմով Թըշնամիները Հայաստանէն հալածելով հաստատեց միապետական իշխանութիւնը, հընազանդելով Նինոսի Ասորեստանեայց ինքնակալին, ուսկից մարգարտէ վարսակալ ընծայ առաւ և իրեն երկրորդը համարուեցաւ։ Նոյնպէս կը հպատակէին իրեն յաջորդները Ասորեստանեայց ինքնակալներուն, որոցմէ իբրև գործակալ, կողմնակալ և վերակացու կը դրուէին, և կը կառավարէին Հայաստանը առանց Թագաւոր կոչուելու, ինչուան Պարոյր Նահապետին ատեն որ առջի Թագաւորը եղաւ։ Վասն զի Վարբակէս Մար իշխանը միաբանելով Պարոյրին հետ յաղթեց Սարդանապալին և տիրեց Նինուէի, և Պարոյրը Հայաստանի Թագաւոր անուանեց, ինքն ալ Մարաց Թագաւոր եղաւ։

72. Մեր Թագաւորական կառավարութիւնը քանի՞ ճիւղ կը բաժնուի։

Մեր Թագաւորական կառավարութիւնը չորս ճիւղ կը բաժնուի․ Հայկազանց, Արշակունեաց, Բագրատունեաց և Ռուբինեանց։

73. Ո՞րչափ ատեն տևեց Հայկազանց տէրութիւնը։

Հայկազունեաց տէրութիւնը՝ Հայկէն սկսեալ որ Բէլը սպաննելէն ետև տիրեց Հայաստանին Քրիստոսէ 2346 տարի ա-

ռաջ, տեւեց 2000 տարիէն աւելի ըստ եօ-թանասնից հաշուին, ու Քրիստոսէ 328 տարի առաջ վերջացաւ Վահէին մահուամ-բը. և անկէ ետքը Սելևկացիք տիրեցին Հայաստանին 179 տարի, որ մեծին Աղեք-սանդրի յաջորդներէն էին։ Ինչուան որ Արշակ Պարթևը եկաւ տիրեց Հայաստանին և իր Վաղարշակ եղբայրը հոն թագաւոր դրաւ՝ Քրիստոսէ 149 տարի առաջ, որով սկսաւ Արշակունեաց թագաւորութիւնը՝ որ տեւեց 577 տարի*։

74. Արշակունեաց թագաւորութիւնը միշտ նոյն ցեղին վրայ մնաց։

Արշակունեաց թագաւորութիւնը ին-չուան Աբգար թագաւոր՝ Վաղարշակ Պար-թևին ցեղէն էր, և անոր համար ալ կար-ծես թէ ինչուան այն ատեն եղած թագաւոր-ները աւելի քաջ էին։ Բայց անկէ ետքը ուղիղ յաջորդութիւնը դադրեցաւ. վասն զի Անանուն Աբգարու որդին առանց զաւկի մեռաւ, և Սանատրուկ որ Աբգարէն ետքը թագաւորեց, անոր քեռորդին էր։ Այս Արշակունեաց ցեղը Արտաշէս երկրորդին

* Թովմա արծրունի կը դնէ թէ 415 տարի քը-շեց Արշակունեաց տէրութիւնը, ու Յազկերտ Բին երկրորդ տարին վերջացաւ. իսկ Նաողիկ կը դնէ 559 տարի, ինչուան փոքր Թէոդոսին թագաւո-րութեան 24դ տարին. և Կիրակոս պատմիչը 568 տարի։ Հոս դրածը մեր բազմագէտ Չամչեան Վար-դապետին հետեւութեամբ է։

ատեն խառնուեցաւ Ալանաց ցեղին հետ ։ Ալանաց Թագաւորին Սաթինիկ աղջիկը կին առնելով, ուսկից ծնան Արտաւազդ, Տիրան և Տիգրան՝ որ Արտաշէսին յաջորդեցին ։

75 · Արշակունի Թագաւորները ընութեամբ ինչպէս էին ։

Արշակունի Թագաւորներուն առջինները ընդհանրապէս թէ քաջ էին ընութեամբ և թէ աշխարհաշէն ու բարեկարգող մարդիկ · միջիններուն մէջ սկսաւ կամաց կամաց զինուորութեան արուեստը վար ըյնիլ, և աշխարհաշէն գործերը դադրիլ · իսկ վերջի Թագաւորներուն ատեն տիրեց զինուորութեան մէջ բոլորովին թուլութիւն, վարուց ապականութիւն, ինքնագլխութիւն, և սաստիկ երկպառակութիւն, որով նախարարները իրենց Արտաշէս Գ կամ Արտաշիր Թագաւորին զեղծ և ցոփ վարուց համար գնացին մատնեցին զինքը Պարսից Վռամ Թագաւորին ու իրենց վրայ Պարսիկ մարզպան մը ուզեցին ։ Այսպիսի անխորհուրդ մատնութեամբ վերջացաւ Արշակունեաց Թագաւորութիւնը՝ Քրիստոսի 428 թուականին ։

76 · Ե՞րբ սկսաւ Մարզպանաց իշխանութիւնը ։

Արշակունեաց Թագաւորութիւնը դադարելէն ետև սկսաւ մարզպանաց իշխանութիւնը, որ տևեց 204 տարի ։ Վերջը 60 տարիի չափ Հայաստան կը կառավարուէր Հայ իշխաններով կամ կուրապաղատներով

զորոնք Յոյները կը գնէին, ինչուան որ Արաբացիք տիրեցին Հայաստանի, և դրին անոր վրայ հագարացի ոստիկաններ, որոց իշխանութիւնը տևեց 156 տարի: Անկէց ետքը հաստատուեցաւ Բագրատունեաց թագաւորութիւնը *:

77. Ե՞րբ սկսաւ Բագրատունեաց տէրութիւնը:

Բագրատունեաց տէրութիւնը սկսաւ Քրիստոսի 885 թուականին, որոյ առջի թագաւորը եղև Աշոտ Ա, խելացի, աշխարհաշէն և քաջ թագաւորը, որ Արաբացւոց ամիրապետէն պսակուեցաւ. Նոյնպէս և իրեն յաջորդներուն շատը թէ ամիրապետէն կը պսակուէին և թէ Յունաց կայսերէն, երկուքին ալ հպատակելուն պատճառաւ: Այս սովորութիւնը դադրեցուցին վերջի թագաւորները:

78. Բագրատունեաց թագաւորները ինչպէս էին:

Բագրատունեաց մէջ բաց 'ի Աշոտ Աէն եղան ուրիշ քաղաքագէտ և քաջ թագաւորներ ալ առջի ատեն. բայց վերջերը նախարարաց մէջ դարձեալ տիրեց երկպառակութիւնը, և տէրութիւնն ալ այլևայլ թագաւորութիւն բաժնուելով շատ տկա-

* Սամուէլ պատմիչը Արշակունեաց տէրութիւնը վերցուելէն ինչուան Բագրատունեաց տէրութիւնը հաստատուելուն միջոցը կը դնէ 431 տարի:

րացաւ, ինչպէս են Արծրունեաց կամ Վասպուրականի Թագաւորութիւն. Թագաւորութիւն Կարուց կամ Վանանդայ. Թագաւորութիւն Սիւնեաց կամ Սիսական. Թագաւորութիւն Բագրատունեան Աղուանից կամ Կորիկեան, և այլն։

79. Ե՞րբ սկսաւ Ռուբինեանց տէրութիւնը։

Ռուբինեանց տէրութիւնը սկսաւ Ռուբէն Հայ իշխանէն 1080ին։ Առջի բերան որդւոց որդի կ'իշխէին Պարոն անուամբ, ինչուան որ Լևոն Բ 1198ին Թագաւոր օծուեցաւ։ Ռուբինեանց ատեն բոլոր Հայաստան օտար ազգերու տակ գերի ընկեր էր, և Հայերը Կիլիկիոյ իրենց սրովը ու քաջութեամբը տիրապետեցին, որ մեր նախնեաց ժամանակ ամենևին Հայոց ձեռքը եղած չէր. անոր համար Ռուբինեանց տէրութիւնը կ'ըսուի նաև Կիլիկեցւոց տէրութիւն, որ ինչուան Լևոն Զին Եգիպտացւոց սուլդանէն գերի երթալը տևեց 295 տարի, և ասով բոլորովին վերջացաւ Հայոց տէրութիւնը 1375ին։ Կիլիկեցւոց պզտիկ տէրութեան ատեն Թէպէտ և առջի բերան աղէկ ու կարիճ պարոններ և Թագաւորներ ունեցանք, բայց որովհետև Թշնամեաց յարձակմունքը պակաս չեղան նաև Կիլիկիոյ վրայէն, որ էին Յոյները, Սկիւթացիք, զանազան այլազգի ամիրաներ և Եգիպտացիք, անոր համար միշտ ու նեղութիւնները անպակաս էին Հայոց գլխէն։

80. Իշխանական կառավարութիւնը ե՞րբ սկսաւ։

Երբոր Արշակունեաց ցեղէն թագաւորութիւնը Ե դարուն սկիզբը վերցուեցաւ, սկսան իշխանները կառավարել զՀայաստան, զորոնք Պարսիկք կը դնէին և քիչ անգամ Յոյնք, և կ'ըսուէին մարզպան։ Բայց երբոր Է դարուն Արաբացւոց տէրութիւնը ելաւ, այն ատեն իշխանները Յունաց կամ Արաբացւոց կողմէն կը դրուէին. Յունաց կողմէն դրուածները կ'ըսուէին կուրապաղատ, Արաբացւոցը ոստիկան։

81. Արշակունեաց տէրութիւնը վերցըւելէն ետև Հայոց ազգէն դրուած իշխանները ի՞նչ կը կոչուէին։

Կը կոչուէին իշխան աշխարհին, իշխան Հայոց, և քիչ անգամ պարզ իշխան, որոնք Հայաստանը կառավարելէն զատ՝ տուրք կը ժողվէին և կը խաւրէին Պարսից կամ Յունաց, ո՛ր կողմէն որ իրենք իշխան կը դրուէին։ Կը կոչուէին նաև իշխանաց իշխան իբրև ամէն իշխաններու գլուխ։ Այս անունը նաև Բագրատունեաց ժամանակ կը գործածուէր. բայց Բագրատունեաց ատեն մասնաւոր կերպով իշխանաց իշխան ըսելով կ'իմացուէր թագաւորին երկրորդը, որ Արշակունեաց թագաւորութեան ատեն կ'ըսուէր երկրորդ արքայի կամ մարդպետ կամ հայր իշխան։ Բայց մարդպետը և հայր իշխանը նոյն նշանակութեամբ Արշակունի վերջի թագաւորաց ատեն միայն կը գործածուէր։

82. Իշխանաց իշխան անունը ուրիշ որո՞ւն կը տրուէր։

Ստեփանոս Օրպելեան՝ Սիւնեաց նախարարը կը կոչէ նաև իշխանաց իշխան. իսկ Թովմա Արծրունի և Ասողիկ Արծրունեաց թագաւորութեան ատեն նոյն անուամբ կը կոչեն Արծրունեաց թագաւորին երկրորդը, կամ զանիկա՝ որ նոյն տէրութեան մէջ եղած իշխաններէն ամենէն աւելի պատուաւոր էր։

83. Հրամանատար և Հազարապետ անունը որո՞ւն կը տրուէր։

Արշակունեաց տէրութիւնը վերցուելէն ետև այն որ իշխանաց իշխան կը կոչուէր, կ'ըսուէր նաև հրամանատար՝ բոլոր Հայաստանի ինքը հրամայելուն համար. անոր համար Յովհան կաթուղիկոս երբեմն երկու անուններն ալ մէկտեղ կու տայ մի և նոյն անձին, այսինքն իշխանաց իշխան և հրամանատար կը կոչէ։

Իսկ հազարապետ անունը, որ Արշակունեաց ժամանակն ալ կը գործածուէր, Բագրատունեաց ատեն կը տրուէր անոր՝ որ Պարսից կողմանէ կը դրուէր Հայոց աշխարհը կառավարելու և հոգալու համար, որով կը նոյնանայ հրամանատարին հետ։

84. Որո՞նք մարզպան կ'անուանէին։

Պարսիկք մարզպան կ'անուանէին, որ ըսել է կողմնապահ, այն իշխանը, որ իրենց և կամ երբեմն Հայոց ազգէն կը դնէին Հայաստանի վրայ. և նոյն է իշխան, իշխա-

նաց իշխան, հրամանատար և հազարապետ ըսուած անձին հետ. Յազրատունեաց Թագաւորութեան առենն ալ այս մարզպան անունը կը գործածուէր հազարապետ և հարկահան ըսելու տեղ։

86. Մարզպանները ինչ իշխանութիւն ունէին։

Մարզպանները երեք գլխաւոր իշխանութիւն ունէին. մէյմը որ ամէն իշխաններէն վեր էին և Թագաւորին երեսփոխանը կը համարուէին ու աշխարհը կը կառավարէին։ բ. Հայաստանի ամէն իշխաններէն անկախ էին, գերագոյն իշխանութիւնը իրենք ունենալով։ գ. Ինչ որ կ'ուզէին՝ կրնային ինքնիշխան ընել, հրամայել, ինչուան նաև մահուան դատապարտել առանց Թագաւորին հարցընելու, և կուսակալներ դնել, փոփոխել, և այլն։ Բայց չէին կրնար նախարարութեանց ցեղերը փոփոխել ու անոնց յատուկ եղած երկիրը յափշտակել, և սովորաբար բաց 'ի մէկ քանի Թիկնապահներէն ուրիշ Պարսիկ զինուոր չէին ունենար՝ Թէ որ մարզպանը Պարսիկ ըլլար, հապա միշտ Հայու զօրքերը կը գործածէին. իսկ Թէ որ պատերազմի համար հարկաւոր ըլլար, այն ատեն մասնաւոր Պարսիկ զինուոր բերել կու տար։ Մարզպանները Դուին քաղքին մէջ կը նստէին, ու ամէն տարի Հայաստանի տուրքը ժողվելով Թագաւորին կը խրկէին։

86. Ոստիկաններուն կամ Ամիրաններուն վրայ ինչ գիտելիք կան։

Արաբացիք երբոր տիրեցին Հայաստանի վրայ, անոնց ամիրապետը որ կը նստէր Բաբելոն կամ Պաղտատ ու երբեմն Դամասկոս, ինչպէս իրեն տէրութեան ուրիշ սահմանները՝ ասանկ ալ Հայաստան իշխան կը խրկէր, զոր մեր մատենագիրները երբեմն հայու բառով ոստիկան կ'անուանեն և երբեմն ամիրայ, որ իբրև գործակալ և վերակացու կը կառավարէր Հայաստանը, և ամէն տարի տուրք կը ժողվէր և կը խրկէր ամիրապետին։ Այս ամիրաներուն կամ ոստիկանաց գլխաւորը Ատրպատական կը նստէր, և ինքը Հայաստանի այլևայլ գաւառներուն վրայ ամիրաներ կը դնէր, ինչպէս Գողթն գաւառը, Խլաթ, Նփրկերտ, Տփխիս, Ապահունիք, Գանձակ, և այլն։ Ասոնց մէջ ամենէն երևելին էր Դուին քաղաքը նստած ամիրան, որ երբեմն Նախջուան քաղաքն ալ նստած է. ասիկայ արաբացի զօրքերով Հայաստանը թշնամիներէն կը պահէր։ Եւ սովորաբար Հայաստանի մէջ դրուած երկրորդական ամիրաները առանց անոր հրամանին գլխաւոր բան մը չէին կրնար ընել։ Ասով յայտնի կը տեսնուի թէ ամիրապետը Ատրպատականի ամիրային ձեռքով Հայաստանի վրայ մէկ ամիրայ չէր դնէր, հապա այլևայլ. որոնք թէպէտ և Ատրպատականի ամիրային ձեռքին տակն էին, բայց իրենք ալ կըրնային ինքնագլուխ հրաման ընել, և ինչուան մահուան վճիռ տալ։

87. Հայոց տէրութեանը կառավարու-թեան կերպը ինչպէս էր։

Հայոց տէրութեան կառավարութիւնը, ինչպէս ուրիշ արեւելեան ազգերուն, այսինքն Ասորեստանեայց, Մարաց, Պարսից, և այլն, բացարձակ միապետական էր. ինչ որ կ'ուզէր թագաւորը՝ ինք իր կամքը կրնար ընել, թէպէտ և անպատշաճ բան ըլլայ, և ուրիշ իշխանաց կամքին հակառակ։ Այս բանս յայտնի կ'երևի մեր վերջի Արշակունեաց թագաւորներուն ատեն, որ են Տիրան, Արշակ, Պապ, որոնք նախարարաց կամքին հակառակ բաներ կ'ընէին։

88. Մեր թագաւորները Հայկազունեաց և Արշակունեաց ատեն ինչ վերաբերութիւն ունէին մէկալ տէրութեանց հետ։

Մեր նահապետները Հայկէն ետև ինչուան որ թագաւոր ունեցանք, նոյնպէս նաև թագաւոր ունենալէն ետև, միշտ քովի զօրաւոր ազգերէն երկրորդական պատիւը կ'ունենային և անոնց կը հնազանդէին. ինչպէս Հայկազունեաց ատեն Ասորեստանեայց, և Արշակունեաց ատեն Պարսից, ինչուան Արշակունեաց թագաւորութեան վերջաւորը. միայն Արտաշէս Բ եղաւ որ յաղթելով Պարսից՝ ինքը առաջին պատիւն առաւ և Պարսից թագաւորը երկրորդ պատիւը. բայց Բ Տիգրանին ատեն, որ իրեն յաջորդեց, նորէն նախագահութիւնը Պարսից անցաւ։

89. *Հայերը Հռոմայեցւոց հետ ինչ վերաբերութիւն ունէին։*

*Հայոց տէրութիւնը հին ատեն գրեթէ անծանօթ էր Հռոմայեցւոց, անոր համար ալ Հռոմայեցւոց հին պատմիչները տեղեկութեամբ չեն խօսիր Հայոց տէրութեան վրայ. և մեր հին թագաւորներուն մէջ ամենէն աւելի ծանօթ է իրենց Բ Տիգրանը՝ Միհրդատայ պատերազմներուն պատճառաւը, որուն Հռոմայեցիք յաղթելէն ետև՝ եկան տիրեցին Հայաստանի ալ, Ղուկուղղոսին և Պոմպէոսին ձեռքով, և Հայաստանը իրենց հարկատու ըրին։ Անկէց ետքը հարկատուութեան մէջ մնացին Հայերը Հռոմայեցւոց, ինչպէս որ յայտնի կը տեսնուի Օգոստոս կայսեր ատեն Աբգարու դիպուածներէն, Ներոն կայսեր ժամանակը Տիրիթայ դիպուածներէն՝ որ Վերին Հայոց վրայ թագաւոր եղաւ։ Բայց այս հարկատուութիւնը երբեմն դադրեցուցին հետագայ թագաւորները։ Երբոր Տրդատ Դիոկղետիանոսի ձեռքով թագաւոր եղած դարձաւ Հայաստան ու վանեց։ Պարսից Շապուհ թագաւորը, որ Հայաստանի տիրեր էր, նորէն բարեկամութիւնը աւելցուցին Հայերը Հռոմայեցւոց հետ. այս բանիս մեծ պատճառ եղաւ Հայոց քրիստոնէական հաւատքն ընդունիլը Ս. Գրիգոր Լուսաւորչին ձեռքովը, որուն հետ մէկտեղ Տրդատ թագաւորը Հռոմ գնաց Կոստանդիանոսի ուրախակից ըլլալու համար, որ*

նոր դարձեր քրիստոնեայ եղեր էր. և Հոն Տրդատ Թագաւորը Կոստանդիանոսի հետ անլուծանելի խաղաղութեան դաշինքը դըրաւ: Այս դաշինքը ետքերն ալ միշտ կը յիշէին մեր մատենագիրները, և Թագաւորները տակաւ կը նորոգէին: Երբոր կայսերութիւնը Կոստանդիանոսի ձեռքով Կոստանդնուպօլիս փոխադրեցաւ և քիչ ատենէն վերցուեցաւ Հռոմայ կայսրութիւնը, Հայերը անկէց ետքը սկսան Յունաց հետ վերաբերութիւն ունենալ:

90. Հայերը Յունաց հետ ինչպէս կը վարուէին:

Առջի բերանը բարեկամութեամբ էին, բայց Արշակունեաց վերջի Թագաւորներուն ատեն՝ այսինքն Բ Արշակին և Պապին ժամանակները թշնամացան Յունաց հետ, և Պապ թողուց յայտնապէս Յոյները և միաբանեցաւ Պարսից հետ, և անոնց հետ խաղաղութեան դաշինք դրաւ: Պապէն ետև երբոր Հայոց տէրութիւնը երկու բաժնուեցաւ, այն մասը որ Պարսից ընկաւ, անոնց կը հնազանդէր, իսկ մէկալ մասը Յունաց: Բագրատունեաց առջի Թագաւորներուն ժամանակը նոյնպէս մեծ սէր ունէին Յունաց հետ. իսկ վերջերը Անի քաղքին մատնութեանը պատճառաւ չարաչար ատելութիւն մտաւ Հայոց և Յունաց մէջ, որ շատ վնասակար եղաւ և գրեթէ մեր կործանմանը պատճառ:

Նոյնպէս Ռուբինեանց ատենն ալ Հայե-

րը՝ Յոյներուն հետ շատ ատելութեամբ էին, պատճառաւ որ Կիլիկիան Յունաց ձեռքէն յափշտակեր էին, և մէջերնին ալ հաւատոյ վէճեր մտեր էր։ Ընդ հակառակն նոյն ատեն Լատինացւոց հետ շատ բարեկամութեամբ էին, և ստէպ ստէպ թղթակցութիւն կ՚ընէին մեր կաթուղիկոսներն ու թագաւորները սրբազան Պապին հետ, որոց միջնորդութեամբը քանի մը անգամ օգնութիւն ունեցան թշնամեաց դէմ Եւրոպայի տէրութիւններէն։

91. Հայերը հիւսիսային ազգերուն հետ ի՞նչ ընտանութիւն ունէին։

Հայերը Ալանաց հետ Բ Արտաշէսին ատեն դաշինք դրին և բարեկամութիւն հաստատեցին, Արտաշէս Ալանաց թագաւորին Սաթինիկ աղջիկը կին առնլով։ Հոնաց հետ մասնաւոր դաշինք դրին Հայերը Վարդանանց ատեն, բայց անկէց առաջ ալ կ՚երևի թէ կար այս դաշինքը, որով պատերազմի համար հարկաւոր եղած ատեն Հոնքն ալ օգնութիւն կը կանչէին։

92. Եգերացւոց ու Վրաց հետ ի՞նչ ընտանութիւն ունէին Հայերը։

Եգերացւոց թագաւորները, որ մեր առջի աշխարհակալ թագաւորներուն տակն էին՝ Բագրատունեաց թագաւորներուն հետ մասնաւոր ուխտ ըրած կը յիշուին։ Իսկ Վրաց և Աղուանից հետ միշտ բարեկամութեամբ կ՚երթային Հայերը, որովհետև երկայն ատեն մեր տէրութեան հպատակ և-

ղած են․ և այս վրայ հետ ունեցած բարեկամութիւնը Բագրատունեաց առեն աւելի շատցաւ։

## ԳԼՈՒԽ Է.

### Նախարարութեանց վրայ.

93. Նախարար անունը ուսկից ելած կը կարծուի։

Նախարար անունը ելած է նախ և արար բառերէն, որ կը ցուցընէ ամէն գործոյ մէջ առաջին ըլլալը, կամ ուրիշներէն վեր իշխանութիւն ունենալը։

94. Նախարարութիւններուն անունները ինչպէս կոչուած են։

Նախարարութիւններէն ոմանք կոչուած են իրենց պաշտօնէն առնլով, ինչպէս են Հաւնունիք, Ապանդունիք, և այլն, ոմանք գաւառներուն անունովը, ուր որ կ'իշխէին նախարարք. ինչպէս են Ռշտունեաց նախարար, Աշոցայ նախարար, և այլն. և շատերը ցեղին անունովը. ինչպէս Վասպուրական աշխարհին նախարարը կը կոչուէր Արծրունեաց նախարար, Ուտի աշխարհինը՝ Առողեաց նախարար. բաց ասոնցմէ են Բագրատունեաց, Մամիկոնեանց, Մանդակունեաց, Կամսարականաց նախարարութիւնները, և այլն։

95. Նախարարաց ուրիշ ինչ անուն կը տրուի։

Մեր հեղինակներէն շատերը, ինչպէս են Խորենացի, Փարպեցի, Թովմա Արծրունի, նախարարները կը կոչեն նաեւ ազատ եզական առնլով. իսկ յոգնակի առնլով կ'ըսուէր ազատորեար, ազատանի եւ անոնց որդիքը ազատորդի, եւ նախարարութիւնը ազատութիւն։ Կը կոչեն դարձեալ նախարարը տէր եւ տանուտէր, ինչպէս տէր կամ տանուտէր Մամիկոնէից, Սիւնեաց, եւ այլն, եւ նախարարութիւնը Տանուտէրութիւն եւ տանուտէրական պատիւ։ Կը կոչուի երբեմն պարզապէս նախարարի տեղ իշխան, եւ իշխանական պետութիւն նախարարութեան տեղ, թէպէտ այս տեսակը քիչ գործածուած կայ, եւ աւելի Փարպեցին կը գործածէ։ Դարձեալ, ինչպէս իւրաքանչիւր նախարարական ցեղին գլխաւորը կը կոչուէր Տանուտէր, սանկ ալ կ'ըսուէր նաեւ Նահապետ. ինչպէս կ'ըսէ Բուզանդ «Տանուտէրն նահապետն Մամիկոնեան տոհմին», եւ Խորենացին «Արգամ Նահապետ Մուրացանայ», իսկ նախարարութեան կ'ըսուէր նահապետութիւն։ Բուզանդ երբեմն տանուտէր եւ նահապետ, տանուտէրութիւն եւ նահապետութիւն երկուքն ալ մէկտեղ կը գործածէ։

96. Սեպուհ անունը որոց կը տրուի։

Սեպուհ կը կոչուին ամէն նախարարութեանց իշխանաւոր մարդիկը՝ ազնուական ցեղէ ըլլալնուն համար։ Ուստի լաւ պէտք է զանազանել սեպուհը՝ տանուտէրէն կամ

նախարարէն՝ որ ցեղին կամ երկրին գլուխըն էր, ինչպէս որ յայտնի կ'երևի փարպեցւոյն այս հետագայ օրինակներէն. «Արդ եկեալ հասանէին տանուտեարքն հանդերձ սեպհօքն». «Հանդերձ ամենայն տանուտերամբք և աւագ սեպհօք», և այլն։

97. Ե՞րբ սկսան նախարարութիւնները։

Նախարարութեանց շատին սկիզբը Հայկազանց ժամանակէն է, որոցմէ մէկ քանին կը յիշէ Խորենացին, ինչպէս են Մանաւազեան, Բզնունեան, Խոռխոռունի, Սիսական, Սլկունի նախարարութիւնները, և այլն։ Բայց վերջէն ալ զանազան ատեն ինչպէս Վաղարշակայ, Գ Տիգրանայ, Բ Արտաշեսի և Տրդատայ ատենն ալ այլևայլ նախարարութիւններ հաստատուեցան։

98. Ո՞վ գրել տուած է նախարարութեանց պատմութիւնը։

Գլխաւորն են Վաղարշակ թագաւորը և Սահակ Բագրատունին, որոց խնդիրքովը գրուեցան երկու երևելի պատմութիւնները, այսինքն Մարիբասայ և Խորենացւոյն։ Վասն զի Վաղարշակ երբոր Հայաստան եկաւ, տեսաւ որ այլևայլ նախարարներ երկիրը իրենց մէջ բաժներ ու խաղաղութեամբ կ'իշխէին, ուզեց իմանալ թէ ասոնց սկիզբը ուսկից է, և ինչպէս իրենց ձեռքը անցեր է, վասն զի կը կարծէր թէ պատերազմաւ տիրեր են այլևայլ երկիրներուն։ Ու որովհետև Հայաստանի մէջ կատարեալ յիշատակութիւն մը չկար այս բա-

ներուս վրայ, Վաղարշակ Մարիբաս ասո-րին Նինուէ խրկեց, որ գնաց Թագաւորական դիւանէն հանեց Հայոց պատմութիւնը, և անով դուրս ելաւ նախարարութեանց պատմութիւնը։ Իսկ Մովսէս Խորենացին գրեց իր պատմութիւնը Մարիբասէն և իր ժամանակը եղած պատմագիրներէն և աւանդութիւններէն առնլով։ Ունինք նաև Գագիկ Արծրունիին խնդիրքովը գրած Թովմա Արծրունիին Արծրունեաց ցեղին պատմութիւնը, Ստեփանոս Ուռպելեանին գրած Սիւնեաց ցեղին պատմութիւնը։ Ունինք նաև Բագրատունեաց ցեղին պատմութիւնը՝ որ Շապուհ Բագրատունին գրած է, Մամիկոնեանց ցեղին պատմութիւնը, որոնք երկուքն ալ կորսուած են, և միայն յիշատակութեամբ գիտենք։ Կան նաև ուրիշ նախարարութեանց վրայ ալ գրուածներ, բայց ամէնքն ալ կորսուած են։

99. Նախարարները ի՞նչ իշխանութիւն ունէին։

Իւրաքանչիւր նախարար կը կառավարէր իր երկիրը որդւոց որդի իբրև իրեն սեպհական եղած, և կը տիրէր անոր մէջ եղած բնակչաց վրայ, և դատաստանին ինքը կը կտրէր, նաև ինչուան մահուան դատաստանն ալ։ Թագաւորը չէր խառնուեր նախարարներուն երկրին, և իրենց բռնած կառավարութեան կերպին, անոր համար նախարարները ազատ կ'ըսուէին. վասն զի Թագաւորը չունէր անոնց վրայ

այն իշխանութիւնը՝ ինչ որ իր ժողովրդեան վրան ունէր ։

100․ Նախարարք ինչ պարտքեր ունէին։

Նախարարները պարտական էին նախ պատերազմի ատեն զօրք տալ Թագաւորին՝ իրենց երկրին բազմամարդութեանը համեմատ , բայց իւրաքանչիւր նախարար իր երկրին պահպանութեանը վրայ աւելի հոգ կը տանէր՝ քան թէ բոլոր աշխարհին , մանաւանդ Թագաւորանեաց ատեն․ անոր համար նախարարք իրենց զօրաց մեծ մասը իրենց երկրին մէջ կը պահէին․ որով քիչ անգամ հարիւր հազար զօրքէն աւելի բանակ եղած է բաց 'ի Ա Արտաշեսի ատենէն , որուն զօրքը անթիւ էր , և իր որդւոյն Տիգրանին Խոսրովու և Տրդատայ բանակներէն ։

Երկրորդ , իւրաքանչիւր նախարար հարկ կու տար Թագաւորին , և թէ որ մէկը չտար՝ ապստամբութեան նշան էր ։ Այս երկու գլխաւոր պարտականութեանց համար նախարարները Թագաւորին հպատակ կը սեպուէին ։

101․ Նախարարաց ամենուն իշխանութիւնը հաւասա՞ր էր ։

Չէ․ ոմանք ազգ նախարար կը կոչուէին , որոց որ մեծ էր իշխանութիւնը կամ երկիրը․ ոմանք կրտսեր , որոց որ պզտիկ էր պաշտօնը կամ երկիրը ։ Նախարարաց մէջ նախապատուութեան կարգ դնող եղան Վաղարշակ և Տիգրան Գ , մեծն Խոսրով և

Տրդատ. բայց ամէնն ալ չգիտցուիր թէ որը առաջ էր և որը ետքը նախապատուութեան կողմանէ. թէպէտ և կը տեսնենք որ նախարարները սաստիկ վրէժխնդրութեամբ ու նախանձով կը պաշտպանէին իրենց կարգը. անանկ որ անգամ մը Պարսից Շապուհ թագաւորը սեղանի վրայ Սիւնեաց Անդոկ իշխանին Հայոց նախարարներուն մէջ տասնըչորրորդ կարգը տալուն համար, որ ըստ Ագաթանգեղոսի տասնըմէկերորդ, և Ստեփանոս Ուռպելեանին նայելով եօթներորդ գահը ունէր, այն աստիճան կիրք ելաւ, որ Պարսիցմէ ապստամբելով իր երկրին աւերմանը պատճառ եղաւ։

102. Ո՞րչափ էր նախարարաց թիւը։

Ստեփանոս Օուպելեան նախարարաց թիւը 400 կը դնէ Տրդատայ ժամանակը, նոյնպէս Մեսրոպ պատմիչ Բ Արշակին ատեն 400 կը դնէ, իսկ Բուզանդ նոյն Արշակայ ատեն 900 կը դնէ *։ Այսչափ նախարարաց թիւէն յայտնի կ՚երևի որ՝ չէ թէ միայն նահանգները, հապա նաև այլևայլ գաւառներ ունէին իրենց սեպհական նախարարներ։ Բայց նախարարաց թիւը ատեն ատեն պակսեցաւ կոտորածով. ինչպէս Տիրանայ, Արշակայ և Պապայ Արշակունի թագաւորաց ատեն, որոնք այլևայլ նախարարաց ցեղերը ջնջեցին։ Բայց շատ

* Պլինիոս Մեծ Հայոց մէջ 120 նախարարութիւն կը դնէ։

ամենայն պակսեցաւ Ը դարուն, երբոր Հագարացիք նախարարները Նախճուան քաղաքին մէջ այրեցին (§. 65)։ Նշան նախարարութիւններ, որոց ցեղը հատնելով վերցուեցան, ոմանք ալ վերջի ժամանակի թըշուառութեանց առեն ջնջուեցան կամ կորսուեցան։ Այս պատճառաւ է որ Բագրատունեաց, մանաւանդ անոնց վերջի թագաւորաց առենը՝ միայն գլխաւոր և երևելի նախարարութիւնները կը յիշուին։ Իսկ այն նախարարութիւնները, որոնք Չորրորդ Հայոց մէջն էին, ինչպէս Անգեղտան, Մարդպետական, և այլն, չեն յիշուիր՝ որովհետև շատոնց Յունաց ձեռքին տակը ըլլալով՝ կորսուեցան։

## ԳԼՈՒԽ Ը.

### Բաժանմունք նախարարութեանց.

Այսչափ ընդհանուր տեղեկութիւններէն ետև զատ զատ իւրաքանչիւր նախարարաց վրայ ալ ուզելով խօսիլ՝ իրեք յօդուած կը բաժնենք այս գլուխը.

ա. Թագակալ նախարարութիւններ, այսինքն անոնք՝ որ Թագաւորի անուն ունեցան և յաջորդաբար Թագաւորեցին։

բ. Պաշտօնակալ նախարարութիւններ, այսինքն անոնք՝ որ տէրութեան մէջ մասնաւոր պաշտօն մը ունէին իրենց ցեղին սեպհական։

գ. Անպաշտօն ճարտարապետութիւններ, այսինքն անոնք՝ որ տէրութեան մէջ մասնաւոր պաշտօն մը չունէին։

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### Թագաւորական ճարտարապետութիւններ.

#### Ա. Բագրատունիք։

103. Բագրատունեաց նախարարութիւնը ուսկից եկած է։

Բագրատունեաց ցեղին առաջին նահապետն է Շամբատ անունով ազնուական հրեայ մը, որ մեր Հրաչեայ Հայկազուն Թագաւորը Նաբուգոդոնոսորայ Հրէիցմէ ըրած գերիներուն մէջէն խնդրելով առաւ ու բնակեցուց Հայաստանի մէջ, ասկից ելաւ Բագրատունեաց ցեղը։

104. Բագրատունիք անունը ուսկից ելած է։

Շամբատին ցեղէն Բագարատ անունով քաջ ու խելացի մարդ մը երբոր Վաղարշակայ ատեն ամենէն առաջ հնազանդեցաւ անոր, Վաղարշակ ալ այս բանիս փոխարէն զինքը որդւոց որդի Ասպետութեան Թագաւորաց Թագադիր ըրաւ, և իրեն պատուանուն դրաւ բագարատ կամ թագադիր ասպետ. որով որդւոց որդի ասպետ կը կոչուէր այն ցեղին գլխաւորը՝ Թագաւորին

գլուխը թագ կապելուն համար. և իր իշխանութիւնը ընդունեցաւ թագաւորաց տայեալութիւն. և նախարարութիւնը Բագարատին անունով անկէց ետև կոչուեցաւ Բագրատունի :

105. Բագրատունիք թագակապութեան պաշտօնին համար ի՞նչ պատիւ ունէին :

Բագրատունեաց ցեղը թագակապութեան պաշտօնին համար նախարարութեանց մէջ ամենէն պատուաւորն և առաջինը եղաւ, և առանց այս ցեղին թագաւորութեանը Արշակունեաց ատեն գրեթէ ապօրինաւոր կը սեպուէր մէկու մը թագաւորելը : Միայն Երուանդ Բ, ինչպէս կը պատմէ Խորենացի, առանց Բագրատունեաց ցեղէն թագ առնլոյ թագաւորեց :

106. Վաղարշակ Բագրատունեաց ցեղին ուրիշ ի՞նչ պաշտօն տուաւ :

Վաղարշակ Բագարատը բաց 'ի թագադիր ըլլալէն՝ ըրաւ նաև կողմնակալ իշխան Հայաստանի հիւսիսային կողմին, և հոն եղած զօրքերուն զօրավար : Այս իշխանութիւնը միջին Տիգրան առաւ Բագրատունեաց ցեղէն, բայց Արտաւազդ Բ նորէն դարձուց իրենց :

107. Բագրատունեաց բնակութեան տեղը ո՞ւր էր :

Առջի բերան Բագրատունիք կը բնակէին Սպեր գաւառին մէջ, զոր Վաղարշակ տուած էր իրենց, երբոր Բագարատը արեւմտեան կողմին կուսակալ ըրաւ : Իսկ

Արշամ Թագաւորը, որ Աբգարու Հայրն էր, Ենանոս Բագրատունի Թագակապ ասպետը բնակեցուց տնով տեղով Այրարատ նահանգին Կոգովիտ գաւառին մէջ, ուր ետքը շատցան, և Սմբատ Բագրատունի Բ Արտաշէսին սպարապետը շինեց հոն Բագարան քաղաքը։ Բայց ետքէն Մսակեր ըսուած Աշոտ Բագրատունին՝ իր արքունիքը փոխեց Արշարունեաց երկիրը, Կամսարականաց ցեղէն ստըկով գնելով զանիկա, և այն եղաւ իրենց բուն բնակութեան տեղը. և ինչպէս կ'երևի, առաւ նաև Շիրակ գաւառը Անի քաղքին հետ մէկտեղ, վասն զի անկէ ետքը Բագրատունեաց ձեռքն էր։ Ուստի Բագրատունեաց առջի բնակութեան տեղը եղաւ Սպեր գաւառը՝ Բարձր Հայոց մէջ, ետքը Այրարատ նահանգին Կոգովիտ, Արշարունիք, Շիրակ գաւառները, նաև միջոց մը Տուրուբերանի Տարօն գաւառն ալ՝ Բագրատունեաց տէրութեանը տակն։

108. Բագրատունեաց գլխաւոր քաղաքը որն էր։

Բագրատունեաց ցեղին գլխաւոր քաղաքը եղաւ նախ Դարոյնք կամ Դարօնք Կոգովիտ գաւառին մէջ, ետքը Երազգաւորք քաղաքը, ուր էր Ա. Սմբատին Թագաւորական պալատը։ Բայց երբոր Աշոտ Գ Ողորմած ընդարձակեց Շիրակ գաւառին Անի քաղաքը, այն եղաւ անկէ ետքը Թագաւորանիստ քաղաքը, ինչուան իրենց տէրութեան վերցուիլը։

109. Ո՞ւր էր Բագրատունեաց գերեզմանատեղին։

Բագրատունիք ուր որ կը փոխէին իրենց բնակութեան տեղը, հոն ալ կը թաղուէին. ուստի նախ Դարոյնք կամ Դարոն քաղաքին մէջ, ետքը Բագարան, ետքէն Անի քաղաքին մէջ եղաւ իրենց գերեզմանատեղին։

110. Բագրատունիք ի՞նչ հաւատք ունէին։

Բագրատունիք իրենց Շամբատ նախահօրը ատենէն սկսեալ՝ ինչուան ետքը միշտ հրէութեան մէջ մնացին. մինչև Վաղարշակայ ատեն ամենևին այլայլութիւն չեղաւ իրենց հաւատքին մէջ. իսկ Վաղարշակ յորդորեց Բագարատը որ հրէութիւնը թողու և կուռք պաշտէ. բայց երբոր յանձն չառաւ, իր կամքին թողուց։ Սակայն Արշակ թագաւորը, որ Վաղարշակին յաջորդեց, սկսաւ զիրենք նեղել որ հրէութիւնը թողուն, և մէկ քանին ալ սպաննեց. բայց անով ալ չկրցաւ իրենց կուռք պաշտել տալ, հապա միայն յանձն առին շաբաթ օր զբօսանաց և որսի երթալ, և իրենց տղաքը չթլփատել. բայց ետքերը Բ Տիգրանին ատեն նորէն սկսան հալածանք քաշել, որ իրենցմէ արևմտեան կողմի զօրապետութեան պաշտօնը առաւ. բայց երբոր յանձն առին զոհած ու խոզի միս ուտել, ազատ թողուց զիրենք։ Երրորդ անգամ հալածանք կրեցին Արշամ թագաւորին ատեն,

որով նոյն ատենի Յունաստու Թագաւորը տա-
պետը տնով տեղով Թողուց հրէութիւնը ու կռապաշտ եղաւ։ Այսով հրէական անունները սկսան փոփոխիլ, Ասուրը՝ Աշոտ, Վազարիան՝ Վարազ, Շամբատը՝ Սմբատ Բագադիան՝ Բագարատ, և այլն։ Բայց եղան ոմանք ալ որ չուրացան Արշամայ տանն իրենց հրէութիւնը, և Քրիստոսի համբառնալէն ետքը երբոր Թադէոս առաքեալ եկաւ Եդեսիա քաղաքը, ամենէն առաջ իրենք քրիստոնեայ եղան։

111. Բագրատունեաց ցեղէն որո՞նք անուանի եղան։

Բագրատունեաց ցեղը միշտ երևելի եղաւ խելքի և քաջութեան կողմանէ, և անպակաս էին իրենց մէջ քաջ զօրավարներ և խելացի մարդիկ Թէ Արշակունեաց տանն և Թէ Արշակունեաց տէրութիւնը վերցուելէն ետև։ Բաց ասկէ, երկրորդ անգամ Հայոց Թագաւորութիւնը այս ցեղէն հաստատուեցաւ, զոր Սուրբն Մովսէս Խորենացի մարգարէութեամբ գուշակեր էր իր Սահակ Արծրունւոյն գրած Թղթին մէջ։

112. Բագրատունեաց Թագաւորներուն ժամանակ Հայերը ո՞րչափ տեղ կ'իշխէին։

Բագրատունեաց Թագաւորները առջի բերան Հայաստանի մեծ մասին տիրելէն զկնի, կը տիրէին նաև Վրաց և Աղուանից վրայ, և Սմբատ Ա՝ Ատրներսեհ Վրաց կուրապաղատը, որ իրեն հետ մեծ սէր և բարեկամութիւն ունէր, Թագաւոր ըրաւ։

Բայց Սմբատէն վերջի Թագաւորները չէ Թէ միայն օտար երկիրներու վրայ չէին իշխեր, հապա և ոչ Հայաստանի ամբողջ սահմաններուն. (§§. 53. 54):

113. Բագրատունեաց Թագաւորին ուրիշ ինչ անուն կը տրուէր:

Բագրատունեաց Թագաւորը կը կոչուէր Թագաւոր Անոյ կամ Ձորոգետոյ՝ Ձորոգետ գաւառին անունովը, ուր շինած էր Անի քաղաքը. և կ'իշխէր աւղի բերան գրեթէ բոլոր Հայաստանի, բաց 'ի այլեայլ ամիրաններուն ձեռքը եղած կողմերէն: Բայց երբոր Հայաստան այլեայլ մանր Թագաւորութիւններ բաժնուեցաւ (§. 78), ինքը կ'իշխէր Անոյ, Շիրակ գաւառին և անոր մօտ տեղերուն, Թէպէտ և եղան ոմանք, որ աւելի ընդարձակեցին այս սահմանը: Ամիրաները Անոյ Թագաւորին շահնշահ կ'ըսէին, այս ինքն արքայից արքայ, Հայաստանի մէջ եղած մէկալ մանր Թագաւորներէն որոշելու համար. վասն զի ինքը մէկալ Թագաւորներէն մեծ էր, և ինքը կ'ըսուէր բուն Հայաստանի Թագաւոր. իսկ մէկալները առանձին գաւառներու վրայ կը Թագաւորէին:

114. Բագրատունեաց Թագաւորութեան ատեն Հայաստանի վիճակը ինչպէս էր:

Բագրատունի Թագաւորաց ատեն Հայաստանի վիճակը խիստ խեղճ էր. վասն զի անդադար չորս կողմէն Թշնամիք յարձակելով կ'աւրէին կ'աւերշտկէին երկիրը. ինչ-

պէս եղան Արաբացոցն Աւփշին, Ցուսուփ, Բուղա ոստիկանները. և Տուղրիլեանք կամ Թուրքերը։ Բաց ասկէ՝ Նախարարաց մէջ ատելութիւն և իշխանասիրութիւն մըտնելով փոխանակ Թագաւորին հետ միանալու և Թշնամեաց հետ պատերազմելու, իրարու հետ կը պատերազմէին և մէկզմէկ կը ջարդէին և մէկմէկու երկիրները կ՚աւրըտըկէին։ Այս ամէն նեղութիւնը տեսնելով Ցովհաննէս վերջընթեր Բագրատունի Թագաւորը, անխորհրդաբար Անի Թագաւորական քաղաքը կտակաւ Ցունաց կայսեր Թողուց, որով Ցոյնք երկրորդ Գագկայ ատեն, որ Ցովհաննէսին յաջորդն էր, տիրեցին Անւոյ. ասով վերջացաւ Բագրատունեաց Թագաւորութիւնը Քրիստոսի 1045 Թուականին 160 տարի տևելէն ետև։

115. Բագրատունեաց ցեղը ո՞րչափ ընդարձակեցաւ։

Երբոր իրենց Թագաւորելու ժամանակ Հայաստան այլևայլ Թագաւորութիւն բաժնուեցաւ, անոնցմէ ելաւ Վանանդայ կամ Կարուց Թագաւորութեան ցեղը։ Դարձեալ Հայաստանի հիւսիսային կողմի Աղուանից ըսուած Թագաւորութիւնը Բագրատունեաց ցեղէն էր. նոյնպէս նոյն ատենի Վրաց Թագաւորները Բագրատունեաց ցեղէն էին։ Այս Բագրատունեաց ցեղէն եղաւ նաև Ափխազաց վրայ Թագաւոր. և այս ցեղը Արծրունեաց և ուրիշ նախարարութեանց և Ցունաց կայսերներուն հետ խնամութիւն

ունենալով, Հայաստանի ուրիշ ամէն նախարարութիւններէն աւելի ընդարձակեցաւ, ուսկից հաստատուեցաւ նաև Ռուբինեանց իշխանութիւնը Կիլիկիոյ մէջ, վասն զի Ռուբէն առաջին Կիլիկեցւոց թագաւորութիւնը հաստատողը՝ Բագրատունեաց Գագիկ վերջին թագաւորին ազգականն էր։

## Բ. Արծրունիք.

116. Ե՞րբ սկսաւ Արծրունեաց նախարարութիւնը։

Ադրամելէք և Սանասար կամ Սարասար, Սենեքերիմ Ասորեստանեայց թագաւորին որդիքը, երբոր իրենց հայրն սպաննեցին ու Հայաստան փախան մեր Սկայորդի նահապետին ժամանակը որ Պարոյրին հայրն էր; Սկայորդի զիրենք բնակեցուց Աղձնիք նահանգին այլևայլ կողմերը Ասորեստանի մօտիկ։ Ադրամելէքէն, որուն Խորենացին Արգամոզան ալ կ'ըսէ, ելան Արծրունիք և Գնունիք ցեղերը։

117. Վասպուրականը ե՞րբ Արծրունեաց ձեռքն անցաւ։

Ինչպէս որ ըսինք՝ Սկայորդին Ադրամելէքն ու Սանասարը բնակեցուց Աղձնեաց մէջ. առջինը արևմտեան հարաւային կողմը, և երկրորդը արևելեան հարաւային կողմը. և ետքը այս Աղձնեաց նահանգը գրեթէ ամբողջ մեծն Տիգրան անոնց սերունդներուն յանձնեց։ Ատեն անցնելէն

թեան մէջ։ Գիտենք որ արծուեկիր էին
Վաղարշակայ ատեն որսի կամ՝ պատերազ-
մի երթալու ժամանակ, և որևիցէ քաղա-
քական հանդէսի մէջ. բայց թէ անկէ ետքն
ալ նոյն պաշտօնը կը կատարէի՞ն, ամենևին
չգիտցուիր։ Ուստի այս ցեղին այսչափ մեծ
ըլլալուն պատճառը կ'երևի թէ իրեն եր-
կրին ընդարձակութիւնը և մէջի բերդերուն
շատութիւնն էր. վասն զի Վասպուրականն
նահանգը մեծին Հայոց ամենէն մեծ նա-
հանգն է։ Այս նահանգին մէջն էին նաև
Ռշտունեաց և Անձևացեաց նախարարու-
թիւնները, որոց երկիրը Արծրունեաց ձեռ-
քը ընկաւ իրենց թագաւորութեանը ժա-
մանակ։ Կը յիշուի մեր մատենագրաց մէջ
Անձևացեաց թագաւորութիւն, բայց ոչ ե-
թէ Անձևացիք զատ թագաւորութիւն ու-
նէին, հապա Արծրունեաց թագաւորնե-
րուն տղաքը անոնց վրայ իշխելուն. հա-
մար, երբեմն մեր մատենագիրները անոնց
թագաւորի անուն կու տան։

122. Ե՞րբ սկսաւ Արծրունեաց թագա-
ւորութիւնը։

Յուսուփ ոստիկանը որպէս զի Հայա-
ստանի մէջ խռովութիւն ձգէ, և Սմբատ
Հայոց Բագրատունի թագաւորին իշխանու-
թիւնը պզտիկցընէ, տասներորդ դարուն
Գագիկ Արծրունին, որ Սմբատայ քեռորդին
էր, և անոր հետ արդէն թշնամացեր էր՝
Նախիջուան քաղաքը իրեն չտալուն հա-
մար, Վասպուրականի թագաւոր դրաւ, ո-

րոյ առաջնորդութեամբը Յուսուփ անթիւ չարիք հասուց Հայաստանի։

Վասպուրականի մէջ որդւոց որդի վեց Թագաւոր նստան 100 տարիէն աւելի. այս ինքն Գագիկ, Դերենիկ Աշոտ, Աբուսահլ Համազասպ, Աշոտ Սահակ, Գուրգէն խաչիկ, և Սենեքերիմ Յովհաննէս, որ իբր Վասպուրական աշխարհը Յունաց Վասիլ կայսեր տուաւ մետասաներորդ դարուն սկիզբը, և իր ժողովրդովը բնակեցաւ կայսեր տուած Սեբաստիա քաղքին և անոր շրջակայ սահմանին մէջ. ուր վեց տարի Թագաւորելէն ետև, յաջորդեց իրեն իր որդին Դաւիթ, անկէ ետքը Ատոմ, որ եղաւ Արծրունեաց ցեղին վերջի Թագաւորը, և 1080ին Յոյնք վերցուցին այս Թագաւորութիւնը Սեբաստիայէն։

123. Որո՞նք էին Արծրունեաց գլխաւոր քաղաքները, և ո՞ւր իրենց գերեզմանատեղին։

Արծրունեաց գլխաւոր քաղաքներն են Համամակերտ և Նախջուան Վասպուրականի մէջ, և Թագաւորական ձմերոցն էր Ոստական աւանը։ իսկ իրենց սովորական գերեզմանատեղին էր Աղբակ գաւառին սուրբ խաչին վանքը որ կ'իյնի Օսի գեղին մէջ։ Ետքերը կը Թաղուէին նաև Աղթամարայ սուրբ խաչին եկեղեցւոյն մէջ։

## Գ. Սիւնիք կամ Սիսական.

124. Ե՞րբ եղաւ Սիւնեաց ցեղին սկզբնաւորութիւնը։

Սիւնեաց ցեղը սկսաւ Սիսակէն, որ Գեղամայ Հայկազն նահապետին որդին էր. և իր բնակութեան տեղը իր անունովը Սիւնիք կամ ըստ պարսից Սիսական կոչուեցաւ։ Սիւնեաց ցեղէն ելած է Աղուանից ցեղը։

125. Սիւնեաց ցեղը Վաղարշակէն առաջ ի՞նչ պատիւ ունէր։

Սիւնեաց ցեղը Հայաստանի քաջ ու երևելի ցեղերէն մէկն ըլլալով, մեր Հայկազանց, Պարսից և Յունաց թագաւորներէն շատ պատիւ գտեր էր, ու հրաման ունէր նաև արծըթէ գահ, մարգարտէ վարսակալ, վարազագիր մատնի, կարմիր կօշիկ ու ոսկի գաւազան գործածել վրան ցեղին անունը գրած, ինչպէս որ կը յիշէ Ստեփանոս Օրպելեան։

126. Ի՞նչ պաշտօն ունեցաւ Սիւնեաց ցեղը Վաղարշակայ ատեն։

Վաղարշակ Սիւնեաց ցեղը մեծ նախարարութեանց կարգը անցընելէն զատ, Հայաստանի արևելեան կողմին կողմնակալ դրաւ Կաղմեան ցեղին հետ մէկտեղ, ու հոն տեղի զօրաց գլուխ, Հոնաց յարձակմունքէն Հայաստանը պահելու համար։ Այս կողմնակալութեան պաշտօնը չէ թէ

Վաղարշակ նոր տուաւ Սիսական և Կադմեան ցեղերուն, հապա Արամ նահապետը տուեր էր, և Վաղարշակ նոյն պաշտօնին մէջ նորէն հաստատեց։ Տրդատ Թագաւորը Սիւնեաց նախարարը իր կողմնակալութեան պաշտօնին մէջ հաստատելէն զատ, իր աշխարհին ու զօրքերուն չորս հրամանատարներէն մէկը ըրաւ 21 իշխաններով։ Բաց ասկէ ութը գահագլուխ իշխաններէն մէկը ըրաւ, որ են Գուգարաց, Աղձնեաց, Անգեղտան, Կորդուաց, Բագրատունեաց, Արծրունեաց, Սիւնեաց և Մամիկոնէից, որոնք սեղանի վրայ չորս հարիւր իշխաններէն վեր կը նստէին իբրև գահագլուխ։

127. Սիւնեաց ցեղը քանի՞ ճիւղ կը բաժնուի։

Մատենագրաց խօսքէն կ'երևի թէ երկու ճիւղ կը բաժնուէր. մէկը պզտիկ՝ որ կը բնակէր Գեղարքունի գաւառին մէջ, որ կ'ըսուէր հայկազն իշխան և կամ սեպուհ, և մէկալը մեծ՝ որ Վաղարշակայ ատեն կողմնակալ եղաւ ու ետքէն թագաւորութիւն ունեցաւ, որ կը բնակէր Բաղք, Ձորք, Ծղուկք գաւառներուն և անոր շրջակայ սահմաններուն մէջ։

128. Ե՞րբ ջնջուեցաւ Սիւնեաց ցեղը։

Շապուհ երկրորդ Պարսից Թագաւորը չորրորդ դարուն վերջերը գրեթէ բոլորովին ջնջել տուաւ Անդովկ նախարարին պատճառաւ, որ սաստիկ թշնամացեր էր

Շապուհին հետ՝, իրեն սեղանի վրայ Հայոց Նախարարաց կարգին մէջ տասներչորրորդ գահը տալուն համար։ Ուստի 1700 զօրքով գնաց Տիգրոն իբրև Շապուհը տեսնելու համար․ և հետևեալ օրը առտուն կանուխ վազեց բոլոր դարան մտած զօրքերով քաղաքին մէջ, ու Թագաւորին պալատը կողոպտելով և ուրիշ շատ աւար առնելով դարձաւ իր երկիրը։ Շապուհ այս բանիս վրայ սաստիկ կատղած՝ շատ զօրքով գնաց Սիւնեաց երկիրը, և հրաման տուաւ որ բոլոր աւրեն աւրըշտըկեն երկիրը և մէջի բնակիչները թրէ անցընեն։ Բայց Անդովկ Բաղաբերդ բերդին մէջ քաշուելով, հոնկէ իրեք անգամ պատերազմ ըրաւ Շապուհին հետ ու յաղթեց, և ետքը ելաւ բերդէն ու գնաց Յունաց երկիրը, ուր Թէոդոս կայսրէն մեծ ընդունելութիւն գտնելով Պատրըկաց պատրիկ եղաւ և հոն վախճանեցաւ։ Իսկ Պարսիկք Սիւնեաց երկրին մէջ շատ աւերմունք ընելով ու Սիւնեաց ցեղը գրեթէ բոլորովին ջնջելով ու շատ գերի ալ առնելով դարձան իրենց երկիրը։

129․ Այս կոտորածէն ետև Սիւնեաց ցեղը ի՞նչպէս նորէն բազմացաւ ու ծաղկեցաւ։

Բաբիկ Անդովկայ որդին ելաւ գնաց Շապուհին քով, առանց իմացընելու թէ որուն որդին է․ ու այլևայլ պատերազմներու մէջ Պարսից կողմէն շատ քաջութիւններ ընելէն զատ, անգամ մ'ալ պատերազմի մէջ

զՇապուհը մահուանէ ազատեց։ Այս բանիս փոխարէն՝ հարցուց Շապուհ իրեն թէ ինչ որ կ'ուզէ ըսէ։ Այն ատեն Բաբիկ յայտնեց ինք զինքը, ու իր հայրենի գաւառը ուզեց։ Շապուհ հաւանեցաւ խնդիրքին ու մեծ պատուով խաւրեց զինքը Սիւնեաց երկիրը։ Երբոր Բաբիկ դարձաւ իր հայրենիքը, տեսաւ որ տակնու վրայ եղած էր աշխարհը քսանուհինգ տարիէն 'ի վեր, և սկսաւ նորոգել, և իրմով նորէն սկսաւ աճել Սիւնեաց ցեղը։

130. Բաբիկէն մվ յաջորդեց։

Բաբիկին իշխանութիւնը յաջորդեցին Սամ զնթունի, Վաղինակ, ուրացեալն Վասակ, Գրիգոր՝ որ շատ քաջ մարդ էր, և Պարսից Խոսրով թագաւորին աղջիկը կնութեան առաւ, որով կ'իմացուի թէ որչափ պատուաւոր էր Սիւնեաց նախարարութիւնը։ Կ'երևի թէ այս Սիւնեաց իշխանները Պարսից թագաւորը կը դնէր։

131. Ե՞րբ սկսաւ Սիւնեաց թագաւորութիւնը։

Սիւնեաց մեծ և անուանի ցեղը Բագրատունեաց թագաւորական ցեղին հետ խնամութեամբ կապուելէն ետև, Ժ դարուն մէջ զատ թագաւորութիւն ունեցաւ, որոյ առջինը եղաւ Սմբատ քաջ և բարեպաշտ իշխանը։ Իրմէ ետքը թագաւորեցին նաև չորս թագաւոր ինչուան Սենեքերիմ որ Տաճկաց Մելիք շահին ձեռքովը թագաւորեց ու շատ ընդարձակեց Սիւնեաց տէրու-

թիւնը, որոյ այլևայլ կողմերու ամիրաներ տէրեր էին։ Բայց քիչ ատենէն վերջը Փատլուն Պարտաւայ և Գանձակայ ամիրան յարձըկելով Սիւնեաց վրայ, Սենեքերիմը՝ որ բերդի մը մէջ ամրացեր էր, սուտ երդմամբ վար իջեցընելէն ետև սպաննեց, որոյ մարմինը իր ազգականները մեծ ողբով թաղեցին Վահանու վանքը։

132. Սենեքերիմին ո՞վ յաջորդեց։

Սենեքերիմ իրեք զաւակ ունեցաւ, Գրիգոր, Սմբատ և Սևադա, նաև աղջիկ մը. անոնցմէ Գրիգորը յաջորդեց իրեն, որ առանց զաւկի մեռնելով՝ վերջացաւ Սիւնեաց թագաւորութիւնը՝ 1066ին, 190 կամ 196 տարի քշելէն ետև, ուր վեց թագաւոր ետևէ ետև նստան։ Երբոր Գրիգոր անորդի մեռաւ, իրեն երկիրը Փատլուն Գանձակայ ամիրան, ու Գագիկ Արծրունեաց թագաւորը մէջերնին բաժնեցին, ու իրենք սկսան տիրել Սիւնեաց սահմաններուն։

133. Սիւնեաց թագաւորութիւնը ուրիշ ի՞նչ անուամբ կը յիշուի։

Սիսական կամ Սիւնեաց ցեղին թագաւորութիւնը կը կոչուէր նաև թագաւորութիւն Բաղաց և Կապանի, նոյն երկրին Բաղք և Կապան թագաւորանիստ քաղաքներուն անուամբը. կը կոչուէր նաև Փառիսոսոյ, Սիւնեաց երկրին Փառիսոս պզտի գաւառին անունովը։

134. Այս ցեղէն որո՞նք անուանի եղան։

Սիւնեաց ցեղէն շատ երևելի մարդիկ ե-

ղան թէ քաջութեան, խելքի և գիտութեան, և թէ աշխարհաշինութեան կողմանէ. իսկ չարութեան կողմանէ անուանի եղաւ ուրացեալն Վասակ և իր փեսայն Վարազվաղան, որոց պատճառաւ շատ աւերմունք եղան Հայաստանի մէջ մարզպանաց ժամանակ։ Ինչուան ԺԴ դար կը յիշուին երևելի Սիւնեաց իշխաններ. անկէ ետև ալ գրեթէ ինչուան աս դարս՝ Գարապաղու Մէլիքներէն շատը՝ Սիւնեաց սերունդներն են։

135. Սիւնեաց ցեղին մայրաքաղաքը որն էր։

Սիւնեաց աշխարհին գլխաւոր տեղն էր Ծղուկք գաւառը, ուր էր Սիւնեաց իշխաններուն և հայրապետներուն աթոռը. իսկ մայրաքաղաքն Ծղկաց գաւառին՝ էր Շաղատ գիւղաքաղաքը, ուր էր մետրապօլտին աթոռը. և անոր մէջի փառաւոր և գմբեթաշէն եկեղեցին՝ բոլոր Սիւնեաց աշխարհին մայր եկեղեցին կը համարուէր։

136. Ո՞ւր էր Սիւնեաց թագաւորներուն գերեզմանատեղին։

Սիւնեաց թագաւորները նոյն աշխարհին Վահանու ուխտին մէջ կը թաղուէին. Սմբատ թագաւորը Յովհաննու վանքին մէջ ժամուն դրան առջև թաղուած է։

## Դ. Վանանդեցիք.

137. Ե՞րբ սկսաւ Վանանդեցւոց ցեղը։

Վանանդեցիք ելած են Վընդէն՝ որ Բուլղարաց երկրէն ուրիշ շատ Բուլղարներով գաղթական եկաւ Հայաստան մեր Արշակ Աին ատեն, իրեն երկիրը խռովութիւն ըլլալուն պատճառաւ. և իր անունովը իր բնակութեան տեղը Վանանդ կոչեց, որ առաջ անփայտ և վերին Բասեան կ'ըսուէր, որ կ'իյնի Այրարատ նահանգին մէջ Շիրակ գաւառին մօտիկ։

138. Վանանդեցիք ի՞նչ բնութիւն ունէին։

Այս ցեղը Կովկասային ազգերէն առաջ եկած ըլլալուն համար, աւազակաբարոյ մարդիկ էին, որ Արշակ Գին և Խոսրով Գին ժամանակ ապստամբեցան, ու Հայաստանի այլևայլ սահմաններու վրայ սկսան յարձակիլ ասպատակելու համար։

139. Վանանդեցիք ե՞րբ Նախարարութեանց կարգն անցան։

Ամենևին յիշատակութիւն չկայ թէ երբ Նախարարութեան պատուոյն հասաւ այս ցեղը. բայց մեր պատմիչները Վանանդեցիները յիշելու ատեն միշտ Նախարարութեանց կարգը կը դնեն։ Ասկէց կ'երևի թէ Նախարար կոչուեցաւ այս ցեղին գլխաւորը՝ երկրի տէր ըլլալուն և տանուտէրական պատիւ ունենալուն համար։

140. Վանանդեցիք ե՞րբ թագաւորութիւն ունեցան։

Այս ցեղը Բագրատունեաց թագաւորութեան վերջի ժամանակները թագաւոր ունեցաւ 961ին. բայց այս թագաւորութեանց ցեղը Բագրատունեաց ցեղէն էր, որ կը նստէր Կարս քաղքին մէջ և կը կոչուէր Կարուց թագաւոր, և կը տիրէր բոլոր Վանանդ գաւառին։ Ետևէ ետև իրեք թագաւոր նստան. Մուշեղ՝ Բագրատունեաց Աշոտ Ողորմածին եղբայրը, Աբաս և Գագիկ, որոցմէ վերջինը Գագիկ Աբասեան 1064ին իր ամբողջ տէրութիւնը ու Կարս քաղաքը Յունաց Տուկիծ կայսեր տուաւ, Թուրքներուն ասպատակութենէն ազատելու համար, և անոր տեղն առաւ Ծամընդաւ բերդը, Ամասիա, Կոմանա ու Լարիսսա քաղաքները և ուրիշ գեղեր։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Գաւառական Նախարարութիւններ.

### Ա. Բդեշխութիւն Աղձնեաց.

141. Ե՞րբ սկսաւ Աղձնեաց բդեշխութիւնը։

Սենեքերիմ Ասորեստանեաց թագաւորին երկու որդիքը Ադրամելէք և Սանասար երբոր Հայաստան փախան, մեր Սկայորդի նահապետը Սանասարը բնակեցուց Աղ-

ձնիկը նահանգին մէջ Վասպուրականի մօտիկ։ Այս Սանասարին ցեղը ետքը բազմանալով լեցուց բոլոր Սիմ լեռը, ու մինչև մեր Թագաւորներուն հետ բարեկամութեանք երթալուն ու անոնց համար շատ աշխատելուն, Վաղարշակ իրենց պրգեանցը փոխարէն նոյն Սանասարին ցեղէն՝ Շարաշան անունով մէկը մեծ բդեշխ և Հայաստանի արևմտեան հարաւային կողմին կուսակալ դրաւ, և պարգևեց իրեն Արձն կամ Արզն գաւառը, Սիմ լեռը, Կղեսուր և ուրիշ երկիրներ։

142. Տրդատ ուրիշ ի՞նչ պատիւ տուաւ այս ցեղին։

Տրդատ այս ցեղին առաջնորդը իր տէրութեան ութը գլխաւոր բդեշխաններուն մէկը ըրաւ, որոնք 400 բդեշխաններուն մէջ գահագլուխ էին։ Աղձնեաց բդեշխը կը կոչուէր բդեշխ, կուսակալ, սահմանակալ և Գահերէց կամ բարձերէց արքունի առաձարին (այսինքն խորհրդարանին)։ Եւ ինչպէս այս բդեշխը նոյնպէս նաև մէկալ իրեքը Թագաւորին խորհրդական էին, և խորհուրդ ընելու տեղը նախագահ կը նստէին, և կուսակալ էին Հայաստանի այլևայլ կողմերուն։

143. Աղձնեաց բդեշխութիւնը երբ ապստամբեցաւ Հայոցմէ։

Տրդատայ մահուընէն ետև չորրորդ դարուն Խոսրով երկրորդին ատեն, Աղձնեաց Բակուր բդեշխը տեսնելով որ Սանատրուկ

իշխանը փայտակարանի մէջ թագաւորեց՝ ինքն ալ ապստամբեցաւ Հայոց թագաւորութենէն և Պարսից Որմիզդ թագաւորին կողմն անցաւ։ Խոսրով երկրորդ թէպէտ և շատ զօրք խաւրեց իրեն վրայ, և շատ մարդ ջարդել տուաւ անոր ցեղէն և Բակուրն ալ սպաննեց, բայց չկրցաւ բոլորովին Աղձնիք նահանգը նուաճել։ Ասով Խոսրովի ատենէն բաժնուեցաւ այս նահանգը Հայոց տէրութենէն, և իբրև զատ երկիր կը սեպուէր. թէպէտ և եղան թագաւորներ որ նուաճեցին զիրենք, ինչպէս Տիրան Բ, Արշակ Բ, բայց քիչ ատեն տևեց։ Այս ապստամբութեան պատճառաւ Աղձնիք նահանգը ազգային և օտարազգի մատենագիրներէն ոմանք Հայաստանէն զատ կը դնեն իբրև օտար աշխարհ մը։

144. Աղձնիք նահանգը ուրիշ ինչ կերպով կ՚ըսուի։

Աղձնիք նահանգը կը կոչուի տեղ տեղ նաև կողմն Ասորեստանի, Ասորեստանի մօտ ըլլալուն պատճառաւ, և կամ Սանասարին հետ Ասորեստանէն եկած մարդկանց համար, որոնք կրնայ ըլլալ որ իրենց լեզուն ու սովորութիւններն ալ կը պահէին։ Այս բդեշխութիւնք Հայաստանի մէջ ամէնէն պատուաւոր ցեղերէն մէկն էր, և մէկալ իրեք բդեշխութեանց առաջինը։

## Բ. Բդեշխութիւն Գուգարաց կամ Գուգարացւոց.

**145. Ուսկի՞ց ելած են Գուգարացիք։**

Գուգարացւոց ազգը ելած է Պարսից վերջին Դարեհ թագաւորին Միհրդատ նախարարէն, զոր մեծն Աղեքսանդր Դարեհի յաղթելէն ետև կուսակալ խաւրեց այն կողմերուն, Վրաց ազգէն ըրած գերիներն ալ հոն բնակեցընելով։

**146. Ե՞րբ սկսաւ Գուգարաց բդեշխութիւնը։**

Գուգարաց բդեշխութիւնը սկսաւ Վաղարշակէն՝ որ Գուգարք նահանգին մէջ մեծ բդեշխութիւն հաստատեց, Հայաստանը հիւսիսային կողմի Կովկասային աւազակող ազգերուն ձեռքէն պաշտպանելու համար, և դրաւ զինքը Հայաստանի հիւսիսային կողմին կուսակալ*։ Գուգարացւոց բդեշխը կ'իշխէր նաև Վրաց աշխարհին մէկ մասին, այս պատճառաւ օտարազգի մատենագիրները Գուգարացւոց երկիրը Վրաստանի սահմաններուն հետ կը շփոթեն, և ոմանք Կովկասային ազգաց հետ կը խառնեն։

* Ագաթանգեղոսի մէջ Գուգարացւոց բդեշխին տեղ սխալմամբ սպրդած կ'երևայ Գուշգարացւոց, որ զատ նախարարութիւն էր։

147. Ե՞րբ ապստամբեցաւ Գուգարացւոց բդեշխը տէրութենէն։

Արշակ Երկրորդին ատեն Գուգարացւոց բդեշխը ապստամբեցաւ Հայոցմէ և միացաւ Վրաց հետ։ Բայց Մուշեղ Պապայ ըսպարապետը, Բուզանդին ըսածին նայելով գնաց յաղթեց Գուգարաց բդեշխին ու ըսպաննեց զինքը, և բոլոր մանչ տղաքը թրէ անցուց ու երկիրն ալ հնազանդեցուց։ Բայց ետքը նորէն բոլորովին միացաւ Վրաստանի հետ. վասն զի Խորենացւոյն ատեն Վիրք կը տիրէին բոլոր Գուգարաց երկրին. և միայն Սմբատ Առաջին Բագրատունեաց թագաւորին համար կ'ըսէ Յովհաննէս կաթուղիկոս, թէ Գուգարաց երկիրը նուաճեց, բայց յայտնի է թէ բոլորը չէ, այն ալ քիչ մը ատեն։

### Գ. Բդեշխութիւն Նոր Շիրականայ.

148. Ո՞ւր կ'իյնի Նոր Շիրական նախարարութիւնը։

Այս նախարարութիւնը որ մեծամեծ նախարարութիւններէն մէկն էր, մեր պատմիչները որոշ չեն դներ թէ ուր կ'իյնի, և թէ ուր է Նոր Շիրական երկիրը։ Բայց Ագաթանգեղոսին և Բուզանդին խօսքերէն կ'երևի թէ Ասորւոց երկրին կողմերը կ'իյնի, որով յայտնի է թէ Նոր Շիրական ըսուած երկիրը բուն Հայաստանի մէջ չէր, հապա Հայաստանէն դուրս մեր տէրութեան ձեռ-

քը եղած երկիրներուն մէկուն մէջ, որ Վաղարշակայ ատեն Կղեսոր կ'ըսուէր յն. Գէլիսիւրիա որ նոյն է Սիրիա անուան հետ, և հայերէն Աստրիք, որ Տրդատայ ատեն Շիրական փոխուած է, վրան Նոր բառն ալ աւելցընելով։ Ասով հաւանական կ'երևի թէ Տրդատ Կղեսուրին ուրիշ սահմաններուն ալ տիրեց, որ Վաղարշակ տիրած չէր, անոր համար Նոր Շիրական կոչեց։

149. Նոր Շիրական երկրին նախարարը ինչ պատիւ ունէր։

Նոր Շիրական երկրին իշխանը, որ ըսուած կայ նաև Նոշիրական կամ Նոշիրական, մեր մատենագիրները մեծամեծ նախարարութեանց հետ մէկտեղ կը յիշեն, որ զինուորութեան կարգին մէջ առաջիններէն մէկն էր, ու Հայաստանի չորս բդեշխներէն ու թագաւորին չորս գահերէցներէն մէկը. և էր Ասորւոց կողմին կուսակալ։ Այս նախարարութիւնը Տրդատ հաստատեց. անոր համար Մարիբաս և Խորենացի չեն յիշեր։

Ասոր նախարարը Արշակ Երկրորդին ատեն ապստամբեցաւ, ինչպէս որ կ'ըսէ Բուզանդ, բայց ետքը նորէն Պապայ ատեն հնազանդեցաւ Մուշեղ սպարապետին ձեռքովը։

## Դ. Բդեշխութիւն կորդուաց.

150. Կորդուաց նախարարութիւնը երբ սկսաւ:

Կորդուաց նախարարութիւնը վաղար-շակ հաստատեց, որ կորճայք նահանգին մէկ գաւառն է, բայց շատ անգամ կոր-դուք անունով ամբողջ կորճայք նահանգը կը հասկըցուի, որոյ մէջ բաց 'ի այս նա-խարարութենէն ուրիշ նախարարութիւն չյիշուիր, որով յայտնի կ'երևի թէ այս նա-խարարը բոլոր նահանգին կ'իշխէր: Կոր-դուաց իշխանը Տրդատայ ատեն 400 նա-խարարներուն մէջ 8 գահագլուխ իշխան-ներէն ու թագաւորութեան 4 հրամանա-տարներէն ու բդեշխներէն մէկը եղաւ, ու արևմտեան կողմին կուսակալ միրիշ 21 իշխաններով:

151. Կորդուաց նախարարութիւնը Տրդ-դատէն առաջ ինչ պատիւ ունէր:

Այս նախարարութիւնը Տրդատէն ա-ռաջ ալ մեծ նախարարութիւններէն մէկն էր, որոյ գլխաւորին՝ Պլուտարքոս թագա-ւորի անուն կու տայ: Կորդուաց բնակիչ-ները քաջ և անուանի էին նետաձգութեան և աղեղնաւորութեան կողմանէ, ինչպէս որ կը վկայեն Քսենոփոն, Դիոդոր սիկի-լիացի և Ստրաբոն, որ եղբերը Մարաց հետ միանալով կամ Մարք ասոնց հետ, Կորդուք անունէն ինչպէս որ հաւանական

կ'երևի, Քիւրտ անունը եղած է, որ հիմա բոլոր Մարաց ազգին կը տրուի*։

## Ա. Մուրացան.

152. Մուրացան ցեղը ուսկից եղած է։ Այս ցեղը Մարաց ազգէն էր, և սկսաւ մեծին Տիգրանայ ատեն. վասն զի մեծն Տիգրան երբոր Աժդահակին յաղթեց, ա-

* Մեր մատենագրաց մէջ չորս բդեշխութիւններուն անունները որոշ ու բացայայտ գրուած չեն. Ագաթանգեղոս կը դնէ այսպէս. "Ի զինուորական կողմանէ զչորեսին գահերէցս իւրոյ սահմանին որ բդեաշխքն կոչին, զԱռաջին սահմանակալն 'ի Նոր Շիրական կողմանէն, Երկրորդ սահմանակալն յԱսորեստանեայց (յԱղձնեաց) կողմանէն, Երրորդն յԱրուաստան ('ի Կորդուաց՝ որ մօտ էր յԱրուաստան կամ յԱսորեստան) կողմանէն, Չորրորդ 'ի Մազքթաց ('ի Գուգարաց) կողմանէն"։ Ագաթ. ուրիշ տեղ բդեշխութեանց երկուքը որոշ կը յիշէ, մէկալ երկուքը զանց առնլով. "Առաջին իշխանն Անգեղտան. Երկրորդ իշխանն Աղձնեաց, որ Բդեաշխն Քծ... ութերորդ իշխանն Գուգարացւոց աշխարհին՝ որ միւս անուանեալ բդեաշխն"։
Ստեփաննոս Օրբելեան. "Իսկ զօրացն և աշխարհին չորս միայն կացուցանէ (Տրդատ) իւրոյ թագաւորութեան երկրորդ հրամանատար 'ի վերայ ամենայնին. Արևելեան կողմանն իշխանն Սիւնեաց ԻԱ իշխանօք, հիւսիսային կողմանն բդեշխն Գուգարացւոց ԻԲ իշխանօք. արևմտեան կողման Կորդուացին ԻԱ իշխանօք. հարաւային կողմանն իշխանն Անգեղտանն ԻԲ իշխանօք"։

նոր կինն ու տղաքը և ուրիշ 10,000 ալ գերի բերաւ Հայաստան, ու բնակեցուց Մասիս լերան արևելեան կողմը ինչուան Գողթն գաւառը:

153. Մուրացան ցեղը ի՞նչ պաշտօն ունէր տէրութեան մէջ:

Վաղարշակ Աժդահակին ցեղը՝ որ կ'ըսուի մեր մէջը նաև Վիշապազն*, իրեն թագաւորութեան երկրորդ գլուխ, իր երկրորդական գահը անոր տալով: Միջին Տիգրան այս իշխանութիւնը առաւ Մուրացան ցեղէն և տուաւ մեծին Միհրդատայ իր քեռայրին, որոյ մահուընէն ետև մէկու մը չէր տրուեր այս պաշտօնը, ինչուան որ Երուանդ Բ նորէն դարձուց Մուրացան ցեղին, տալով Արգամին: Բայց շատ չանցաւ Արտաշէս Բին տղան Արտաւազդ յափըշտակեց Արգամին ձեռքէն երկրորդութեան պաշտօնը, զոր Տիրան Ա որ Արտաւազդին յաջորդեց՝ տուաւ Երախնաւու անունով մէկուն Անձևացեաց ցեղէն՝ զինքը սիրելուն համար: Բայց այս իշխանութիւնը միայն Տիրանայ ատեն Անձևացեաց ձեռքը անցաւ:

Արշակունեաց վերջի թագաւորներուն ատեն թագաւորութեան երկրորդ կամ երկրորդական գահ պատուանունները չեն յիշուիր. բայց կ'երևի թէ նոյն ատեն մարդպետ և

* Աժդահակ Մարաց լեզուով կը նշանակէ Վիշապ (տե՛ս. Աժդէր):

հայր իշխան կ'ըսուէր, և Բագրատունեաց ժամանակ իշխանաց իշխան։

154. Մուրացան կամ Մարացւոյն ցեղը երբ ընջնուեցաւ։

Արտաւազդ՝ Արտաշէս Երկրորդին որդին քանի որ դեռ Թագաւոր չէր եղած, իր հօրը կենդանութեան ատեն Թշնամութիւն ունենալով Արգամին հետ, վրան ամբաստանութիւն ընելով նոյն ցեղէն շատ հոգի սպաննել տուաւ, և Նախճաւան քաղաքը և ուրիշ գեղեր առաւ անոր ձեռքէն։ Երբոր Արգամ իրեն հետ պատերազմելով յաղթուեցաւ, այն ատեն Արտաւազդ բոլոր Արգամին ցեղը ընջեց, ամէն երևելի մարդիկը Թրէ անցընելով. և այս աՀագին կոտորածէն մէկ քանի աննշան մարդիկ խալըսեցան։ Եւ յետոյ Արտաւազդ տիրեց Մուրացան ցեղին երկիրներուն, և անոնց իշխանութիւնն ալ իրեն սեպհականեց *։

Բ. Անգեղտուն.

155. Անգեղտուն ըսուած ցեղը ուսկից ելած է։

Անգեղտուն ցեղը ելած է Տորքէն որ

* Այս ցեղը Թէպէտ և ուրիշ Նախարարութեանց կարգը յիշուած չկայ մեր մատենագրաց մէջ, բայց մենք ուզեցինք անոնց կարգը դնել, որովհետև Հայաստանի մեծամեծ ցեղերէն մէկն էր, և որդւոց որդի Թագաւորին Երկրորդը ըլլալու իրաւունքն ունէր։

Պասքամին որդին Հայկակին թոռն էր, և կ'ըսուէր նաև Անգեղեայ, մարմնով կոպտա-տարազ ու չափազանց տգեղ, ու հաստակաւ և ուժով վիթխարի մարդ մը ըլլալուն համար, և իր Անգեղեայ մականունէն ցեղին անունը ըսուեցաւ Անգեղտուն։

156. Անգեղտան ցեղին ուրիշ ինչ ա-նուն կը տրուի։

Այս ցեղը կ'երևի թէ Տիգրանուհիէն ե-լած Ռստան կամ Ռստանիկ ցեղին հետ խառնուած ըլլալով, և կամ թէ նոյն իսկ Տիգրանուհւոյն ցեղէն առաջ եկած ըլլա-լով, ինքն ալ կ'ըսուէր Ռստուն, ու հայերէն բառով երբեմն ըսուած է նաև Արքունի։ Իրեն բնակութեան տեղն էր Չորրորդ Հա-յոց Ծոփք գաւառը, որ ցեղին անունովը կ'ըսուէր նաև Անգեղտուն, որ Տիգրանա-կերտին մօտերը կ'ըլլի։

157. Անգեղտան ցեղը երբ նախարա-րութեանց կարգն անցաւ, և ինչ պաշտօն ունէր տէրութեան մէջ։

Վաղարշակ Տորքը Հայաստանի արևմը-տեան հարաւային կողմին կուսակալ դրաւ, և իրեն ցեղը Հայաստանի մեծ ու պատուա-ւոր նախարարութիւններէն մէկը ըրաւ, ո-րով երբեմն ինչուան նաև բդեշխններէն վեր կը դնեն մեր մատենագիրները, և ուրիշ ա-մէն իշխաններէն առաջ կը յիշեն։ Արշա-կունեաց ատեն շատ անգամ այս ցեղէն կը նստէր մարզպետը, որ Հայաստանի մեծա-մեծ պաշտօնատէրներէն մէկն էր։

158. Ե՞րբ վերցուեցաւ Անգեղտան նախարարութիւնը ։

Անգեղտան ցեղին վերցուելուն վրայ որոշ յիշատակութիւն մը չկայ ։ Արշակունեաց տէրութեան վերցուելէն ետև թէպէտ և Անգեղտան ցեղին անունը չյիշուիր, ինչպէս նաև մարդպետին, բայց կ'երևի թէ Եղիշէին, փարպեցւոյն և ուրիշներուն ոստանիկաց տուն և ոստանիկ մարդիկ ըսուածը նոյն Անգեղտան ցեղին յաջորդներն են ։

## Գ. Ոստանիկ.

159. Ոստանիկ ցեղը ուսկից ելած է ։

Ոստանիկ ցեղը ելած է Տիգրանուհիէն, զոր Տիգրան խաւրեց իր շինած Տիգրանակերտ քաղաքը, բոլոր անոր շրջակայ սահմանները իրեն կալուած տալով ։ Տիգրան խաւրեց Տիգրանուհւոյն հետ նաև ուրիշ Հայկազն թագաւորական ցեղեր, շատ բազմութեամբ ու պահապան զօրքով, որ Տիգրանուհւոյն արքունիքը պահպանեն, և իրեն իբրև թագուհւոյ ամէն խնամքը ընեն ։ Եւ որովհետև Տիգրանուհւոյն ցեղը թագաւորական ցեղ էր, անոր համար իրեն բնակութեան տեղը Պարսից ոստան բառէն առնլով ըսուեցաւ ոստան, որ արքունիք ըսել է, կ'ըսուէր նաև ոստան արքունի, ոստանիկաց տուն, արքունի տուն, և մէջի բնակիչները ոստանիկք ։ Ոստանիկ անունը ա-

ռանձին կերպով կը տրուէր. Տիգրանուհւոյն պահապան գնդին։

160. Վաղարշակ այս ցեղին ինչ պաշտօն տուաւ։

Վաղարշակ այս ցեղէն՝ որ միացեր էր ուրիշ Թագաւորական Հայկազն ցեղերուն հետ, չորս գունդ զօրք ընտրեց իրեն պալատին պահպանութեանը համար, և ասով ուզեց նորոգել մեծին Տիգրանայ սահմանած կարգը։ Այս չորս գունդերն ալ ոստանիկք կոչուեցան Թագաւորին ոստանին կամ արքունեացը պահապան ըլլալնուն համար։ Եւ անկէց ետքը սովորութիւն եղաւ ցեղին անունը ոստանիկ կոչել, և իրենց բընակութեան տեղը ոստան, ուր հին ատեննաև ցեղին անունը ոստան կ՚ըսուէր։ Ուստի մեր մատենագրաց մէջ ըսուած ոստանիկ գունդը Վաղարշակին հաստատածն է, որ ինչուան Յովհաննէս կաթուղիկոսին ատենը կար։

161. Ինչու մեր մատենագրաց մէջ ոստան կամ ոստանիկ Թագաւորական ցեղը մեծամեծ նախարարութեանց կարգը համարուած չէ։

Մեր մատենագիրները փոխանակ ոստանիկ ցեղը մեծամեծ նախարարութեանց կարգը դնելու, անոր տեղը կը յիշեն Անգեղտան նախարարութիւնը, որով յայտնի կը ցուցուի թէ Անգեղտան ցեղին գլխաւորը կ՚իշխէր նաև բոլոր ոստանկաց վրայ։ Եւ դարձեալ ոստանկաց նախարարին տեղ

չատ անգամ կը յիշուի մարդպետը, որ կամ Անգեղտան ցեղէն և կամ ուրիշ Հայկազն հին ցեղերէն մէկ՛ըլլար, որոնք Տիգրանու-հւոյն հետ Տիգրանակերտին կողմերը գա-ցեր էին։

## Դ. Կադմեանք.

162. Կադմեանց ցեղը ուսկից եղած է։

Կադմեանց ցեղը եղած է Կադմոսէն որ Արմենակին որդին էր, և կը բնակէր, ինչ-պէս որ հաւանական կ'երևի, Մոկաց և Կոր-դուաց երկրին մէջ Ասորեստանի մօտ։ Վասն զի Հայկ երբոր Բելայ քովէն փա-խաւ, հոս նախ իրեն բնակութեան տեղ ու կալուածներ շինեց լերան մը ոտքը, և այս եղաւ իրեն առաջին շէնքը, որ ետքէն Կադ-մոսին ժառանգութիւն թողլով, ինքը ելաւ արևմտեան հիւսիսային կողմը գնաց Հարք գաւառը։

163. Կադմեանց ցեղը ի՞նչ պաշտօն ու-նէր։

Մեր Արամ նահապետը երբոր տիրեց Մարաց ու Ասորեստանի կողմերուն՝ այս-ինքն Պարսկահայոց, Կորդուաց, Մոկաց և ուրիշ Ասորեստանի սահմանին, Հայա-ստանի արևելեան կողմին կուսակալ դրաւ Սիսական և Կադմեան ցեղերը, Կադ-մեան ցեղը արևելեան հարաւային կողմին, այսինքն Ասորեստանի կողմերուն։ Այս երկու Սիսական և Կադմեան ցեղերը ետ-

քէն Վաղարշակ նորէն հաստատեց իրենց կողմնակալութեան պաշտօնին մէջ։

## Ե. Մամիկոնեանք.

164. Մամիկոնեան ցեղը ուսկից ելած է։

Մամիկոնեան ցեղը սկսաւ Մամգունէն որ Չենաց աշխարհին մէջ Թագաւորական ցեղէ երեւելի նախարար էր, որոյ վրայ հօն տեղի Արբօկ Թագաւորը չարախօսութիւն լսելով կ'ուզէր սպաննել։ Մամգուն իմանալով՝ փախաւ տնով տեղով Արտաշիր Պարսից Թագաւորին քով։ Արբօկ խնդրեց զինքը Արտաշրէն, բայց որովհետեւ Արտաշիր մեռեր էր, և իրեն յաջորդեր էր Շապուհ Ա, ասիկա Մամգունը տնով տեղով Հայաստան խրկեց իր գործակալներուն քով, և գրեց Չենաց Թագաւորին թէ Մամգունը իր սահմանէն դուրս աքսորեց մաշարեր երկիր մը։ Այն միջոցին Տրդատ Հայաստան դարձած ըլլալով, սիրով ընդունեցաւ Մամգունը, և իրեն ռոճիկ ու բնակութեան տեղ տուաւ։

165. Մամգունը Հայաստանի մէջ ո՞ւր կը բնակէր։

Առջի բերան Մամգուն իր բնակութիւնը մէկ տեղէն մէկալը կը փոխէր, իրեն սեպհական երկիր մը չունենալով. բայց երբոր Սլկունեաց Սլուկ նահապետը սպաննեց՝ որ ապստամբեր էր Տրդատէն, տիրեց անոր երկրին ինչպէս որ Տրդատ խոստացեր

էր իրեն ։ Եւ որովհետև Տարօն Սլկունեաց երկիր էր , Մամգուն իրեն ցեղովը մէկտեղ տէր եղաւ այն երկրին , և իրեն անուամբը կոչեցաւ Տարօն գաւառը նաև Մամգունեան կամ Մամիկոնեան տուն ։ Բայց 'ի Տարօնէ՝ Բուզանդ Տայք նահանգն ալ Մամիկոնեանց սեպհական երկիր կը դնէ ։

166 . Մամիկոնեանք ինչ պատիւ և իշխանութիւն ունէին ։

Սպարապետութիւնը իրենց սեպհական իշխանութիւնն էր , ինչուան Մամիկոնեան ցեղը կը կոչուէր նաև սպարապետութեան ազգ . վասն զի գրեթէ միշտ այս ցեղէն կ'ըլլար սպարապետը ։ Միայն Խոսրով Երրորդին ատեն եղաւ Սահակ ասպետը ։ Բայց Սահակ ասպետին մահուանէն ետև Սուրբն Սահակ խնդրեց Պարսից Արտաշիր Թագաւորէն որ իր փեսան Համազասպը , որ Մամիկոնեան ցեղէն էր , սպարապետ ընէ ։ Արտաշիր կատարեց Սրբոյն Սահակայ խնդիրը , և Մամիկոնեանց ցեղը նախարարութեանց մէջ հինգերորդ կարգը անցաւ ։ Կ'երևի թէ այս ցեղէն կ'ըլլար թագաւորին զինակիրը , որ Թիկնապահին պաշտօնէն զատ էր ։

167 . Ուրիշ ինչ պաշտօն ունեցած է Մամիկոնեանց ցեղը ։

Այս ցեղէն եղաւ Արշակ Երկրորդին սընուցիչը կամ դայեակը . բայց այս դայեկութեան պաշտօնը մասնաւոր ցեղի մը տըրուած չէր , հապա այլևայլ ցեղերէ կ'ըլ-

լայն. ինչպէս Սանատրուկին դայեակը Բագրատունեաց և Արծրունեաց ցեղէն էր, Վարազդատինը Սահառունեաց ցեղէն, և այլն։

168. Մամիկոնեան ցեղէն ի՞նչ երևելի մարդիկ եղան։

Մամիկոնեան ցեղը խելքի, իմաստութեան և առաւել քաջութեան կողմանէ շատ անուանի եղաւ սկզբանէ հետէ. անանկ որ գրեթէ առանց այս ցեղին եռքերը քաջութեան գործ մը չէր կատարուեր. Թագաւորին միշտ հաւատարիմ էին, և անոր սիրոյն համար պատերազմի մէջ ամէն վտանգ յանձն կ'առնուին, և իրենց անձը կը նուիրէին. մէկ խօսքով՝ Հայոց ազգին պարծանք եղան։ Շատ անուանի և քաջ զօրավարներ եղան այս ցեղէն Արշակունեաց ատեն, ինչպէս Վաչէ՝ փոքր Խոսրովու ատեն, Մուշեղ՝ Պապ Թագաւորին ժամանակ, Մանուէլ՝ Վարազդատայ ու Բ Արշակայ ատեն, որ մեծամեծ քաջութիւններ ըրաւ Պարսից դէմ. Նոյնպէս Մարզպանաց ատեն անուանի եղան մեծն Վարդան, Վահան՝ որ Պարսից Վաղարշ Թագաւորին ատեն մարզպան եղաւ. Վարդան Բ, Համազասպ, և Գրիգոր մամիկոնեան, որոնք Հայաստանի հրամանատար եղան։

169. Ո՞րչափ ատեն տևեց Մամիկոնեանց ցեղին իշխանութիւնը։

Այս ցեղին իշխանութիւնը տևեց սկսեալ Տրդատայ ժամանակէն ինչուան Թ դարը.

և վերջին նախարարն եղաւ Բուղայի ատեն Գրիգոր Մամիկոնեան ։ Իսկ ցեղը ինչուան ԺԳ դար և անկէց ետքն ալ կը յիշուի ։

170. Ո՞րն է Մամիկոնեանց ցեղին գըլխաւոր քաղաքը ; և ո՞ւր իրենց գերեզմանատեղին ։

Մամիկոնեանց գլխաւոր քաղաքը Ողական բերդն էր, և իրենց գերեզմանատեղին Գլակայ վանքը ։

## Զ. Կամսարականք*.

171. Կամսարականաց ցեղը ուսկի՞ց ելած է ։

Կամսարականաց ցեղը, որ կը կոչուի նաև Արշարունիք կամ Պահլաւունիք, Պարթևաց ազգէն էր. վասն զի Աբգար երբոր Պարսկաստան գնաց՝ Պարսից թագաւորին որդիքը խաղաղելու, որ յաջորդութեան համար կը կռուէին, օրէնք դրաւ որ Արտաշէս անդրանիկը որդւոց որդի թագաւորէ, և թէ որ իրենց ցեղը հատնի՝ մէկալ երկու եղբարց ցեղերուն անցնի, որոց մէ-

* Պաշտօնական նախարարութեանց կարգը կը դնենք նաև Կամսարական, Ամատունիք և Ռշտունիք նախարարութիւններն ալ, որոնք թէպէտ և տէրութեան մէջ որդւոց որդի պաշտօն մը չունէին, բայց երևելի ցեղեր ըլլալնուն՝ իրենք ալ շատ անգամ տէրութեան մէջ երևելի պաշտօններու հասած են ։

կուն անունն էր Կարէն, մէկալինը Սուրէն. և որոշեց որ ասոնց ցեղերը տէրութեան մէջ ամէն նախարարներէն վեր սեպուին, և կոչեց իրենց ցեղը Կարենի Պահլաւ, Սուրենի Պահլաւ. Սուրենեան Պահլաւէն ելաւ Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ, իսկ Կարենեան Պահլաւէն Կամսարականաց ցեղը։

172. Ե՞րբ սկսաւ Կամսարականաց ցեղը։

Կարնեան կամ Կարենեան Պահլաւին ցեղը ուզելով Պարսկաստանէն Հայաստան փախչիլ մեր մեծին Խոսրով թագաւորին քովը, Արտաշիր Սասանեան Պարսից թագաւորը զօրքով վրան ելաւ, ու ճամբան վրայ հասնելով բոլոր նոյն ցեղին արու մարդիկը ու տղաքը թրէ անցընել տուաւ. միայն Բուրզ անունով մէկը, որ Կարենեան Պահլաւին տանը շատ բարեկամ էր, նոյն ցեղէն տղայ մը առաւ ու փախաւ Քուշանաց երկիրը, որ ետքը Պերոզամատ կոչեցաւ։ Այս Պերոզամատը եղաւ Կամսարականաց ցեղին սկիզբը։

173. Կամսարականաց ցեղը երբ Հայաստան եկաւ։

Կամսար Պերոզամատին առաջին որդին Տրդատայ ատեն բոլոր ընտանիքովն Հայաստան եկաւ, որ հօրը կենդանութեան ժամանակ թշնամեաց դէմ պատերազմելու ատեն շատ քաջութիւններ ընելով յանկարծ թշնամւոյն կողմէն մէկը սակրով անոր գլխուն ոսկրին կէսը կտրեց ու թըռ-

ցուց ։ Թէպէտ և ետքէն դեղով բժշկուեցաւ վէրքը, բայց գագաթը ամբողջ չըլլալուն համար՝ Կամսար կոչուեցաւ, որ է ըսել կէս գլուխ ։

174. Կամսար երբոր Հայաստան եկաւ՝ Տրդատ ո՞ւր բնակեցուց զինքը ։

Տրդատ Կամսարը սիրով ընդունեցաւ իր ցեղէն ըլլալուն համար, և Դրասխանակերտ մեծ աւանն ու Շիրակ գաւառը անոր տըւաւ ։ Բայց քիչ ատենէն Կամսար մեռնելով՝ Տրդատ անոր Արշաւիր որդին իր տեղը դրաւ, և իրեն ցեղը նախարարութեանց կարգն անցընելով, Երուանդաշատ քաղաքն ալ պարգև տուաւ՝ Երասխաձոր գաւառովը մէկտեղ որ կ'իյնի Արարատ նահանգին մէջ ։ Արշաւիր Երասխաձոր գաւառը իր անունովն Արշարունիք կոչեց, և անկէց ցեղն ըսուեցաւ նաև Արշարունի ։

175. Ե՞րբ ջնջուեցաւ Կամսարականաց կամ Արշարունեաց ցեղը ։

Արշակ Բ ուզելով անոնց ձեռքէն Արտագերս բերդը և Երուանդաշատ քաղաքն առնուլ՝ հրաման տուաւ որ Թրէ անցընեն Արշարունեաց ցեղը ։ Այս կոտորածէն խալըսեցաւ միայն Սպանդարատ Արշաւրի որդին իրեն Շաւարշ և Գազաւոն տղոցմով մէկտեղ, և անով տեղով Յունաց բաժինն ապաւինեցաւ ։

176. Կամսարականք երբ նորէն հաստատուեցան ։

Պապայ Թագաւորութիւնը հաստատելու

համար Ջիրաւ դաշտին Պարսից դէմ տրուած պատերազմին մէջ Սպանդարատ շատ քաջութիւններ ընելով և Պեկաց Թագաւորը սպաննելով, իր հաւատարմութեանը փոխարէն՝ Պապ նորէն դարձուց ինչ որ իր հայրը Արշակ Բ յափշտակեր էր Կամսարականաց ցեղէն, այսինքն Շիրակ գաւառը ու Արշարունեաց երկիրը:

177. Ի՞նչ գիտելիք կայ Գազաւան ու Շաւարշ Կամսարականին վրայ:

Երբոր մեր Խոսրով Գ. Թագաւորը ապըստամբեցաւ Պարսից տէրութենէն, Շապուհ Պարսից Թագաւորը խաւրեց իր Արտաշիր որդին Խոսրովու վրայ, որ եկաւ բռնեց զինքը ու շղթայով կապած Պարսկաստան տարաւ Անյուշ ըսուած բերդը դնելու համար: Խոսրովին հետ տարաւ նաև Գազաւան Կամսարականը՝ վախնալով անոր քաջութենէն, ու իշխանութիւնն ալ տէրութեան գրաւեց: Շաւարշ ու Պարգև Ամատունի 700 կտրիճներով Արտաշիրի բանակին վրայ վազեցին որպէս զի ազատեն Խոսրովը, բայց չկրցան երկաթէ շղթաները փրցընել, և Շաւարշ ու Պարգևայ որդին Մանուէլ, շատ զօրքով ընկան մեռան: Բայց քիչ ատենէն Արտաշիր երբոր հօրը յաջորդեց, Ս. Սահակայ խնդիրքովը նորէն Կամսարականաց և Ամատունեաց երկիրները իրենց դարձուց, բայց իրենց պատիւը նախարարութեանց մէջ շատ վար իջեցուց: Երբոր Արտաշիր մեռաւ, Վռամայ

շատ անգամ կը յիշուի մարդպետը, որ կամ Անձեղտան ցեղէն և կամ ուրիշ Հայկազն հին ցեղերէն կ'ըլլար, որոնք Տիգրանու-հւոյն հետ Տիգրանակերտին կողմերը գա-ցեր էին։

## Դ. Կադմեանք.

162. Կադմեանց ցեղը ուսկի՞ց ելած է։

Կադմեանց ցեղը ելած է Կադմոսէն որ Արմենակին որդին էր, և կը բնակէր, ինչ-պէս որ հաւանական կ'երևի, Մոկաց և Կոր-դուաց երկրին մէջ Ասորեստանի մօտ։ Վասն զի Հայկ երբոր Բելայ քովէն փա-խաւ, հոս նախ իրեն բնակութեան տեղ ու կալուածներ շինեց լերան մը ոտքը, և այս եղաւ իրեն առաջին շէնքը, որ ետքէն Կադ-մոսին ժառանգութիւն թողլով, ինքը ելաւ արևմտեան հիւսիսային կողմը գնաց Հարք գաւառը։

163. Կադմեանց ցեղը ի՞նչ պաշտօն ու-նէր։

Մեր Արամ նահապետը երբոր տիրեց Մարաց ու Ասորեստանի կողմերուն՝ այս-ինքն Պարսկահայոց, Կորդուաց, Մոկաց և ուրիշ Ասորեստանի մասերուն, Հայա-ստանի արևելեան կողմին կուսակալ դրաւ Սիսական և Կադմեան ցեղերը, Կադ-մեան ցեղը արևելեան հարաւային կողմին, այսինքն Ասորեստանի կողմերուն։ Այս երկու Սիսական և Կադմեան ցեղերը ետ-

քէն Վաղարշակ նորէն հաստատեց իրենց կողմնակալութեան պաշտօնին մէջ։

## Ե. Մամիկոնեանք.

164. Մամիկոնեան ցեղը ուսկից ելած է։

Մամիկոնեան ցեղը սկսաւ Մամգունէն որ Չենաց աշխարհին մէջ Թագաւորական ցեղէ երեւելի նախարար էր, որոյ վրայ հոն տեղի Արբոկ Թագաւորը չարախօսութիւն լսելով կ'ուզէր սպաննել։ Մամգուն իմանալով՝ փախաւ տնով տեղով Արտաշիր Պարսից Թագաւորին քով։ Արբոկ խնդրեց զինքը Արտաշրէն, բայց որովհետեւ Արտաշիր մեռեր էր, և իրեն յաջորդեր էր Շապուհ Ա, ասիկա Մամգունը տնով տեղով Հայաստան խրկեց իր գործակալներուն քով, և գրեց Չենաց Թագաւորին թէ Մամգունը իր սահմանէն դուրս աքսորեց մահաբեր երկիր մը։ Այն միջոցին Տրդատ Հայաստան դարձած ըլլալով, սիրով ընդունեցաւ Մամգունը, և իրեն ռոճիկ ու բնակութեան տեղ տուաւ։

165. Մամգունը Հայաստանի մէջ ուր կը բնակէր։

Առջի բերան Մամգուն իր բնակութիւնը մէկ տեղէն մէկայլը կը փոխէր, իրեն սեպհական երկիր մը չունենալով. բայց երբոր Սլկունեաց Սղուկ նահապետը սպաննեց՝ որ ապստամբեր էր Տրդատէն, տիրեց անոր երկրին մինչպէս որ Տրդատ խոստացեր

էր իրեն։ Եւ որովհետև Տարօն Սլկունեաց երկիր էր, Մամգուն իրեն ցեղովը մէկտեղ տէր եղաւ այն երկրին, և իրեն անուամբը կոչեցաւ Տարօն գաւառը նաև Մամգունեան կամ Մամիկոնեան տուն։ Բայց 'ի Տարօնէ՝ Բուզանդ Տաղք նահանգն ալ Մամիկո-նեանց սեպհական երկիր կը դնէ։

166. Մամիկոնեանք ի՞նչ պատիւ և իշ-խանութիւն ունէին։

Սպարապետութիւնը իրենց սեպհական իշխանութիւնն էր, ինչուան Մամիկոնէկան ցեղը կը կոչուէր նաև սպարապետորեան ազգ. վասն զի գրեթէ միշտ այս ցեղէն կ'ըլ-լար սպարապետը։ Միայն Խոսրով Երրոր-դին ատեն եղաւ Սահակ ասպետը։ Բայց Սահակ ասպետին մահուանէն ետև Սուրբն Սահակ խնդրեց Պարսից Արտաշիր Թա-գաւորէն որ իր փեսան Համազասպը, որ Մամիկոնեան ցեղէն էր, սպարապետ ընէ։ Արտաշիր կատարեց Սրբոյն Սահակայ խնդիրը, և Մամիկոնեանց ցեղը նախարա-րութեանց մէջ հինգերորդ կարգը անցուց։ Կ'երևի թէ այս ցեղէն կ'ըլլար Թագաւորին զինակիրը, որ թիկնապահին պաշտօնէն զատ էր։

167. Ուրիշ ի՞նչ պաշտօն ունեցած է Մամիկոնեան ցեղը։

Այս ցեղէն եղաւ Արշակ Երկրորդին սը-նուցիչը կամ դայեակը. բայց այս դայե-կութեան պաշտօնը մասնաւոր ցեղի մը սը-րուած չէր, հապա այլևայլ ցեղերէ կ'ըլ-

լայլին. ինչպէս Սանատրուկին գայեակը Բագրատունեաց և Արծրունեաց ցեղէն էր, Վարազդատինը Սահառունեաց ցեղէն, և այլն։

168. Մամիկոնեան ցեղէն ինչ երևելի մարդիկ ելան։

Մամիկոնեան ցեղը խելքի, իմաստութեան և առաւել քաջութեան կողմանէ շատ անուանի եղաւ սկզբանէ հետէ. անանկ որ գրեթէ առանց այս ցեղին եղբերը քաջութեան գործ մը չէր կատարուեր. Թագաւորին միշտ հաւատարիմ էին, և անոր սիրոյն համար պատերազմի մէջ ամէն վտանգ յանձն կ'առնուին, և իրենց անձը կը նուիրէին. մէկ խօսքով՝ Հայոց ազգին պարծանք եղան։ Շատ անուանի և քաջ զօրավարներ ելան այս ցեղէն Արշակունեաց ատեն, ինչպէս Վաչէ՝ փոքր Խոսրովու ատեն, Մուշեղ՝ Պապ Թագաւորին ժամանակ, Մանուէլ՝ Վարազդատայ ու Բ Արշակայ ատեն, որ մեծամեծ քաջութիւններ ըրաւ Պարսից դէմ։ Նոյնպէս Մարզպանաց ատեն անուանի եղան մեծն Վարդան, Վահան՝ որ Պարսից վարչը Թագաւորին ատեն մարզպան եղաւ. Վարդան Բ, Համազասպ, և Գրիգոր մամիկոնեան, որոնք Հայաստանի հրամանատար եղան։

169. Ո՞րչափ ատեն տևեց Մամիկոնեանց ցեղին իշխանութիւնը։

Այս ցեղին իշխանութիւնը տևեց սկսեալ Տրդատայ ժամանակէն մինչև Թ դարը.

և վերջին նախարարն եղաւ Բուղայի ատեն Գրիգոր Մամիկոնեան։ Իսկ ցեղը ինչուան ԺԳ դար և անկէց ետքն ալ կը յիշուի։

170. Ո՞րն է Մամիկոնեանց ցեղին գըլխաւոր քաղաքը, և ո՞ւր իրենց գերեզմանատեղին։

Մամիկոնեանց գլխաւոր քաղաքը Ողական բերդն էր, և իրենց գերեզմանատեղին Գլակայ վանքը։

## Ջ. Կամսարականք*։

171. Կամսարականաց ցեղը ուսկից եղած է։

Կամսարականաց ցեղը, որ կը կոչուի նաև Արշարունիք կամ Պահլաւունիք, Պարթևաց ազգէն էր. վասն զի Աբգար երբոր Պարսկաստան գնաց՝ Պարսից Թագաւորին աթոռը խաղաղելու, որ յաջորդութեան համար կը կռուէին, օրէնք դրաւ որ Արտաշէս անդրանիկը որդւոց որդի Թագաւորէ, և թէ որ իրեն ցեղը հատնի՝ մէկալ երկու եղբարց ցեղերուն անցնի, որոց մէ-

* [illegible] Նախարարութեանց կարգը կը [illegible] Ամատունիք և Ռշտու- [illegible] Կամսարական. [illegible] որոնք թէպէտ և [illegible] թիւններն ալ. [illegible] որդւոց որդի պաշտօն մը չու- [illegible] ցեղեր ըստ պաշտօնէն՝ իրենք ալ [illegible] մէջ երեւելի պաշտօն. [illegible] թեան [illegible] են։

կուն անունն էր Կարէն, մէկալինը Սու-րէն. և որոշեց որ ասոնց ցեղերը տէրու-թեան մէջ ամէն նախարարներէն վեր սե-պուհին, և կոչեց իրենց ցեղը Կարենի Պահ-լաւ, Սուրենի Պահլաւ. Սուրենեան Պահ-լաւէն եղաւ Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ, իսկ Կարենեան Պահլաւէն Կամսարակա-նաց ցեղը։

172. Ե՞րբ սկսաւ Կամսարականաց ցեղը։

Կարնեան կամ Կարենեան Պահլաւին ցե-ղը ուզելով Պարսկաստանէն Հայաստան փախչիլ մեր մեծին Խոսրովու թագաւորին քովը, Արտաշիր Սասանեան Պարսից թա-գաւորը զօրքով վրան եղաւ, ու ճամբան վրայ հասնելով բոլոր նոյն ցեղին արու մարդիկը ու տղաքը թրէ անցընել տուաւ, միայն Բուրզ անունով մէկը, որ Կարե-նեան Պահլաւին տանը շատ բարեկամ էր, նոյն ցեղէն տղայ մը առաւ ու փախաւ Քուշանաց երկիրը, որ անունը Պերոզամատ կոչեցաւ։ Այս Պերոզամատը եղաւ Կամ-սարականաց ցեղին սկիզբը։

173. Կամսարականաց ցեղը երբ Հայա-ստան եկաւ։

Կամսար Պերոզամատին առաջին որդին Տրդատայ ատեն բոլոր ընտանիքովը Հա-յաստան եկաւ, որ հօրը կենդանութեան ժամանակ թշնամեաց դէմ պատերազմե-լու ատեն շատ քաջութիւններ ընելով յան-կարծ թշնամւոյն կողմէն մէկը սակրով ա-նոր գլխուն ոսկրին կէսը կտրեց ու թըռ-

ցուց։ Թէպէտ և ետքէն դեղով բժշկուեցաւ վէրքը, բայց գագաթը ամբողջ չըլլալուն համար՝ Կամսար կոչուեցաւ, որ է ըսել կես գլուխ։

174. Կամսար երբոր Հայաստան եկաւ՝ Տրդատ ո՞ւր բնակեցուց զինքը։

Տրդատ Կամսարը սիրով ընդունեցաւ իր ցեղէն ըլլալուն համար, և Դրասխանակերտ մեծ աւանն ու Շիրակ գաւառը անոր տըւաւ։ Բայց քիչ ատենէն Կամսար մեռնելով Տրդատ անոր Արշաւիր որդին իր տեղը դրաւ, և իրեն ցեղը նախարարութեանց կարգն անցընելով, Երուանդաշատ քաղաքն ալ պարգև տուաւ՝ Երասխաձոր գաւառովը մէկտեղ որ կ'ըյնի Արարատ նահանգին մէջ։ Արշաւիր Երասխաձոր գաւառը իր անունովը Արշարունիք կոչեց, և անկէց ցեղն ըսուեցաւ նաև Արշարունի։

175. Ե՞րբ ջնջուեցաւ Կամսարականաց կամ Արշարունեաց ցեղը։

Արշակ Բ ուզելով անոնց ձեռքէն Արտագերս բերդը և Երուանդաշատ քաղաքն առնուլ՝ հրաման տուաւ որ Թրէ անցընեն Արշարունեաց ցեղը։ Այս կոտորածէն խալըսեցաւ միայն Սպանդարատ Արշաւիրի որդին իրեն Շաւարշ և Գազաւոն տղոցմով մէկտեղ, և տնով տեղով Յունաց [illegible] ապաւինեցաւ։

176. Կամսարականք ե՞րբ նորէն հաստատուեցան։

Պապայ Թագաւորութիւնը հաստատելու

համար Ձիրաւ դաշտին Պարսից դէմ տրուած պատերազմին մէջ Սպանդարատ շատ քաջութիւններ ընելով և Լեկաց Թագաւորը սպաննելով, իր հաւատարմութեանը փոխարէն՝ Պապ նորէն դարձուց ինչ որ իր հայրը Արշակ Բ յափշտակեր էր Կամսարականաց ցեղէն, այսինքն Շիրակ գաւառը ու Արշարունեաց երկիրը։

177. Ի՞նչ գիտելիք կայ Գազաւոն ու Շաւարշ Կամսարականին վրայ։

Երբոր մեր Խոսրով Գ. Թագաւորը ապըստամբեցաւ Պարսից տէրութենէն, Շապուհ Պարսից Թագաւորը խաւրեց իր Արտաշիր որդին Խոսրովու վրայ, որ եկաւ բռնեց զինքը ու շղթայով կապած Պարսկաստան տարաւ Անյուշ ըսուած բերդը դնելու համար։ Խոսրովին հետ տարաւ նաև Գազաւոն Կամսարականը՝ վախնալով անոր քաջութենէն, ու իշխանութիւնն ալ տէրութեան գրաւեց։ Շաւարշ ու Պարգև Ամատունի 700 կտրիճներով Արտաշրի բանակին վրայ վազեցին որպէս զի ազատեն Խոսրովը, բայց չկրցան երկաթէ շղթաները փրցընել, և Շաւարշ ու Պարգևայ որդին Մանուէլ, շատ զօրքով ընկան մեռան։ Բայց քիչ ատենէն Արտաշիր երբոր հօրը յաջորդեց, Ս. Սահակայ խնդիրքովը նորէն Կամսարականաց և Ամատունեաց երկիրները իրենց դարձուց, բայց իրենց պատիւը նախարարութեանց մէջ շատ վար իջեցուց։ Երբոր Արտաշիր մեռաւ, Վռամայ

ատեն Ս. Սահակ նորէն աղաչեց որ այս երկու ցեղերը նորէն իրենց առջի պատուոյն հասցընէ. և Վռամ կատարեց իրեն խընդիրքը։

178. Այս մեծ ու պատուաւոր ցեղէն ի՞նչ երևելի մարդիկ եղան։

Թէ կառավարութեան և թէ քաջութեան կողմանէ շատ համբաւաւոր նախարարներ ունեցաւ, ինչպէս են Արշաւիր, Սպանդարատ, Գազաւոն, և այլն։ Կամսարականաց ցեղը պատերազմներու մէջ Մամիկոնեանց երկրորդն էր, և թէպէտ ընդհանուր սպարապետութեան պաշտօնը Մամիկոնեան ցեղին էր, բայց իրենցմէ առանձին գունդերու զօրապետ ըլլալով մեծամեծ յաղթութիւններ ըրած են թշնամեաց դէմ։ Արշակունեաց տէրութիւնը վերցուելէն ետև ալ Մամիկոնեան ու Կամսարական ցեղերն էին որ իբրև հրամանատար կը կառավարէին զՀայաստանը։

Վարդանանց ժամանակն ալ Արշաւիր խոստովանող նախարարը թէ Պարսից և թէ Հայոց առջև մեծ ազդեցութիւններ իր իմաստուն քաջութեամբը։ Նոյնպէս անուանի եղան Հրահատ ու Ներսէհ իր որդիքն ալ որ մեծամեծ կտրճութիւններ ըրին մեծին Վահանայ հետ։

## Է. Ամատունիք.

179. Ամատունեաց ցեղը ուսկից ելած է։ Ամատունեաց նախահայրն է Մանուէ կամ Մանովէ անունով Հրեայ մը, զոր մեծն Արշակ Պարթեւը Արեաց աշխարհը տարաւ ու բնակեցուց Համատանի քովերը, ուր բազմանալով իշխանութեան և պատուոյ հասան։ Այս Մանովէին ցեղը մեր Արտաշէս Բ՛ին ատեն Հայաստան եկաւ, բայց թէ ինչ պատճառաւ՝ յայտնի չգիտցուիր, որոց Արտաշէս բնակութեան տեղ տուաւ, և պարսիկ բառով կոչեցան Ամատունիք, այսինքն օտարականք կամ եկք. Որոնք Պարսիկները Մանուէանք կը կոչէին իրենց Մանուէ նախահայրին անունովը։

180. Ո՞ւր է Ամատունեաց ցեղին երկիրը։

Այրարատայ Արագածոտն գաւառին մէջ, որ մեծ նախարարութեանց մէկն էր. բայց երբոր Պարգև Ամատունի նախարարը տիրասիրութեան ոգւով վառուած միաբանեցաւ Շաւարշ կամսարականին հետ, որպէս զի Խոսրով Գ-ը գերութեան շղթաներէն ազատէ, բռնուեցաւ. Արտաշիր ողջ ողջ մորթել տուաւ զինքը, ու մորթը տիկի պէս ուռեցընել հրամայելով՝ Խոսրովին առջևը դնել տուաւ, որով և Ամատունեաց երկիրն ալ յարքունիս գրաւեց։

181. Ամատունիք երբ նորէն իրենց երկրին տիրեցին։

Պարսից Արտաշիր Թագաւորը քիչ ատենէն Ս. Սահակայ աղաչանքովը Ամատունեաց երկիրը նորէն իրենց դարձուց, սակայն պզտի նախարարութեանց կարգը անցուց։ Բայց Վռամ Թագաւորին ատեն նորէն իրենց առջի պատուոյն հասան սրբոյն Սահակայ խնդրուածքովը ինչպէս Կամսարականաց ալ ըրեր էր։

182. Ամատունեաց ցեղէն որո՞նք երեւելի եղան։

Ամատունիք գլխաւոր և անուանի նախարարութիւններէն մէկն էին, ուսկից երեւելի եղաւ Վահան Ամատունին փոքր Խոսրովու ատենն, որ Կովկասային ազգաց դէմ Օշական գեղին քով մեծամեծ յաղթութիւններ ըրաւ, անոր համար Խոսրով այս գեղը իրեն տուաւ, ու ետքը բոլոր տէրութեան հազարապետ, այս ինքն հոգաբարձու ըրաւ զինքը։ Իրմէ առաջ երեւելի է նաև Օտա նախարարը որ Մեծին Խոսրովու Թագաւորական գանձը Արտաշիր Սասանեանին ձեռքէն քաջութեամբ պահպանեց ու Տրդատայ քոյրը զԽոսրովիդուխտը դաստիարակեց, Տրդատ ալ զինքը տէրութեան հազարապետ դրաւ։

## Ը. Ռշտունիք.

183. Ո՞վ հաստատեց Ռշտունեաց նախարարութիւնը։

Ռշտունեաց կամ Ըռշտունեաց նախարարութիւնը Վաղարշակ դրաւ, որոնք Սիսական ցեղէն զաղթական եկած են Ռաշամ անունով իշխանէ մը, որով և նախարարութիւնն ալ Ռշտունիք կոչեցաւ, իրենց երկիրը Վասպուրականի մէջ Բզնունեաց ծովուն մօտ կ'ըլլնի, որ առջի բերան Արծրունեաց նախարարութենէն զատ էր; բայց ետքը անոր հետ միացաւ։

184. Ռշտունեաց ցեղէն ո՞րոնք երևելի եղան։

Ռշտունեաց ցեղէն՝ որ մեր ազգին երևելի նախարարութիւններէն մէկն էր, անուանի եղաւ Բարզափրան անունով մէկը որ Տիգրան Երկրորդին ատեն սպարապետ ըլլալով, պատերազմով Հրէաստանի վրայ գնաց, ու Հրէից Հիւրկանոս քահանայապետը ուրիշ շատ գերիներով Հայաստան բերաւ, և հոն Անտիգոնոսը քահանայապետ դրաւ։ Նոյնպէս նաև մեծ անուն հանեցին Մանաճիհր Խոսրով Բին, և Զօրայ Տիրան Բին ատեններն, Հայաստանի հարաւային կողմի զօրքին սպարապետ եղան։ Գարձեալ է գարուն մէջ անուանի եղաւ Թէոդորոս Ռշտունին որ Թէ զօրա-

և վերջին Նախարարն եղաւ Բուղայի ատեն Գրիգոր Մամիկոնեան։ Իսկ ցեղը ինչուան ԺԳ դար և անկէց ետքն ալ կը յիշուի։

170։ Ո՞րն է Մամիկոնեանց ցեղին գլխաւոր քաղաքը, և ո՞ւր իրենց գերեզմանատեղին։

Մամիկոնեանց գլխաւոր քաղաքը Ողական բերդն էր, և իրենց գերեզմանատեղին Գլակայ վանքը։

## Զ. Կամսարականք*.

171. Կամսարականաց ցեղը ուսկից եկած է։

Կամսարականաց ցեղը, որ կը կոչուի նաև Արշարունիք կամ Պահլաւունիք, Պարթևաց ազգէն էր. վասն զի Աբգար երբոր Պարսկաստան գնաց՝ Պարսից թագաւորին աղաքը խաղաղելու, որ յաջորդութեան համար կը կռուէին, օրէնք դրաւ որ Արտաշէս անդրանիկը որդւոց որդի թագաւորէ, և թէ որ իրենց ցեղը հատնի՝ մէկալ երկու եղբարց ցեղերուն անցնի, որոց մէ-

* Պաշտօնական նախարարութեանց կարգը կը դնենք նաև Կամսարական. Ամատունիք և Ռշտունիք նախարարութիւններն ալ, որոնք թէպէտ և տէրութեան մէջ որդւոց որդի պաշտօն մը չունէին, բայց երևելի ցեղեր ըլլալնուն՝ իրենք ալ շատ անգամ տէրութեան մէջ երևելի պաշտօններու հասած են։

կուն անունն էր Կարէն, մէկալինը Սուրէն. և որոշեց որ ասոնց ցեղերը տէրութեան մէջ ամէն նախարարներէն վեր սեպուին, և կոչեց իրենց ցեղը Կարենի Պահլաւ, Սուրենի Պահլաւ. Սուրենեան Պահլաւէն ելաւ Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ, իսկ Կարենեան Պահլաւէն Կամսարականաց ցեղը։

172. Ե՞րբ սկսաւ Կամսարականաց ցեղը։

Կարնեան կամ Կարենեան Պահլաւին ցեղը ուզելով Պարսկաստանէն Հայաստան փախչիլ մեր մեծին Խոսրովու Թագաւորին քովը, Արտաշիր Սասանեան Պարսից Թագաւորը զօրքով վրան ելաւ, ու ճամբան վրայ հասնելով բոլոր նոյն ցեղին արու մարդիկը ու տղաքը Թրէ անցընել տուաւ. միայն Բուրգ անունով մէկը, որ Կարենեան Պահլաւին տանը շատ բարեկամ էր, նոյն ցեղէն տղայ մը առաւ ու փախաւ Քուշանաց երկիրը, որ ետքը Պերոզամատ կոչեցաւ։ Այս Պերոզամատը եղաւ Կամսարականաց ցեղին սկիզբը։

173. Կամսարականաց ցեղը ե՞րբ Հայաստան եկաւ։

Կամսար Պերոզամատին առաջին որդին Տրդատայ ատեն բոլոր ընտանիքովն Հայաստան եկաւ, որ հօրը կենդանութեան ժամանակ Թշնամեաց դէմ պատերազմելու ատեն շատ քաջութիւններ ընելով յանկարծ Թշնամւոյն կողմէն մէկը սակրով անոր գլխուն ոսկրին կէսը կտրեց ու Թըռ-

ցուց ։ Թէպէտ և ետքէն դեղով բժշկուեցաւ վէրքը, բայց գագաթը ամբողջ չըլլալուն համար՝ Կամսար կոչուեցաւ, որ է ըսել կէս գլուխ ։

174. Կամսար երբոր Հայաստան եկաւ՝ Տրդատ ո՞ւր բնակեցուց զինքը ։

Տրդատ Կամսարը սիրով ընդունեցաւ իր ցեղէն ըլլալուն համար, և Դրասխանակերտ մեծ աւանն ու Շիրակ գաւառը անոր տը-ւաւ ։ Բայց քիչ ատենէն Կամսար մեռնելով Տրդատ անոր Արշաւիր որդին իր տեղը դրաւ, և իրեն ցեղը Նախարարութեանց կարգն անցընելով, Երուանդաշատ քաղաքն ալ պարգև տուաւ՝ Երասխաձոր գաւառովը մէկտեղ որ կ՚իյնի Արարատ նահանգին մէջ ։ Արշաւիր Երասխաձոր գաւառը իր անունովն Արշարունիք կոչեց, և անկէց ցեղն ըսուեցաւ նաև Արշարունի ։

175. Ե՞րբ ջնջուեցաւ Կամսարականաց կամ Արշարունեաց ցեղը ։

Արշակ Բ ուզելով անոնց ձեռքէն Արտագերս բերդը և Երուանդաշատ քաղաքն առնուլ՝ հրաման տուաւ որ թրէ անցընեն Արշարունեաց ցեղը ։ Այս կոտորածէն խալըսեցաւ միայն Սպանդարատ Արշաւիրի որդին իրեն Շաւարշ և Գազաւոն տղոցմով մէկտեղ, և տնով տեղով Յունաց բաժինն ապաւինեցաւ ։

176. Կամսարականք երբ նորէն հաստատուեցան ։

Պապայ Թագաւորութիւնը հաստատելու

համար Զիրաւ դաշտին Պարսից դէմ տրուած պատերազմին մէջ Սպանդարատ շատ քաջութիւններ ընելով և Ղեկայց Թագաւորը սպաննելով, իր հաւատարմութեանը փոխարէն՝ Պաղ Նորէն դարձուց ինչ որ իր հայրը Արշակ Բ յափշտակեր էր Կամսարականաց ցեղէն, այսինքն Շիրակ գաւառը ու Արշարունեաց երկիրը:

177. Ի՞նչ գիտելիք կայ Գազաւան ու Շաւարշ Կամսարականին վրայ:

Երբոր մեր Խոսրով Գ Թագաւորը ապըստամբեցաւ Պարսից տէրութենէն, Շապուհ Պարսից Թագաւորը խաւրեց իր Արտաշիր որդին Խոսրովու վրայ, որ եկաւ բունեց զինքը ու շղթայով կապած Պարսկաստան տարաւ Անյուշ ըսուած բերդը դնելու համար: Խոսրովին հետ տարաւ նաև Գազաւան Կամսարականը՝ վախնալով անոր քաջութենէն, ու իշխանութիւնն ալ տէրութեան գրաւեց: Շաւարշ ու Պարգև Ամատունի 700 կտրիճներով Արտաշրի բանակին վրայ վազեցին որպէս զի ազատեն Խոսրովը, բայց չկրցան երկաթէ շղթաները փրցընել, և Շաւարշ ու Պարգևայ որդին Մանուէլ, շատ զօրքով ընկան մեռան: Բայց քիչ ատենէն Արտաշիր երբոր հօրը յաջորդեց, Ս. Սահակայ խնդիրքովը նորէն Կամսարականաց և Ամատունեաց երկիրները իրենց դարձուց, բայց իրենց պատիւը նախարարութեանց մէջ շատ վար իջեցուց: Երբոր Արտաշիր մեռաւ, Վռամայ

տան Ս. Սահակ նորէն աղաչեց որ այս երկու ցեղերը նոյն իրենց առջի պատուոյն հասցընէ. և Վռամ կատարեց իրեն խընդիրքը։

178. Այս մեծ ու պատուաւոր ցեղէն ինչ երևելի մարդիկ եղան։

Թէ կառավարութեան և թէ քաջութեան կողմանէ շատ համբաւաւոր նախարարներ ունեցաւ, ինչպէս են Արշաւիր, Սպանդարատ, Գազաւոն, և այլն։ Կամսարականաց ցեղը պատերազմներու մէջ Մամիկոնեանց երկրորդն էր, և թէպէտ ընդհանուր սպարապետութեան պաշտօնը Մամիկոնեան ցեղին էր, բայց իրենցմէ առանձին գունդերու զօրապետ ըլլալով մեծամեծ յաղթութիւններ ըրած են թշնամեաց դէմ։ Արշակունեաց տէրութիւնը վերցուելէն ետև ալ Մամիկոնեան ու Կամսարական ցեղերն էին որ երբև հրամանատար կը կառավարէին զՀայաստանը։

Վարդանանց ժամանակն ալ Արշաւիր խոստովանող նախարարը թէ Պարսից և թէ Հայոց առջև մեծ ազդեցութիւններ իր իմաստուն քաջութեամբը։ Նոյնպէս անուանի եղան Հրահատ ու Ներսէհ իր որդիքն ալ որ մեծամեծ կտրճութիւններ ըրին մեծին Վահանայ հետ։

## Է. Ամատունիք.

179. Ամատունեաց ցեղը ուսկի՞ց եկած է։

Ամատունեաց նախահայրն է Մանուէ կամ Մանովէ անունով Հրեայ մը, զոր մեծն Արշակ Պարթեւը Արեաց աշխարհը տարաւ ու բնակեցուց Համատանի քովերը, ուր բազմանալով իշխանութեան և պատուոյ հասան։ Այս Մանովէին ցեղը մեր Արտաշէս Բ.ին ատեն Հայաստան եկաւ, բայց թէ ի՛նչ պատճառաւ՝ յայտնի չգիտցուիր, որոց Արտաշէս բնակութեան տեղ տուաւ, և պարսիկ բառով կոչեցան Ամատունիք, այսինքն օտարականք կամ եկք. Որոնք Պարսիկները Մանուեանք կը կոչէին իրենց Մանուէ նահապետին անունովը։

180. Ո՞ւր է Ամատունեաց ցեղին երկիրը։

Այրարատայ Արագածոտն գաւառին մէջ, որ մեծ նախարարութեանց մէկն էր. բայց երբոր Պարգև Ամատունի նախարարը տիրասիրութեան ոգւով վառուած միաբանեցաւ Շաւարշ կամսարականին հետ, որպէս զի Խոսրով Գ.ը գերութեան շղթաներէն ազատէ, բռնուեցաւ. Արտաշիր ողջ ողջ մորթել տուաւ զինքը, ու մորթը տիկի պէս ուռեցընել հրամայելով Խոսրովին առջևը դնել տուաւ, որով և Ամատունեաց երկիրն ալ յարքունիս գրաւեց։

181. Ամատունիք երբ նորէն իրենց երկրին տիրեցին։

Պարսից Արտաշիրի թագաւորը քիչ ատենէն Ս. Սահակայ աղաչանքովը Ամատունեաց երկիրը նորէն իրենց դարձուց, սակայն պզտի նախարարութեանց կարգը անցուց։ Բայց Վռամ թագաւորին ատեն նորէն իրենց առջի պատուոյն հասան որբոյն Սահակայ խնդրուածքովը ինչպէս Կամսարականաց ալ ըրեր էր։

182. Ամատունեաց ցեղէն որո՞նք երևելի եղան։

Ամատունիք գլխաւոր և անուանի նախարարութիւններէն մէկն էին, ուսկից երևելի եղաւ Վահան Ամատունին փոքր Խոսրովու ատեն, որ Կովկասային ազգաց դէմ Օշական գեղին քով մեծամեծ յաղթութիւններ ըրաւ, անոր համար Խոսրով այս գեղը իրեն տուաւ, ու ետքը բոլոր տէրութեան հազարապետ, այս ինքն հոգաբարձու ըրաւ զինքը։ Իրմէ առաջ երևելի է նաև Օտա նախարարը որ Մեծին Խոսրովու թագաւորական գանձը Արտաշիր Սասանեանին ձեռքէն քաջութեամբ պահպանեց ու Տրդատայ քոյրը զԽոսրովիդուխտը դաստիարակեց, Տրդատ ալ զինքը տէրութեան հազարապետ ըրաւ։

## Ը. Ռշտունիք.

183. Ո՞վ հաստատեց Ռշտունեաց նախարարութիւնը։

Ռշտունեաց կամ Ըռշտունեաց նախարարութիւնը Վաղարշակ դրաւ, որոնք Սիսական ցեղէն գաղթական եկած են Ռաշամ անունով իշխանէ մը, որով և նախարարութիւնն ալ Ռշտունիք կոչեցաւ, իրենց երկիրը Վասպուրականի մէջ Բզնունեաց ծովուն մօտ կ'ըյնի, որ առջի բերան Արծրունեաց նախարարութենէն զատ էր; բայց ետքը անոր հետ միացաւ։

184. Ռշտունեաց ցեղէն ո՞րոնք երևելի եղան։

Ռշտունեաց ցեղէն՝ որ մեր ազգին երևելի նախարարութիւններէն մէկն էր, անուանի եղաւ Բարզափրան անունով մէկը որ Տիգրան Երկրորդին ատեն սպարապետ ըլլալով, պատերազմով Հրէաստանի վրայ գնաց, ու Հրէից Հիւրկանոս քահանայապետը ուրիշ շատ գերիներով Հայաստան բերաւ, և հոն Անտիգոնոսը քահանայապետ դրաւ։ Նոյնպէս նաև մեծ անուն հանեցին Մանաճիհր Խոսրով Բին, և Զօրայ՝ Տիրան Բին ատենները, որ Հայաստանի հարաւային կողմի զօրքին սպարապետ եղան։ Դարձեալ Է դարուն մէջ անուանի եղաւ Թէոդորոս Ռշտունին որ Թէ զօրա-

վար և թէ հրամանատար էր Հայոց ազգին վրայ Արտաքացւոց ատեն ։

185 . Ե՞րբ ջնջուեցաւ Ռշտունեաց ցեղը ։

Երբոր Յուլիանոս կայսրը Պարսից վրայ պատերազմի կ'երթար , Տիրան իր Զօրայ Ռշտունի զօրավարը զօրքով անոր օգնութիւն խաւրեց . բայց Զօրայ չուզելով ուրացեալ մարդու օգնել , առանց Տիրանայ հրամանին գնաց ամրացաւ Տմօրեաց երկիրը ։ Այս բանս երբոր լսեց Յուլիանոս կատղեցաւ , ու թուղթ գրեց Հայոց թագաւորին հրամայելով որ ազգովին ջնջէ Զօրայի ցեղը ։ Տիրան վախնալով Յուլիանոսէն , Հայր մարդպետին ձեռքովը , որ շատ քսութիւններ ըրեր էր Զօրայի վրայ , կանչել տուաւ երդմունքով , ու զինքը բոլոր իր ցեղովը մէկտեղ ջնջել տուաւ . միայն Զօրայի եղբօրը Մեհենդակին Տաճատ որդին խալըսեցաւ , ուսկից նորէն սկսաւ և բազմացաւ Ռշտունեաց ցեղը ։

## Թ . Խոռխոռունիք և Մաղխազունիք .

186 . Խոռխոռունեաց ցեղը ուսկի՞ց ելած է ։

Խոռ նահապետէն որ Արմենակայ եղբայրն էր ու Հայկայ որդին ։ Խոռխոռունեաց ցեղը բոլոր քաջ և զօրաւոր մարդիկ էին , որոց բնակութեան տեղն էր Տուրուբերանի Խոռխոռունիք գաւառը , որ իրենց անունովը կոչուած է ։ Վաղարշակ Խոռ-

խոռոռնեաց կարին նախարարութենէն ի֊րեն թիկնապահներ ըրաւ, որոց գլուխ դրաւ նոյն ցեղէն Մաղխազ անունով մէ֊կը, և ցեղին անունը չփոխեց. բայց նոյն ցեղը Մաղխազին անունովը ըսուեցաւ նաև Մաղխազունիք, որ երբեմն Խոռխոռունեաց ցեղէն զատ իբրև նոր ցեղ մ'ալ յիշուած է։ Վաղարշակ Մաղխազունեաց նոր եր֊կիր չտուաւ, հապա նոյն Խոռխոռունեաց երկիրն էր։

187. Մաղխազ անուան վրայ ինչ գի֊տելիք կան։

Մեր մատենագիրները Մաղխազ անունը շատ անգամ թիկնապահ բառին տեղ կը գործածեն, և կու տան այս անունը Թագա֊ւորին թիկնապահներուն գլխաւորին, և թիկնապահութեան պաշտօնն ալ կ'անուա֊նեն Մաղխազութիւն. զոր օրինակ կ'ըսեն Վրիւ մաղխազ, Գարջոյլ մաղխազ, փոխա֊նակ ըսելու Վրիւ թիկնապահ. Գարջոյլ թիկնապահ։ Այս Գարջոյլ Մաղխազը որ Խոռխոռունեաց նահապետն էր, փոքր Խոսրով արևելեան կողմին զօրագլուխ ըր֊րաւ, Վրաց Թագաւորին Միհրանայ մա֊հուանէն ետքը։ Նոյն Գարջոյլ Մաղխազը Բուզանդ ուրիշ տեղ կ'անուանէ նաև Գար֊ջոյլ Խոռխոռունի. որով յայտնի կը ցուցուի թէ Խոռխոռունիք և Մաղխազունիք մի և նոյն ցեղ են, և Մաղխազունիք անունը պաշտօնէն առնուած է։

## Ժ. Վահեւունիք.

188. Վահեւունիք կամ Վահնունիք ցեղը ուսկից եկած է։

Վահնունիք կամ Վահեւունիք ցեղը ելած է Վահագնէ որ մեծին Տիգրանայ որդին էր։ Վաղարշակ այս ցեղը պատուաւոր նախարարութեանց կարգն անցուց, և քրմութեան պաշտօնը իրենց տուաւ, ինչպէս որ խնդրեր էին։

189. Ո՞ւր էր Վահեւունեաց ցեղին բնակութիւնը։

Կ'երեւի թէ Վահեւունիք սեպհական երկիր մը չունէին, հապա քրմութեան ու քրմապետութեան պաշտօնը ունենալուն, ասդին անդին այլեւայլ քաղաքներու մէջ ցրուած կը բնակէին, որոցմէ գլխաւորն էր Տարօնոյ Աշտիշատ քաղաքը, որ իրենց սեպհական եղած էր, ու մեհեաններով զարդարած։

190. Վահեւունիք ինչուան ետքը իրենց պաշտօնին մէջ հաստատ մնացի՞ն։

Չէ, վասն զի Արտաշէս երբոր Փոքր Ասիայէն բերել տուաւ Հայաստան Արտեմիսեայ և Ապողոնի ոսկեզօծ պղնձէ արձանները, ու հրամեց որ Արմաւիր քաղաքին մէջ գրուին, Վահեւունեաց ցեղին քրմապետները կարծելով թէ Հերակլեայ արձանը իրենց բուն նախահօրը Վահագնի արձանն է, Արտաշէսին մահուանէն ետև

տարին իրենց Աշտիշատ գեղին մէջ կանգնեցին։ Այս բանիս վրայ նեղանալով Տիգրան Բ'որ Արտաշէսի յաջորդեց, ձգեց զիրենք քրմութեան պաշտօնէն, ու իրենց Աշտիշատ գեղն ալ տէրութեան սեպհականեց։ Անկէց ետքը ամենևին յիշատակութիւն չկայ այս ցեղին պաշտօնին վրայ թէ որո՞ւ անցաւ. կամ թէ նորէն իրենց դարձաւ թէ ոչ, յայտնի չգիտցուիր։

## ԺԱ. Վարաժնունիք.

191. Ե՞րբ սկսաւ Վարաժնունեաց ցեղը։

Այս ցեղին սկզբնաւորութիւնը Գեղամայ պզտիկ որդւոյն Գառնիկէն է, որուն Գառ որդին Վաղարշակ Թագաւորական որսերու վերակացու դրաւ։ Այս Գառին որդին Վարաժ կամ Վարժ որ խիստ յաջող էր որսի մէջ և նետ նետելու խիստ վարպետ, մեծն Արտաշէս իրեն որսապետ ըրաւ, և Այրարատ նահանգին մէջ զատ երկիր տուաւ անոր Հրազդան գետոյն քով, որ իր անունովը կոչեցաւ Վարաժնունիք, և իրմէ սկսաւ վարաժնունեաց ցեղը, որուն իշխանութիւնը ինչուան ԺԱ դար կը յիշուի։

192. Վարաժնունիք գաւառին վրայ ինչ գիտելիք կան։

Կան Տուրուբերանի և Վասպուրականի մէջ վարաժնունիք անունով այլեայլ գաւառներ, բայց յայտնի չգիտցուիր թէ նոյն Այ-

բարատայ մէջ եղած վարաժնունեաց ցեղէն էին, թէ տարբեր ցեղ ։ Վասն զի Թովմա Արծրունիին խօսքէն կ՚երևի թէ վասպուրականի մէջ եղած վարաժնունի գաւառին բնակիչքը Արծրունեաց ցեղէն էին, ուսկից Բռստոմ անունով մէկը Վասպուրականի տանուտէր եղաւ ։

## ԺԲ. Ոլկոնիք.

193. Ոլկունեաց կամ Ողկունեաց ցեղը ուսկի՞ց ելած է ։

Այս ցեղը ելած է Ոլաքէն, զոր Վաղարշակ որսոց վերակացու դրաւ, վայրի այծեր որսալու համար, ու Նախարարութեանց կարգն անցուց։ Ոլաքին ցեղը խիստ հին է, և թերևս Հայկէն առաջ, ինչպէս Խորենացին կը յիշէ. Տրդատայ ատեն գրեթէ բոլորովին ջնջեցան Ոլկոնիք բաց 'ի մէկ քանի հոգիէն, իրենց Ողուկ նահապետին ապստամբութեանը պատճառաւ, որ Տրդատէն գլուխ քաշելով միաբաներ էր Պարսից Շապուհ թագաւորին հետ, ու Խոսրովիդխտոյ դայեակը Օտա Նախարարը սպաններ էր ։ Ոլկունեաց ցեղին երկիրն էր Տարօն գաւառը, զոր ետքը Մամիկոնեանք ժառանգեցին (§. 165) ։

## ԺԳ. Մանդակունիք.

194. Ե՞րբ սկսաւ Մանդակունեաց ցեղը։ Վաղարշակ Ձլաքին պաշտօնը տուաւ նաև Միրանդակ անունով մէկուն, ուսկից եղաւ Մանդակունեաց ցեղը։ Այս ցեղէն էր Արտաւազդ Մանդակունի որ զՏրդատը Պարսից Արտաշիր Թագաւորին կոտորածէն ազատելով, փախուց Յունաց սահմանը։

195. Ե՞րբ ջնջեցաւ Մանդակունեաց ցեղը։

Արտաշիր երբոր լսեց Արտաւազդ Մանդակունւոյն ըրածը, բարկանալով հրաման տուաւ որ բոլոր Մանդակունեաց ցեղը թրէ անցընեն։ Այս կոտորածէն միայն կոյս աղջիկ մը ազատեցաւ Արտաւազդայ քոյրերէն, զոր Աշոցան ցեղէն Տաճատ անունով մէկը փախուց Կեսարիա, և անոր հետ կարգուելով, անկէց նորէն բազմացաւ այս ցեղը։ Տրդատ երբոր թագաւորեց՝ Արտաւազդայ ըրածին փոխարէն՝ զինքը բոլոր զօրաց վրայ սպարապետ դրաւ։ Բայց ըսպարապետութեան պաշտօնը այս ցեղէն միայն Արտաւազդ ունեցաւ։

Մանդակունեաց բնակութեան տեղը կ'երեւի թէ Հարք ու Տարօն գաւառներուն կողմերն էր։

## ԺԳ. Հաւնեանք.

196. Հաւնունիք կամ Հաւննունիք նախարարութիւնը ե՞րբ սկսաւ։

Այս ցեղը հին ցեղ էր և Վաղարշակ նախարարութեանց կարգն անցուց, և կոչեց Հաւնեանք կամ Հաւննեանք, և ըրաւ զիրենք Բազէակիր և Բազէակալ, և կը կարծուի թէ երբոր Թագաւորը որսի կ'երթար, դիմացէն բազէ կը տանէին։ Խորենացին աշխարհագրութեանը մէջ Հաւունիք անունով գաւառ մը կը յիշէ Այրարատայ մէջ, որ կ'երևի թէ այս ցեղին բնակութեան տեղն էր, թէպէտ և Խորենացւոյն աշխարհագրութեան ուրիշ օրինակներուն մէջ այս գաւառին անունը Վանանդեանք կամ Վանացիանք ալ գրուած կայ։

## ԺԴ. Գնթունիք.

197. Գնթունեաց ցեղը ուսկի՞ց ելած է։

Երբոր Յեսու Աստուծոյ հրամանաւը Քանանացիները Աւետեաց երկրէն կը ջնջէր, Քանանիդաս անունով երևելի իշխանին մէկը նոյն Քանանու ցեղէն Հայաստան փախաւ մեր Յուր նահապետին ատեն, ուսկից ելան Գնթունիք։ Լամբրոնացին այս ցեղը Քանանիդասին անունով Քանանեդեցի կը կոչէ, և Յովհան Կաթողիկոս Քանանիտ Գնթունի, երկու անունն ալ մէկտեղ դնե-

լով ։ Իսկ Խորենացի իր պատմութեան մէջ տեղ տեղ պարզ քանանացի կը կոչէ ։

198 . Քանանիդասին ցեղը ե՞րբ նախարարութեան կարգն անցաւ ։

Այս ցեղը Վաղարշակ նախարարութեանց կարգն անցուց, և ցեղին անունն ալ Գնթունիք կոչեց, և նոյն ցեղէն Ձեռէս անունով մէկը գինքը հազուեցընող դրաւ ու թագաւորին հանդերձապետ ։

199 . Ո՞ւր էր Գնթունեաց ցեղին բնակութեան տեղը ։

Այս բանիս վրայ որոշ յիշատակութիւն մը չկայ, բայց կ'երևի թէ Գնթունիք Գեղամայ ծովուն քովերը կը բնակէին Գուգարք նահանգին հարաւային կողմը ։

200 . Գնթունեաց ազգին բնաւորութիւնը ի՞նչպէս էր ։

Գնթունիք ընդհանրապէս քանանացւոց ազգին բնութիւնն ու սովորութիւնները ունէին, և իրենց մէջ շատ տեսնուած է նենգութիւն, քսութիւն և ապստամբութիւն ։

## ԺՁ . Գնունիք .

201 . Ե՞րբ սկսաւ Գնունեաց ցեղը ։

Այս ցեղը սկսաւ Ադրամելէքէն որ Ասորեստանեաց Սենեքերիմ թագաւորին որդին էր, և իր Սանասար եղբօրը հետ մէկտեղ իրենց հայրն սպաննելէն ետև Հայաստան փախեր էր մեր Սկայորդւոյն առեն (§ . 116) ։

202. Ո՞ւր էր Գնունեաց ցեղին բնակութեան տեղը։

Տուրուբերան նահանգին Աղիովիտ գաւառը, որոյ գլխաւոր քաղաքն է Արճէշ. բայց վերջը Գնէլ Գնունի որ Թագաւորին տակառապետն էր, ժառանգութեամբ տիրապետեց Հահապիվան լերան ալ, որ Այրարատ նահանգին մէջ կ'ըյնի։

203. Գնունեաց ցեղը ե՞րբ նախարարութեանց կարգն անցաւ, և ի՞նչ պաշտօն ունէր։

Վաղարշակ այս ցեղէն Գին անունով մէկը, որ սեղանի ատեն Թագաւորին ըմպելիները կը պատրաստէր, նախարարութեանց կարգը անցուց, և իրեն անունով նախարարութիւնն ալ Գնունիք կոչեց, այս ինքն գինի ունիս, որ իր պաշտօնին խիստ աղէկ յարմարեցաւ։ Այս ցեղը գլխաւոր նախարարութեանց մէկը եղաւ, և տէրութեան տակառապետը, որ Թագաւորին գինի կը պատրաստէր, և ամէն գինւոյ շտեմարաններու վերակացու էր։ Ուստի տարբեր է իրեն պաշտօնը մատռուակէն, վասն զի մատռուակը միայն սեղանի ատեն գինի կու տայ։

204. Այս ցեղը ուրիշ ի՞նչ պաշտօն ունեցաւ։

Այս ցեղէն մէկը Արշակ Բին ատեն հազարապետ եղաւ բոլոր տէրութեան, այս ինքն քաղաքական բաներու վրայ հոգ տանող. վասն զի ինչպէս որ կ'ըսէ Բուզանդ, շատ աշխարհաշէն էր այս ցեղը։

## ԺԷ. Արբեղէն և Գարբեղէն.

205. Ե՞րբ սկսան Արբեղէն և Գարբեղէն նախարարութիւնները:

Վաղարշակ [illegible]բէն անունով մէկը սպասարար և գ[illegible]որ դրաւ, այսինքն իրեն դիմացը կեցող պաշտօնեայ և Թագաւորական աթոռին խնամակալ ու տանը կահ կարասիքը հոգացող: Նոյնպէս Գաբաղ անունով մէկն ալ դրաւ վերակացու ցորենի մթերներուն և համբարակապետ, և իրենց անունովը ցեղերուն անունը կոչեց Արբեղէն և Գարբեղէն:

206. Ո՞ւր էր այս նախարարութեանց բնակութեան տեղը:

Վաղարշակ Այրարատայ նահանգին մէջ իրենց բնակութեան տեղ տուաւ, որ իրենց անունովը Արբեղեանք և Գարբեղեանք կոչուեցան*:

* Խորենացի Գիրք Բ. Է. “ Եւ զԳաբաղ զոմն 'ի վերայ կուտից ,,. Կոյտ կ'ըսուին ցորենի և ուրիշ արմտեաց շտեմարանները, բայց կը նշանակէ նաև ձիոց երամակները, որոց վերակացութեան պաշտօնն էր Թագաւորական ձիերը դարմանել և դաշտերու մէջ արածել:

## ԺԸ. Սպանդունիք.

207. Սպանդունեաց նախարարութիւնն ո՛վ հաստատեց։

Այս նախարարական ցեղը Վաղարշակ հաստատեց, որ սպանդանոցներու վրայ վերակացու էր, անոր համար կոչուեցաւ Սպանդունիք։ Բնակութեան տեղերնին յայտնի չէ։

## ԺԹ. Ձիւնականք.

208. Ձիւնական ցեղը ինչ պաշտօն ունէր։

Թագաւորին ամարանոցներուն, այս ինքն ամառուան տուներուն ու պալատներուն պահապան, և Թագաւորին օշարակներ շինելու համար սառ կը պահէր, անոր համար ըսուեր էր Ձիւնական։ Այս ցեղը կամաց կամաց առաջ երթալով նախարարաց կարգն անցաւ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

### Անպաշտօն Նախարարութիւններ*.

### Ակեացիք.

209. Ակէացւոց նախարարութիւնը ո՞վ հաստատեց։

Ակէացիք Վասպուրականի Ակէ գաւառին մէջ կը բնակէին, և Վաղարշակայ ատեն նախարարութեանց կարգն անցան, որ կ'ըսուին նաև Ակեայք։

### Անձևացիք.

210. Ե՞րբ հաստատուեցաւ Անձևացեաց նախարարութիւնը։

Անձևացիք Վաղարշակայ ատեն նախարարութեանց կարգն անցան, և այսպէս կոչեցան Վասպուրականի Անձևացիք կամ Անձաւացիք գաւառին անունովը, ուր շատ անձաւներ, ձորեր կային, և երկիրն ալ իբրև ամուր բերդ մ'էր թշնամւոյն ձեռքէն ազատելու համար։ — Այս նախարարութիւնը Թովմա Արծրունւոյն ըսածին նայե-

* Այս նախարարութիւնները դիւրութեան համար այբուբենի կարգաւ տեղեցինք դնել, առանց իրենց մեծութեան կարգը նայելու։

բարատայ մէջ եղած վարաժնունեաց ցեղէն՝ էին, թէ տարբեր ցեղ։ Վասն զի Թովմա Արծրունիին խօսքէն կ'երևի թէ Վասպուրականի մէջ եղած վարաժնունի գաւառին բնակիչքը Արծրունեաց ցեղէն էին, ուսկից Ռոստոմ անունով մէկը Վասպուրականի տանուտէր եղաւ։

## ԺԲ. Սլկունիք.

193. Սլկունեաց կամ Սղկունեաց ցեղը ուսկի՞ց ելած է։

Այս ցեղը ելած է Սլաքէն, զոր Վաղարշակ որսոց վերակացու դրաւ, վայրի այծեր որսալու համար, ու նախարարութեանց կարգն անցուց։ Սլաքին ցեղը խիստ հին է, և թերևս Հայկէն առաջ, ինչպէս Խորենացին կը յիշէ. Տրդատայ ատեն գրեթէ բոլորովին ջնջեցան Սլկոնիք բաց 'ի մէկ քանի հոգիէն, իրենց Սղուկ նահապետին ապստամբութեանը պատճառաւ, որ Տըրդատէն գլուխ քաշելով միաբաներ էր Պարսից Շապուհ թագաւորին հետ, ու Խոսրովիդխտոյ դայեակը Օտա նախարարը սպաններ էր։ Սլկունեաց ցեղին երկիրն էր Տարօն գաւառը, զոր ետքը Մամիկոնեանք ժառանգեցին (§. 165)։

## ԺԳ. Մանդակունիք.

194. Ե՞րբ սկսաւ Մանդակունեաց ցեղը։ Վաղարշակ Վլաքին պաշտօնը տուաւ նաև Միանդակ անունով մէկուն, ուսկից ելաւ Մանդակունեաց ցեղը։ Այս ցեղէն էր Արտաւազդ Մանդակունի որ զՏրդատը Պարսից Արտաշիր Թագաւորին կոտորածէն ազատելով, փախուց Յունաց սահմանը։

195. Ե՞րբ ջնջեցաւ Մանդակունեաց ցեղը։

Արտաշիր երբոր լսեց Արտաւազդ Մանդակունւոյն ըրածը, բարկանալով հրաման տուաւ որ բոլոր Մանդակունեաց ցեղը Թրէ անցընեն։ Այս կոտորածէն միայն կոյս աղջիկ մը ազատեցաւ Արտաւազդայ քոյրերէն, զոր Աշոցան ցեղէն Տաճատ անունով մէկը փախուց Կեսարիա, և անոր հետ կարգուելով, անկէց նորէն բազմացաւ այս ցեղը։ Տրդատ երբոր Թագաւորեց՝ Արտաւազդայ ըրածին փոխարէն՝ զինքը բոլոր զօրաց վրայ սպարապետ դրաւ։ Բայց ըսպարապետութեան պաշտօնը այս ցեղէն միայն Արտաւազդ ունեցաւ։

Մանդակունեաց բնակութեան տեղը կ'երևի թէ Հարք ու Տարօն գաւառներուն կողմերն էր։

## ԺԴ. Հաւնունիք.

196. *Հաւնունիք կամ Հաւենունիք նախարարութիւնը երբ սկսաւ։*

*Այս ցեղը հին ցեղ էր և Վաղարշակ նախարարութեանց կարգն անցուց, և կոչեց Հաւնունիք կամ Հաւենունիք, և ըրաւ զիրենք Բազէակիր և Բազէակալ, և կը կարծուի թէ երբոր Թագաւորը որսի կ'երթար, դիմացէն բազէ կը տանէին։ Խորենացին աշխարհագրութեանը մէջ Հաւունիք անունով գաւառ մը կը յիշէ Այրարատայ մէջ, որ կ'երևի թէ այս ցեղին բնակութեան տեղն էր, թէպէտ և Խորենացւոյն աշխարհագրութեան ուրիշ օրինակներուն մէջ այս գաւառին անունը Վահնունիք կամ Վահնունեաց ալ գրուած կայ։*

## ԺԵ. Գնթունիք.

197. *Գնթունեաց ցեղը ուսկից ելած է։*

*Երբոր Յեսու Աստուծոյ հրամանաւը Քանանացիները Աւետեաց երկրէն կը ջնջէր, Քանանիդաս անունով երևելի իշխաններէն մէկը նոյն Քանանու ցեղէն Հայաստան փախաւ մեր Յուր նահապետին ատեն, ուսկից ելան Գնթունիք։ Լամբրոնացին այս ցեղը Քանանիդասին անունով Քանանեդեցի կը կոչէ, և Յովհան Կաթողիկոս Քանանեա Գնթունի, երկու անունն ալ մէկտեղ դնե-*

լով ։ Իսկ Խորենացի իր պատմութեան մէջ տեղ տեղ պարզ քանանացի կը կոչէ ։

198. Քանանիդասին ցեղը ե՞րբ նախարարութեան կարգն անցաւ ։

Այս ցեղը Վաղարշակ նախարարութեանց կարգն անցուց, և ցեղին անունն ալ Գնթունիք կոչեց, և նոյն ցեղէն Զեւէս անունով մէկը գինքը հագուեցընող դրաւ ու Թագաւորին հանդերձապետ ։

199. Ո՞ւր էր Գնթունեաց ցեղին բնակութեան տեղը ։

Այս բանիս վրայ որոշ յիշատակութիւն մը չկայ, բայց կ՚երևի թէ Գնթունիք Գեղամայ ծովուն ջովերը կը բնակէին Գուգարք նահանգին հարաւային կողմը ։

200. Գնթունեաց ազգին բնաւորութիւնը ի՞նչպէս էր ։

Գնթունիք ընդհանրապէս քանանացւոց ազգին բնութիւնն ու սովորութիւնները ունէին, և իրենց մէջ շատ տեսնուած է նենգութիւն, քսութիւն և ապստամբութիւն ։

## ԺՁ. Գնունիք.

201. Ե՞րբ սկսաւ Գնունեաց ցեղը ։

Այս ցեղը սկսաւ Ադրամելէքէն որ Ասորեստանեաց Սենեքերիմ Թագաւորին որդին էր, և իր Սանասար եղբօրը հետ մէկտեղ իրենց հայրն սպաննելէն ետև Հայաստան փախեր էր մեր Սկայորդւոյն առեն (§. 116) ։

202. Ո՞ւր էր Գնունեաց ցեղին բնակութեան տեղը ։

Տուրուբերան նահանգին Աղիովիտ գաւառը, որոյ գլխաւոր քաղաքն է Արճէշ. բայց վերջը Գնէլ Գնունի որ Թագաւորին տակառապետն էր, ժառանգութեամբ տիրապետեց Ճահապիվան լերան ալ, որ Այրարատ նահանգին մէջ կ՚ըլլայ ։

203. Գնունեաց ցեղը երբ նախարարութեանց կարգն անցաւ, և ինչ պաշտօն ունէր ։

Վաղարշակ այս ցեղէն Գիճ անունով մէկը, որ սեղանի առեն Թագաւորին ըմպելիները կը պատրաստէր, նախարարութեանց կարգը անցուց, և իրեն անունով նախարարութիւնն ալ Գնունիք կոչեց, այս ինքն գինի ունիս, որ իր պաշտօնին խիստ աղէկ յարմարեցաւ ։ Այս ցեղը գլխաւոր նախարարութեանց մէկը եղաւ, և տէրութեան տակառապետը, որ Թագաւորին գինի կը պատրաստէր, և ամէն գինւոյ շտեմարաններու վերակացու էր ։ Ուստի տարբեր է իրեն պաշտօնը մատռուակէն, վասն զի մատռուակը միայն սեղանի առեն գինի կու տայ ։

204. Այս ցեղը ուրիշ ինչ պաշտօն ունեցաւ ։

Այս ցեղէն մէկը Արշակ Բին առեն հազարապետ եղաւ բոլոր տէրութեան, այս ինքն քաղաքական բաներու վրայ հոգ տանող. վասն զի ինչպէս որ կ՚ըսէ Բուզանդ, շատ աշխարհաշէն էր այս ցեղը ։

## ԺԷ. Արեղէն և Գարեղէն.

205. Ե՞րբ սկսան Արեղէն և Գարեղէն նախարարութիւնները։

Վաղարշակ Արէլ անունով մէկը սպա-սարար և կառավարող դրաւ, այսինքն իրեն դիմացը կեցող պաշտօնեայ և Թագաւորական աթոռին խնամակալ ու տանը կահ կարասիքը հոգացող։ Նոյնպէս Գարեգ անունով մէկն ալ դրաւ վերակացու ցորենի մթերներուն և համբարակապետ, և իրենց անունովը ցեղերուն անունը կոչեց Արեղէն և Գարեղէն։

206. Ո՞ւր էր այս նախարարութեանց բնակութեան տեղը։

Վաղարշակ Այրարատայ նահանգին մէջ իրենց բնակութեան տեղ տուաւ, որ իրենց անունովը Արեղեանք և Գարեղեանք կոչուեցան*։

* Խորենացի Գիրք Բ. Է. “Եւ զԳարեգ զոմն ՚ի վերայ կուտից„. Կոյտ կ՚ըսուին ցորենի և ուրիշ արմտեաց շտեմարանները, բայց կը նշանակէ նաև ձիոց երամակները, որոց վերակացութեան պաշտօնն էր Թագաւորական ձիերը գարմանել և դաշտերու մէջ արածել։

## ԺԸ. Սպանդունիք.

207. Սպանդունեաց նախարարութիւնն ո՞վ հաստատեց։

Այս նախարարական ցեղը Վաղարշակ հաստատեց, որ սպանդանոցներու վրայ վերակացու էր, անոր համար կոչուեցաւ Սպանդունիք։ Բնակութեան տեղերնին յայտնի չէ։

## ԺԹ. Ձիւնականք.

208. Ձիւնական ցեղը ի՞նչ պաշտօն ունէր։

Թագաւորին ամարանոցներուն, այսինքն ամառուան տուներուն ու պալատներուն պահապան, և Թագաւորին օշարակներ շինելու համար սառ կը պահէր, անոր համար ըսուեր էր Ձիւնական։ Այս ցեղը կամաց կամաց առաջ երթալով նախարարաց կարգն անցաւ։

# ՅՕԴՈՒԱԾ Գ.

## Անպաշտօն Նախարարութիւններ *.

### Ակէացիք.

209. Ակէացւոց նախարարութիւնը ո՞ւր հաստատեց։

Ակէացիք Վասպուրականի Ակէ գաւառին մէջ կը բնակէին, և Վաղարշակայ ատեն նախարարութեանց կարգն անցան, որ կ'ըսուին նաև Ակեայք։

### Անձևացիք.

210. Ե՞րբ հաստատուեցաւ Անձևացեաց նախարարութիւնը։

Անձևացիք Վաղարշակայ ատեն նախարարութեանց կարգն անցան, և այսպէս կոչեցան Վասպուրականի Անձևացիք կամ Անձաւացիք գաւառին անունովը, ուր շատ անձաւներ, ձորեր կային, և երկիրն ալ իբրև ամուր բերդ մ'էր թշնամեաց ձեռքէն ազատելու համար։ — Այս նախարարութիւնք Թովմա Արծրունւոյն բանծին նայե-

* Այս նախարարութիւնները դիւրութեան համար այբուբենի կարգաւ ուղեցինք դնել, առանց իրենց մեծութեան կարգը նայելու։

լով, Սմբատ Աին ատեն Արծրունեաց իշխանութեան տակը մտաւ. ու Արծրունեաց ցեղէն մէկ քանի Թագաւորազուն մարդիկ Անձևացեաց վրայ իշխելուն համար, տեղ տեղ կը յիշուի Անձևացեաց Թագաւորութիւն: Այս ցեղէն երևելի եղաւ Գնէլ նահապետը Պապ Թագաւորին ատեն, որ արևելեան զօրքին սպարապետն էր:

## Աշոցայ.

211. Ո՞վ հաստատեց Աշոցայ նախարարութիւնը:

Աշոցայ նախարարութիւնը Վաղարշակ հաստատեց, որ հին ցեղ էր, և Գուգարաց Հայկազնէն ելած, որ Շարայի որդւոց մէկն էր: Այս նախարարութիւնը Այրարատայ Աշոց գաւառին անունովը այսպէս կոչեցաւ, ուր էր իր բնակութեան տեղը:

## Ապահունիք:

212. Ապահունիք նախարարութիւնը ո՞վ հաստատեց:

Ապահունեաց նախարարութիւնն ալ Վաղարշակ հաստատեց, որ Հայկայ որդւոց մէկուն սերունդն էր: Այս նախարարութիւնը անուանի էր քաջութեան կողմանէ, որոյ բնակութեան երկիրն էր Տուրուբերանի Ապահունիք գաւառը, որ Բզնունեաց ծովուն կողմերը կ'իյնայ:

### Առաւեղեանք.

213. Առաւեղեան ցեղը ուսկից եղած է։ Առաւեղեան կամ Առուեղեան նախարարութեան ցեղը Ալանաց ազգէն Սաթինիկ թագուհւոյն ազգականներէն եղած էր, որոնք Արտաշէս Բին տանն Սաթինկան հետ մէկտեղ Հայաստան եկան, ու Արտաշէս զիրենք նախարարութեանց կարգը անցուց։

### Առաւենեանք.

214. Առաւենեան ցեղը ուսկից եղած է։ Առաւենեան նախարարութիւնը եղած է Առաւանէն որ Հայկազն Վահագնի որդին էր։ Այս նախարարութեան տեղն էր Առաւենից կամ Առաւանից ձորը Մոկք նահանգին մէջ, Վասպուրականի Ռշտունեաց գաւառին սահմանակից։

### Բզնունիք.

215. Ուսկից եղած է Բզնունեաց ցեղը։ Բզնունեաց ցեղը եղած է Բազ նահապետէն, որ Մանաւազին որդին և Հայկայ թոռն էր, որոյ բնակութեան տեղը աղի ծովուն արևմտեան հիւսիսային կողմը ըլլալուն համար, ծովն ալ իր անունովը Բզ-

նունեաց ծով կոչեցաւ, երկիրն ալ Բզնունիք, որ կ'ըլլնի Տուրուբերան նահանգին մէջ։

216։ Բզնունեաց ցեղը ո՞վ նախարարութեան կարգը անցուց։

Վաղարշակ. բայց Տրդատայ մահուանէն ետև ջնջեցաւ Մանաւազեան և Որդունի նախարարութեանց հետ մէկտեղ։ Վասն զի Տրդատայ մահուանէն ետև անմիջապէս Թագաւոր չըլլալով, այս իրեք ցեղերը իրարու վրայ ելան, ու մէկզմէկ ջնջեցին։ Բուզանդ կը պատմէ թէ Խոսրով Գ Դատաբէն անունով Բզնունեաց նահապետը զօրքով Պարսից վրայ խրկեց, որ Պարսից հետ միաբանելով Հայոց զօրքը կոտրել տուաւ։ Երբոր Խոսրով լսեց այս բանը՝ նոր բանակ հանեց, և Վաչէ Մամիկոնեան զօրավարին ձեռքովը յաղթեց Պարսից, և Դատաբէնն ալ բռնելով քարկոծել տուաւ իր ազգը, ու ցեղն ալ բոլոր թրէ անցուց ոչ արուի և ոչ էգի խնայելով, որով վերցուեցաւ այս նախարարութիւնը, և երկիրն ալ տէրութեան ձեռքը անցաւ։ Բայց այս մեծ կոտորածէն ետքն ալ դեռ յիշատակութիւն կ'ըլլայ այս ցեղին, որով յայտնի կը ցուցուի թէ բոլորովին չիջնջեցաւ։

Գարգարացիք.

217. Գարգարացւոց ցեղը ուսկից ելած է։

Գարգարացիք ելած են Առան Սիսա-

կեանին զաւկէն, և իրենց բնակութեան տեղն էր Ուտի Նահանգին Ուտի առանձնակ բռնուած գաւառը. վասն զի Ուտի առանձնակին Պարտաւ քաղաքը մեր մատենագիրները Գարգարացւոց աշխարհին մէջ կը դնեն։ Ստրաբոն Գարգարացւոց երկիրը սխալմամբ Աղուանից երկրին հիւսիսային կողմը կը դնէ Ամազոնեաց ազգին մօտ, որոյ հետ շատ վերաբերութիւն ունէր կ'ըսէ։

### Գարդմանացիք.

218. Գարդմանացւոց ցեղը ուսկից եղած է։

Գարդմանացւոց ցեղն ալ նոյնպէս Առանին զաւկէն եղած է, և իրենց բնակութիւնը Ուտի նահանգին Գարդման գաւառն էր։

### Գողթնեցիք.

219. Գողթնեցի ցեղը ուսկից եղած է։

Գողթնեցի ցեղը եղած է Սիսական կամ Սիւնեաց ցեղէն, որոյ երկիրն էր Վասպուրականի Գողթն գաւառը Սիւնեաց մօտիկ, որ Ը դարուն Սիւնեաց աշխարհին գաւառ սեպուեցաւ, և անոնց ձեռքն անցաւ։

220. Գողթնեցիք երբ նախարարութեանց կարգն անցան։

Վաղարշակ այս ցեղը նախարարութեանց կարգը անցուց, որոյ գլխաւոր իշխանը Սիւնեաց ցեղէն կ'ըլլար։ Այս Գողթն գաւառին բնակիչները ուժման կողմանէ շատ ծաղկած էին, և իրենց երկիրը Հայաստանի մուտներուն այսինքն բանաստեղծից բնակարան սեպուած էր, որոնք նուագարաններով կ'երգէին մեր դիւցազանց քաջութիւնները։ Բայց առասպելեաց հետեւելով՝ շատերը քրիստոնէութիւնը չէին ընդունած կամ մոլորութեամբք խառնած Ե դարուն մէջ ալ. անոր համար Ս. Մեսրովպ գնաց հոն և քարոզեց և մոլորեալները դարձուց։

Դիմաքսեանք.

221. Ե՞րբ հաստատեցաւ Դիմաքսեան նախարարութիւնը։

Արտաշէս Բին ատեն. վասն զի Արտաշէս Երուանդ Բին հետ պատերազմելու ատեն, Գիսակ անունով մէկը ազատեց զԱրտաշէսը մահուան վտանգէն, բայց ինքը մեռաւ գլխուն կէսը երեսովը մէկտեղ կըտրուելով։ Այս բանիս փոխարէն՝ Արտաշէս Գիսակին Ներսէս որդին նախարարութեանց կարգը անցուց, և կոչեց Դիմաքսեան իբր դիմակիսեան։ Այս ցեղին բնակութեան տեղը ըստ ոմանց Վանանդ գաւառին մէջը կ'իյնար։

### Զատաւենեանք․

222․ Զատաւենեան ցեղը մրր նախարարութեան կարգը անցաւ։

Զատաւենեան ցեղը հին Հայկազն թագաւորաց ցեղերէն առաջ եկած է, զոր Վաղարշակ նախարարութեանց կարգը անցուց։

### Զարեհաւանեանք․

223․ Զարեհաւանեանք ուսկից ելած են։

Զարեհաւանեանց ցեղը ելած է Զարեհէն որ Երուանդին որդին էր, և Երուանդը մեծին Տիգրանայ թոռնորդին էր։ Վաղարշակ այս ցեղը նախարարութեանց կարգը անցուց, որոյ բնակութեան երկիրն էր Զարեհաւան գաւառը Պարսկահայոց մէջ։

### Ծոփքացիք․

224․ Ծոփէից ազգը ուսկից ելած է։

Ծոփքացիք կամ Ծոփէք Առան Սիսակեանին զաւկըններէն ելած են, որոց բնակութեան տեղը թէպէտ և բուն Մեծին Հայոց սահմանէն դուրս է, այս ինքն Ոստի նահանգին արևելեան կողմը Կուր գետոյն քով, բայց Ագաթանգեղոս Հայոց նախարարաց կարգին մէջ կը դնէ զիրենք։

## *Ծոփեցիք*.*

225. *Ո՞վ հաստատեց Ծոփաց նախարարութիւնը։*

*Ծոփաց նախարարութիւնը որ կ'իյնի Չորրորդ Հայոց Ծոփք գաւառին մէջ, Վաղարշակ հաստատեց Անգեղեան նախարարութենէ զատ։ Բայց որովհետեւ Բուզանդ Անգեղեան ցեղին բնակութեան տեղը մեծ Ծոփք գաւառը կը դնէ, անկէ կը հետեւի որ կամ Ծոփաց նախարարութիւնը ետքը միացեր է Անգեղեան նախարարութեան հետ, կամ պիտի ըսենք թէ Վաղարշակին հաստատած այս մեծ նախարարութիւնը փոքր Ծոփաց մէջն էր, որ կ'ըսուէր նաեւ միւս Ծոփք, ուր կը տիրէր Շահունեաց ցեղը։*

## *Մանաւազեանք.*

226. *Մանաւազեան ցեղը ուսկի՞ց ելած է.*

*Մանաւազէն՝ որ Հայկայ որդին եւ Խոռոայ եղբայրն էր, եւ իր անունովը քաղաք մը շինեց Տուրուբերանի Հարք գաւառին մէջ, զոր ինքը ժառանգեր էր, եւ քաղքին*

* *Մեր մատենագրաց մէջ Ծոփեցի անունը յիշուած չէ, իսկ Ծոփք անունը կու տան միայն աշխարհին, եւ բնակիչներուն համար կ'ըսեն Բնակիչք Ծոփաց աշխարհին, յաշխարհէն Ծոփաց, եւ այլն։*

անունը դրաւ Մանաւազակերտ, որ կրճատմամբ ըսուեցաւ նաև Մանազկերտ կամ Մանծկերտ:

227. Մանաւազեան ցեղը երբ նախարարութեանց կարգը անցաւ:

Այս ցեղը Վաղարշակ նախարարութեանց կարգը անցուց Բզնունեաց և Որդունին ըսուած ցեղերուն հետ մէկտեղ. որոնք Խոսրով Բին ժամանակը մէկզմէկ պատերազմաւ ջնջեցին: Բայց Բուզանդ կ'ըսէ թէ Խոսրով ու Ս. Վրթանէս խաւրեցին Աղբիանոս եպիսկոպոսը որ զիրենք խաղաղէ, բայց անոնք մտիկ չընելով ըսկսան Թագաւորին երկիրներն ալ աւրել: Այն ատեն Խոսրով Վաչէ զօրավարին հրաման տուաւ որ երկու ցեղն ալ բոլոր ջնջէ, և ոչ մէկ արու զաւակ թողլով (§. 216). և Մանաւազեան ցեղին երկիրը, այսինքն Մանաւազակերտ քաղաքը և իրեն շրջակայ սահմանը՝ Աղբիանոս եպիսկոպոսին տըւաւ, և Որդունեաց Որդորու գեղն ալ՝ իրեն սահմանովը մէկտեղ՝ Բասենոյ եպիսկոպոսին:

### Մոկացիք.

228. Ո՞վ հաստատեց Մոկաց նախարարութիւնը:

Վաղարշակ հաստատեց Մոկաց նախարարութիւնը, որ թէպէտ ամբողջ Մոկք նահանգին կ'իշխէր, բայց իր ընդարձակ

իշխանութեանն համեմատութեամբ՝ շատ քիչ վրան յիշատակութիւն կայ։ Այսով կ'երևի թէ Մոկացիք իրենց սահմանակից Մարաց, Պարսից և մանաւանդ Ատրպատականայց հետ՝ խառնուած էին հին ատենէն ի վեր։ Մոկաց նախարարութիւնը Ժ դարուն սկիզբները Սմբատ Ա Բագրատունւոյն ժամանակ Արծրունեաց թագաւորութեան ձեռքը անցած էր Անձևացեաց նախարարութեան հետ մէկտեղ։

## Որդունիք.

229. Որդունի ցեղը ուսկի՞ց ելած է։

Որդունի ցեղը ելած է Հայկայ սերունդներէն, որոյ բնակութեան տեղն է Այրարատայ Բասենան գաւառը։ Այս ցեղը Վաղարշակ նախարարութեանց* կարգը անցուց, ու ետքը Խոսրով Բ ին ատեն բոլորովին ջնջեցաւ (§. 216)։

## Ուտէացիք.

230. Ե՞րբ հաստատեցաւ Ուտէացւոց նախարարութիւնը։

Ուտէացւոց նախարարութիւնը Վաղարշակ հաստատեց, որոյ սերունդը սկսած է Առանին զաւկէն որ Սիսակայ ցեղէն էր։ Ուտի նահանգը Արշակ Բ ին ատեն Աղուանից ձեռքը անցաւ, երբոր մեծին Հայոց ուրիշ կողմերը թագաւորէն կ'ապստամբ-

բէրին։ Բայց Մուշեղ Արշակայ զօրավարը Աղուանից ձեռքէն պատերազմով առաւ Ուտի աշխարհը, սակայն ետքը նորէն Աղուանք տիրեցին, ինչպէս Խորենացւոյն ատենն ալ անոնց ձեռքն էր, ինչուան որ Սմբատ Ա. Բագրատունեաց թագաւորը զարձեալ առաւ ձեռքերնէն։ Ասով այս նահանգը երբեմն Հայոց ձեռքը կ'անցնէր երբեմն Աղուանից, որուն գուցէ մեծ պատճառ մըն ալ բնակչացը բոլոր ապստամբ բնաւորութիւնն էր, որ Սևորդիք կ'ըսուէին իրենց Սև նահապետին անունովը (§. 13)։

## Պալունիք.

231. Ե՞րբ սկսաւ Պալունեաց ցեղը։

Թէպէտ և որոշ չգիտցուիր Պալունեաց ցեղին ու նախարարութեան սկզբնաւորութիւնը, բայց յայտնի կեցած է իրենց երկիրը, որ երկու տեղ կը յիշուի. մէկը Տուրուբերանի Տարօն գաւառին սահմանակից, ուր են Կուառս և Հոռեան աւանները, միւսը Վասպուրականի 36 գաւառներուն մէկն էր Պալունիք ըսուած։

## Պահլաւիկք.

232. Պահլաւիկ ցեղը ուսկի՞ց ելած է։

Պահլաւիկ ցեղը ելած է Անակէն որ Ս. Գրիգոր Լուսաւորչին հայրն էր. ազգաւ Պարթև, Պահլաւ գաւառէն, ու Սուրէն

Գանձակի, Թագաւորական ցեղէն, որոյ վը-
րայ Կամսարական ցեղին մէջ խօսեցանք.
(§. 171): Բայց գիտնալու բան է որ Խո-
րենացին մասնաւոր կերպով պարթև կ'ա-
նուանէ Թագաւորական' ճիւղը, որ Վա-
ղարշակին ցեղովը Հայաստան եկաւ. իսկ
Անակին նախարարական ցեղը սովորա-
բար պահլաւիկ կը կոչէ:

233. Պարթևաց ազգին սկիզբը ուսկի՞ց է:

Պարթևաց ազգը ելած է Աբրահամ նա-
հապետէն և Քետուրայ կնիկէն: Այս ցեղէն
Արշակ անունով մէկը Քրիստոսէ 250 տա-
րիի չափ առաջ ապստամբելով Մակեդո-
նացւոց տէրութենէն Թագաւորեց Քուշա-
նաց երկրին վրայ: Ասոր որդին Արշակ Բ
որ Մեծ կոչեցաւ իր մեծամեծ քաջութիւն-
ներուն համար, իր Թագաւորական աթոռը
Բահլ փոխեց, որ Քուշանաց երկրին մէջ
կ'ըլնի, ասով իրեն ցեղը նոյնպէս և իրեն
բնակութեան տեղը Բահլ քաղաքին անու-
նովը Պահլաւ ըսուեցաւ: Մեծն Արշակայ
եղբայրը Վաղարշակ' Թագաւորելով Հայա-
ստանի վրայ, իրմէն սկսաւ Արշակունեաց
տէրութիւնը:

### Ռոփսեանք.

234. Ռոփսեան ցեղը ուսկի՞ց ելած է.

Ռոփսեան կամ Ռոփսոնեան ցեղը հօր
կողմանէ վերջին Տիգրանէն կ'իջնայ, իսկ
մօր կողմանէ հռոմայեցի էր: Վասն զի

Տիգրան երբոր Պարսից Պերոզ թագաւորին հետ Ասորւոց երկիրը գնաց՝ որ Հոռոմայեցւոց ձեռքին տակն էր, ու հոն տեղուանքը կ'ասպատակէր, գերի բռնուեցաւ։ Բայց երբոր Ղուկիանոս կեսար այն կողմերը եկաւ, ազատեց Տիգրանը, ու իր մերձաւոր ազգականներէն Բոփի աղջիկը իրեն կնութեան տուաւ։ Տիգրան երբոր Հայաստան դարձաւ, թողուց զԲոփի ուսկից չորս տղայ ունեցեր էր, և որպէս զի անոնք Արշակունի չըսուին, անոնցմէ նոր ցեղ հաստատեց, որ իրենց Բոփի մօրը անուանովը Բոփեանք կոչեցաւ. և Տիգրան այս չորս տղոց անդրանիկը նոյն ցեղին նահապետ դրաւ, և մէկալ նախարարութեանց կարգը անցուց, որ կ'ըսուի նաև Ասփուռնի։

Տաշրացիք.

235. Տաշրացոց ազգը ուսկից ելած է։

Տաշրացիք ելած են Շարայրին որդւոյն Գուշար Հայկազնոյն զաւակներէն, որ Վաղարշակայ ատեն նախարարութեանց կարգը անցան։ Իրենց երկիրն է Տաշիր գաւառը, որ կ'իյնի Գուգարք նահանգին մէջ. և վերջերը գրեթէ բոլոր Գուգարաց նահանգին վրայ իրենց իշխանութիւնը կը տարածէր։

## Տրուենիք.

236. Տրուննեաց ցեղին վրայ ինչ գիտելիք կան:

Արտաշէս Բ. Տուր նախապետին տասնըհինգ գաւկըներէն մասնաւոր ցեղ ըրաւ Տրուենիք անունով, անոնց հօրը ըրած քըսութեանցը փոխարէն, որ Երուանդ թագաւորին տղոց մարդիկներէն մէկը ըլլալով, ինչ որ կ'ըլլար արքունեաց մէջ, գաղտուկ կ'իմացընէր Սմբատ Բիւրատեանին, որ Արտաշէսին դայեակն ու սպարապետն էր, անոր համար Երուանդ սպաննել տուած էր Տուրը:

## Քաջբերունիք.

237. Քաջբերունեաց ցեղին վրայ ինչ գիտելիք կան:

Յայտնի չէ այս ցեղին սկզբնաւորութիւնը որ Դ. և Ե. դարերուն մէջ ալ կը յիշուի: Թովմա Մեծոփեցին ու Վարդան աշխարհագիրը Վասպուրականի Աղիովիտ գաւառին Արճէշ քաղաքը և անոր շրջակայ սահմանը Քաջբերունեաց երկիր կ'անուանեն: Ասկէց կ'երևի թէ Քաջբերունի ցեղը Արճէշու կողմերը կը բնակէր. ուր ընդ հակառակն ոմանք այն կողմերը Գնունեաց կը համարին: Ուստի պէտք է ըսել թէ ատեն մը Գնունեաց ու ատեն մ'ալ Քաջբերունեաց

ձեռքը անցաւ այս Արճէշ քաղաքը իր սահմանովը մէկտեղ ։

## Օրբելեանք.

238. Ուսկի՞ց ելած է Օրբելեան կամ Ուրբելեան ցեղը ։

Օրբելեան ցեղը Ճենաց ազգէն է. վասն զի Ճենբակուր Ճենաց թագաւորին ատեն խռովութիւն ընելով, թագաւորին տղաքը սկսան իրարու հետ կռուիլ. այն ատեն մէկ կողմը տնով տեղով Վրաստան փախաւ ։ Վրացիք տեսնելով որ քաջ մարդիկ են, տուին անոնց Օրբէթ բերդը և ուրիշ շատ տեղեր բնակելու համար. այս Օրբէթ բերդին անունովը ետքերը Օրբէլք կամ Օրբոլք կոչեցան, այս ինքն Օրբէթացիք ։ Այս ցեղը ինչպէս Վրաց հետ, այնպէս ալ Հայոց հետ խառնեցաւ, բագրատունի Կորիկեանց թագաւորներուն հետ խնամութիւն ընելով ։

239. Օրբելեանք ի՛նչ պատիւ և իշխանութիւն ունէին ։

Օրբելեանք՝ Վրաց աշխարհին սպարապետն էին, և տէրութեան ամէն գործակալները անոնց իշխանութեան տակն էին, և ունէին 12 սեպհական դրօշ, և իւրաքանչիւր դրօշին տակ 1000 զինուոր ։ Եւ որովհետև թագաւորին նշանը կարմիր կ'ըլլար ճերմակի վրայ, անոր համար ասոնցը որպէս զի տարբեր ըլլայ, հրամայեցին որ ճերմակ ըլլայ նշանը կարմիրի վրայ ։ Եւ

երբոր Թագաւորին դիմացէն կ'երթային , ձեռքերնին առիւծագլուխ գաւազան կը բռնէին , և սեղանի վրայ ամէն նախարարներէն վեր կը նստէին . բաց այս պատիւներէն՝ Վրաց Թագաւորներուն Թագադիր էին ։

240 . Ե՞րբ ջնջեցաւ Օրբելեան ցեղը ։

Երկոտասաներորդ դարուն մէջ Վրաց Դաւիթ Թագաւորը իր Դեմետր որդին պըզտիկ ըլլալով յանձնեց նախարարներուն ու Իւանէ սպարապետին՝ որ Օրբելեան ցեղէն էր , որպէս զի երբոր Դեմետր մեծնայ՝ Թագաւորեցընեն զինքը ։ Երբոր մեծցաւ տղան ու Իւանէ կ'ուզէր Թագաւորեցընել , Գէորգէ Դաւթին եղբայրը որ Վրաց վրայ Թագաւորեր էր , բռնեց Իւանէն ու Դեմետրն ու աչուըներին կուրցուց , ու հրաման տուաւ որ Օրբելեան ցեղը բոլոր ջնջեն , որոյ Ճենաց աշխարհէն գալէն 'ի վեր հազար տարիէն աւելի եղեր էր ։ Այս աղետին կոտորածէն որ եղաւ 1177ին , ազատեցաւ միայն Լիպարիտ Իւանէի եղբայրը իր երկու Ելիկում և Իւանէ զաւկըներովը մէկտեղ , որ Պարսկաստան գացեր էին . ասոնցմէ նորէն սկըսաւ աճիլ ու բազմանալ Օրբելեան ցեղը Թամար Թագուհւոյն ատեն , որ Գէորգէին յաջորդեց , ու Իւանէն որ Գանձակայ ամիրային քով գացեր էր , ետ դարձընել տուաւ , ու դարձուց իրեն Օրբէթ բերդը ։

241 . Օրբէլեանց երկիրը ո՞ւր կ'ըլլայ ։

Օրբելեանք բնակեցան նախ Օրբէթ բեր-

դը, որ նոյն է Շամշուլդէին հետ, ըսել է թէ իրենց առջի բնակութիւնը Հայաստանի Գուգարք նահանգին մէջ եղած է: Ետքը իրենց բնակութիւնը եղաւ Լօռէ որ Գուգարաց Տաշիր գաւառին մէջն է. տիրեցին նաև Գմանիք, Խունան քաղքըներուն. և որովհետև Գուգարք նոյն ատեն Վրաց ձեռքն էր, անոր համար հոն շատ Վրացիք ալ կը գտնուէին: իսկ ետքերը ԺԱ և ԺԲ դարերուն մէջ Օրբէլեան ցեղը տարածեցաւ Սիւնեաց երկիրը, և հոն շատ երկիրներու տէր եղաւ, և Վայոց ձոր ըսուած գաւառը և ուրիշ շատ տեղեր իրեն սեպհականեց, և խնամութեամբ խառնուեցաւ և միացաւ Հայոց հետ: Այս ցեղէն էր Ստեփաննոս Օրբէլեան կամ Ուրբէլեան Տարսայիճ Աթաբէկին որդին, որ ետքը 1285ին Սիւնեաց եպիսկոպոս եղաւ, ու Օրբէլեանց և Սիւնեաց ցեղերուն պատմութիւնը գրեց:

242. Օրբէլեանք ո՞ւր կը թաղուէին:

Վրաց երկրին մէջ եղած Օրբէլեանց գերեզմանատեղին էր Բեթանիա վանքը. իսկ Սիւնեաց մէջ բնակող Օրբէլեանց գերեզմանատեղին էր Նորավանք ըսուած մենաստանը Վայոց ձոր գաւառին մէջ. քիչ անգամ թաղուած են նաև Տաթեւու մէջ:

243. Օրբէլեանց ցեղէն ինչ երևելի մարդիկ եղած են:

Այս ցեղը շատ քաջ և արիասիրտ էր, և ատեն ատեն շատ երևելի զօրավարներ ըն-

ծայեց, որոնք Վրաց տէրութիւնը և անոր հետ նաև Հայաստանի սահմանները ի վարուն և անկէ ետքը, մեծ քաջութեամբ պահպանեցին Թաթարաց ու Պարսից յարձակմունքէն։

244. Վերյիշեալ նախարարութիւններէն զատ ուրիշ ի՞նչ նախարարութիւններ կան Հայաստանի մէջ։

Կան նաև ուրիշ նախարարութիւններ և ցեղեր ալ, որոց սկիզբն ու երկիրը յայտնի չգիտցուելուն համար անոնց կարգը չդրինք, թէ և կը յիշուին մեր այլևայլ պատմչացը մէջ. ինչպէս են Աղբերկացիք (փարպ.), Բագեանք (Բուզ.), Ընծայինք (Եղիշէ և փարպ.) Ընտրունիք (Արծր.), Խորխոռունիք (Խոր.), Համբուժեանք (Մեսրոպ), Մարզպետունիք (Յհ. կթ.), Սահառունիք (փարպ. Բուզ.), Սրուանձտեայք (Եղշ. փարպ.), Քօղեանք (Եղշ.), և այլն, և այլն։

245. Հայաստանի այսչափ բազմաթիւ նախարարութեանց մէջ որո՞նք են երևելիները։

Այս ամէն նախարարութեանց մէջ չորսը խիստ երևելի եղան, որոցմէ իրեքը օտար ազգի իշխաններէ առաջ եկած են, այս ինքն Բագրատունեացը, Մամիկոնեանցն ու Արծրունեացը. իսկ Սիւնեացը որ չորրորդն է՝ սկսած է Հայկայ թոռներէն։ Այս չորսին մէջ ալ Բագրատունիք և Մամիկոնեանք շատ երևելի եղան թէ՛ քաջութեամբ և թէ աշխարհաշինութեամբ, ու

Հայոց տէրութեան ամուր յենարան և պարծանքն էին ։ Բայց այս երկու նախարարութեանց երկիրը պզտիկ էր, իսկ Արծրունեաց և Սիւնեաց երկիրները ընդարձակ և բարեբեր ։ Բագրատունեաց ու Մամիկոնեաց ցեղէն շատ երևելի մարդիկ ելան գիտութեան և քաղաքագիտութեան կողմանէ, իսկ վնասակար մարդիկ քիչ ․ ընդհակառակն Արծրունեաց և Սիւնեաց ցեղէն շատ անպիտան մարդիկ ելան, որ տէրութեան մեծամեծ վնասներ հասուցին ։

248. Հայոց հին ցեղերէն որո՞նք մնացած են ինչուան հիմա ։

Այս ցեղերէն ոմանց ինչուան հիմա մնացորդներ կան այլևայլ տէրութեանց մէջ, և իրենց հիմակուան նոր անունները ասոնք են .

Պակրատիուն — Բագրատունիք

(Վրաստանի և Ռուսաստանի մէջ)

Ուրպելիուն — Օրբէլեանք

(Վրաստանի և Ռուսաստանի մէջ)

Սասունք — Սանասունք

(Մշոյ երկիրը)

Մանըգցիք — Մամիկոնեանք

(Քիւրտիստանի մէջ)

Ալիվանցիք — Ալկունիք

(Քիւրտիստանի մէջ)

Ռուշկըցիք — Ռուշտունիք

(Քիւրտիստանի մէջ)

Մալախովսքի կամ Մալխասովսքի — Մաղխազունիք

(Լեհաստանի մէջ)

Սարեղայ — Գարեղեանք

(Լեհաստանի մէջ)

Եւ որովհետև այս նախարարութեանց շատը Վաղարշակայ ատենէն սկսած է, անոր համար իրենց հնութիւնը 2000 տարին կ'անցնի, որով Եւրոպայի մէջ գտնուած ցեղերէն ամէնէն հինը կ'ըլլան. վասնզի Եւրոպայի ամէնէն հին ցեղերը մեծին Կարոլոսի ժամանակը սկսած են, որ Թագաւորեց 800ին։

# ԳԼՈՒԽ Թ.

## Տէրութեան մէջ եղած պաշտօններուն վրայ.

247. Տէրութեան մէջ եղած ինչ պաշտօններու անուններ կը գտնուին մեր մատենագրաց մէջ։

Դրօշակակալ, կողմնակալ կամ Սահմանակալ կ'ըսուէր այն իշխանը որ Հայաստանի այլևայլ կողմերը թշնամեաց յարձակմունքէն կը պահէր։

Գաւառակալ կ'ըսուէր այն որ մասնաւոր գաւառի մը վրայ կ'իշխէր, բայց ոչ ինքնագլուխ, հապա իրմէ աւելի մեծէն կախումն ունենալով։

Հազարապետ՝ որ թագաւորին պալատը կը հոգար, գուցէ նաև բոլոր Հայաստանի պիտոյքը ինքը կը դարմանէր։

Զինակիր՝ որ թագաւորին զէնքն ու սուսերը կը կրէր, և ասոր պաշտօնը թիկնապահին պաշտօնէն զատ էր, և կ'երևի թէ միշտ Մամիկոնեանց ցեղէն կ'ըլլար, սպարապետութեան պաշտօնը անոնց ըլլալուն համար։

Նուիրապետ՝ որ թագաւորը տեղ մը երթալու ատեն դիմացէն կ'երթար ու ամենուն կ'իմացընէր թագաւորին գալը։

Կային նաև թագաւորական Մանեկապետ, Քարտուղար, Դպիր, Դահճապետ, և այլն։

248. Ի՞նչ պաշտօն էր Մարզպետութիւնը։

Մարզպետութիւնը նոյն է Ներքինապետութեան հետ, զոր Վաղարշակ հաստատեց, վասնզի իրմէ առաջ յիշատակութիւն մը չկայ, և սովորաբար կ'ըլլար Անգեղեան ցեղէն, և կամ ուրիշ հայկազն հին ցեղերէն, որոնցմէ կ'ըլլային նաև ներքինիները. ուստի մարզպետութեան պաշտօնը որդւոց որդի մէկ ցեղի վրայ չէր։ Մարզպետը այս ինքն ներքինապետը կը կոչէր նաև Հայր իշխան, և իրեն պաշտօնն էր թագաւորին իբրև հայր ըլլալ, և վերակացու և հոգացող թագաւորին պալատին և կանանց։

249. Մարզպետը ի՞նչ կալուածներ ունէր։

Վաղարշակ մարզպետին իբրև կալուած տուաւ Ատրպատականէն ինչուան Ջուաշ և Նախճաւան։ Իսկ ետքերը Տիրան Բին ատեն կ'իշխէր նաև Տարօն գաւառին այլևայլ գեղերուն վրայ ալ։

250. Նախճուան քաղքին վրայ ի՞նչ գիտելիք կան։

Նախճուան քաղաքը մարզպետին ձեռքը ըլլալուն համար Ոստան ըսուեցաւ, իբր թագաւորական քաղաք*, պատճառաւ որ

* Անկէց սովորութիւն մնացեր է նաև մեծամեծ նախարարաց գլխաւոր քաղաքը Ոստան կոչել, ուր էր իրենց արքունիքը կամ դատաստանարանը.

մարդպետին ցեղին մարզիկը ստանալով կ'ըսուէին Թագաւորական ցեղէ ըլլալնուն համար (§. 163)։ Աշխարհական իշխանութիւնը վերցուելէն ետքն ալ Թովմա Արծրունի Նախճաւանի եպիսկոպոսը կը կոչէ մարդպետական եպիսկոպոս կամ Ռստանի եպիսկոպոս, որ տարբեր ամէն եպիսկոպոսներէն վեր էր, և անմիջապէս կաթողիկոսէն վերջը կը յիշուէր, և երբեմն ինչուան մետրապօլիտ ալ կ'ըսուէր։

Բայց Արշակունեաց հետ այս պաշտօնն ալ լմնցած է։

251. Շահապն ու Շահաստապետը ինչ պաշտօններ ունէին։

Շահապին պաշտօնը յայտնի չգիտցուիր, բայց ինչպէս որ կ'երևի կամ վերակացու և պահապան էր Թագաւորական տեղերու, և կամ իշխան Թագաւորական եկամուտներու, թերևս նա և բոլոր տէրութեան եկա-

ինչպէս Երուանդաշատ քաղաքը Կամսարականաց ոստան կ'ըսուէր. Հադամակերտ՝ ոստան Արծրունեաց. Դարոյնք՝ ոստան Բագրատունեաց և այլն։ Նոյնպէս ոստան կը կոչուէին այն քաղաքները ուր էր արքունիքը, ինչպէս էր Դուինն քաղաքը։ — Ոստան բառը եղած է Պարսից ոստան բառէն, որ կը նշանակէ [illegible]. ասկէց Թագաւորական դաստակերտները, կամ նոյն իսկ Թագաւորին արքունիքը ոստան՝ և մեր մէջը ոստան ըսուեցաւ։ Ինչպէս նաև Օսմանցիք ասիթանէ ըսելով կ'իմանան Կոստանդնուպոլիս քաղաքը, ուր է Թագաւորին արքունիքը, որ բուն բառին նշանակութիւնը նայելով ըսել է Դուռն։

մուտներուն ։ Իսկ բառին բուն նշանակու-թեանը նայելով ըսել է քաղաքապետ ։

Շահնխոստապետին կամ շահոստապետին պաշտօնն էր թագաւորական աթոռին, այսինքն ձիոց և կառաց վերակացութիւնը ։ Կիլիկեցոց ժամանակ ասոր կ'ըսէին Գունդստապլ, որ եւրոպական բառ է (§․ 254) ։

252․ Որեար դրան, Դրան երէց որո՞նք կ'ըսուէին ։

Որեար դրան կ'ըսուէին թագաւորին պալատին մէջ եղած մարդիկը ։ Դրան երէց կ'ըսուի թագաւորին պալատին մէջ եղած քահանայն ։ Դրան եպիսկոպոս կ'ըսուի թագաւորին պալատին և կաթողիկոսարանին մէջ եղած եպիսկոպոսը ։

253․ Սատրապ և Չորրորդապետ որո՞ց կ'ըսուէր ։

Սատրապ յունական բառ է, և Բուզանդ և Մեսրոպ գործածած են գաւառակալի տեղ ։ Իսկ Յունաց և Լատինացոց մատենագիրները կը գործածեն նախարարի տեղ ։

Չորրորդապետին պաշտօնը մեր մէջը որոշ չգիտցուիր ․ թերեւս կը կոչուէր չորս սատանիկ գնդերուն գլխաւորը ․ բայց բուն չորրորդապետ կ'ըսուի տէրութեան մը չորրորդ մասին մէկուն վրայ իշխեցողը ․ և սովորաբար գրոց մէջ այս նշանակութեամբ գործածուած է, որով և կը նոյնանայ գաւառակալ բառին հետ* ։

* Զինուորական կարգի պաշտօնատարց վրայ կը խօսինք զինուորութեան մէջ ։

254. Ռուբինեանց ատեն ինչ պաշտօնատեարց անուններ կը յիշուին ։

Ռուբինեանց ատեն որովհետեւ Հայերը շատ վերաբերութիւն ունէին Եւրոպացոց հետ, անոր համար իրենց իշխաններուն տուած պատուոյ անուններուն շատը գաղղիարէն լեզուէ առնուած էր։ Ինչպէս

Պարոն[1], բարձրագոյն պատուոյ անուն էր զոր կու տային առջի բերան Կիլիկիոյ իշխողներուն, քանի որ Թագաւոր չէին օծուած, ուստի և կ'ըսուէր Պարոն Ռուբէն, Պարոն Կոստանդին, և այլն ։ Պարոն անունը ետքէն սկսաւ տրուիլ Թագաւորին որդւոցը, և Թագաւորին հայրը կամ խնամակալը կ'անուանէր առագ պարոն ։

Պայլ[2], որ կը տրուէր իշխանաց իշխանին, այսինքն անոր որ ամէն իշխաններուն գլուխն էր ։

Մարաջախտ[3], որ կը տրուէր Թագաւորին տանը հոգաբարձուին, որ Արշակունեաց ատեն կ'ըսուէր հազարապետ տան ար-

[1] Գղ. Baron. Հիմա արեւելք մեր ազգին մէջ տաճկական աղա, էֆէնտի, չէլէպի, պատուանունները մտնելով, շատ հասարակ եղած է պարոն պատուանունին գործածութիւնը, ուր Եւրոպա ուրիշ շատ պատուոյ անուններէն վեր է ։

[2] Գղ. Baile. որուն տաճկերէն կ'ըսեն Պայլօզ, որ կը տրուէր Վենետիկեցոց տէրութեան կողմանէ Կոստանդնուպոլիս դրուած դեսպանին ։

[3] Գղ. Maréchal.

քոյի։ Մարաջախտ անունով կը տրուէր երբեմն նաև զօրավարին։

Գոնեդապլ [1], կը տրուէր զօրաց սպարապետին։

Ջամբռլայն [2], որ կու տային Թագաւորին սենեկապետին։

Սենեսկալ կամ Սենեշալ [3] մատակարարին։

Պօղլեր [4] մատռուակին։

Օտար ազգերէն Հայոց տրուած պատուոյ անուններ.

258. Կիւրապաղատին պաշտօնը ինչ է։

Կուրապաղատ անունը եկած է Լատին բառէ [5]։ Այս անունը կու տային անոր որ Թագաւորին պալատը կը հոգար, ինչպէս որ անունէն ալ յայտնի է, որուն մեր մատենագիրները հազարապետ տան արքայի կ'ըսեն։ Յունաց մէջ կիւրապաղատին պաշտօնը մեծ էր, և Թագաւորին անմիջապէս քովէն կ'երթար, ձեռքը ոսկի գաւազան բռնած։

[1] Գղ. Connétable, որ կը նշանակէ ախոռապետ։

[2] Գղ. Chamberlan.

[3] Գղ. Sénéchal, որ կը տրուէր միջին դարու մէջ Թագաւորին ծառայներուն գլխաւորին։

[4] Գղ. Botleur.

[5] Լատինացիք կիւրապաղատին կ'ըսեն Curator palatii (քուրադօր բալադիի) և Յոյները Κουροπαλάτης (քուրօբալադիս)։

256 . Այս անունը ուրիշ որոնց կը տրուէր։

Այս անունը պատուոյ համար կու տային ուրիշ հեռու տեղ եղած մարզպանաց ալ, որոնք չէին կրնար Թագաւորին՝ պալատին վրայ հոգ տանել։ Կու տային նաև կուսակալներուն, ինչպէս տուած են կայսերք նաև մեր իշխաններէն Սմբատ Բագրատունիին, որ Արաբացւոց աւարներէն շատ ընծաներ ու ձիեր պարգև խաւրեց կայսեր, և եղաւ Հայաստանի կուսակալ՝ Կուրապաղատ անուամբ։ Նոյնպէս նաև Վարազտիրոց և Համազասպ ունեցան այս պատիւը։ Բայց ասոնցմէ կան նաև ուրիշներ ալ Հայոց ազգէն, որոց անունները աւելորդ է մէկիկ մէկիկ յիշելը, որոնք արժանի եղան այս պատուոյն իրենց արդեանցը կամ կայսերաց սիրելի ըլլալնուն համար։

257 . Պատրիկ անունը որուն կը տրուէր։

Պատրիկ անունը որ եկած է Յունաց լեզուէն*, հին ատեն Հռոմայեցիք այլևայլ անձանց պատուոյ համար կու տային. բայց Կոստանդիանոսի ատեն սկսաւ նաև գաւառապետի կամ կուսակալի տեղ գործածուիլ։ Այս անունը Յունաց կայսերք մեր ազգէն ալ շատերուն տուած են, թէ իբրև հրամանատար աշխարհին, ինչպէս էր Աշոտ պատրիկը, և թէ պատուոյ համար, որոց մէջ ամենէն երևելի եղաւ Անդովկ Սիւ-

* Պատրիկ անուան Յոյները πατρίκιος (պատրիկիոս) և Լատինացիք patricius (պատրիկիուս) կ՚ըսեն։

նեաց իշխանը, զոր մեծն Թէոդոս պատրը-կաց պատրիկ անուանեց։

258. Մագիստրոս անունը ուսկի՞ց ե-լած է։

Այս անունը Հռոմայեցոց մաղձեղեւ բա-ռէն ելած է, և ով որ մագիստրոս կ՚ըլլար Հռոմայեցոց մէջ, մեծ պատիւ և իշխանու-թիւն կ՚ունենար Թագաւորին պալատին մէջ, իբրև Թագաւորին ներքին խորհրդա-կան։ Առջի բերան մէկ հոգի միայն կ՚ըլլար մագիստրոս, բայց վերջէն ինչուան տասը-ներչորս հատ կ՚ըլլային. որոց պատիւը ա-ռաջ պատրիկներուն հաւասար էր, բայց ետքերը անոնցմէ ալ վեր անցաւ, սակայն կուրապաղատին պատուէն միշտ վար էր։ Մագիստրոսութեան պաշտօնը երկու տե-սակ էր, մէյմը զինուորութեան մէջ, մէյմ՚ալ Թագաւորին պալատին մէջ։

Մագիստրոսութեան պատուոյն հասան ոմանք մեր ազգէն ալ տասներորդ դարուն մէջ. որոց մէջ անուանի եղաւ Գրիգոր մագիստրոս, որ մատենագրութեամբն ալ երևելի եղաւ։

259. Դուքս կամ տուկ անունը ո՞ր լե-զուէն ելած է։

Լատին տուքս բառէն՝ որ առաջնորդ ըսել է. և առջի բերան զօրաց՝ առաջնորդը՝ կամ զօրագլուխը այն անուամբ կը կոչէին. բայց Զ դարէն ետքը սկսան նաև գաւառապետ-ները այսպէս անուանել։ Դքսութեան իշ-խանութիւնը ունեցան նաև ոմանք Հայոց

ազգէն, որոց մէջ նշանաւոր են Գրիգոր Մագիստրոս և իրեն հայրը։

260. Կոմս կամ Կոմէս անունը որո՞ց կը տրուէր։

Կոմս բառը հռովմայեցւոց քօմէս բառէն ելած է, որ կը նշանակէ ուղեկից. բայց ետքերը իշխանութեանց կարգը անցաւ Թագաւորին պալատին ու տէրութեան մէջ. և կը տրուէր աւելի գաւառապետներուն և քաղաքապետներուն. ուստի Դ. դարուն երբոր Հայաստան երկու բաժնուեցաւ, Յոյնք իրենց բաժնին մէջ դրած գաւառապետները և քաղաքապետները կոմս կամ կոմէս կ'անուանէին։ Այս անունը Յոյնք իբրև պատուանուն տուած են նաև ուրիշ Հայերուն։

261. Հիւպատոս անունը որո՞ւն կը տրուէր։

Հիւպատոս կամ Հիւպատ բառը որ Յունաց Իպադոս անունէն առնուած է, մեծ իշխանութեան անուն էր, զոր կայսերք տուած են նաև ոմանց մեր ազգէն իբրև պատուանուն։

262. Վեստ պատուանունը որո՞ւն կու տային։

Այս անունը որ Յունարէնէ առնուած է, կուտային իշխաններու և ազնուականներու, ինչպէս ԺԱ դարուն կը յիշուին նաև մեր ազգէն, որոց մէջ ամենէն հռչակաւորը եղաւ Վեստ Սարգիս, որ թէպէտ շատ շինութիւններ ըրաւ, բայց դաւաճանու_

*թեամբ Անի քաղաքը Յունաց կայսեր մատնելուն համար, երկուամբք չարահամբաւեցաւ բոլոր ազգին մէջ:*

263. *Սեւաստոս անունը ինչ լեզուէ ելած է:*

*Սեւաստոս Յունարէն բառ է, Լատիներէն՝ աւկուստուս կ'ըսեն և մենք Օգոստոս, որ պատուոյ և մեծարանաց անուններ են, և* ԺԱ ԺԲ *դարուն ունեցան ոմանք մեր ազգէն ալ այս սեւաստութեան պատիւը, մանաւանդ 'ի Կիլիկիա:*

## ԳԼՈՒԽ Ժ.

## ԶԻՆՈՒՈՐՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ:

### ՅՕԴՈՒԱԾ Ա.

*Զօրք. Զօրավարք. Զէնք:*

264. *Ո՞վ կարգաւորեց Հայոց զինուորութեան արհեստը:*

*Նախ մեծն Տիգրան, որ հեծեալ, ձիաւոր, պարսաւոր, աղեղնաւոր և ուրիշ դաս դաս զօրքերուն կարգ դրաւ: Երկրորդ Վաղարշակ, որ որպէս զի Հայաստանը թշնամիներէն ազատ պահէ՝ անոր այլեայլ կողմերուն զատ զատ գունդերով կողմնակալներ դրաւ, և անոնցմէ ոմանք մեծ իշխանութիւն ունենալնուն, և իրենց սահմանին մէջ թագաւորին իբրև փոխանորդ սեպուելուն համար, կը կոչուէին նաև բդեաշխ, ինչպէս էր Աղձնեացը, Գուգարացը:*

**265.** Վաղարշակ Հայաստանը քանի՞ կուսակալութիւն բաժնեց։

Վաղարշակ Հայաստանը չորս կուսակալութիւն կամ ճշդիւ ըսելով եօթը կուսակալութիւն կամ կողմնակալութիւն բաժնեց. արեւելեան հիւսիսային կողմին կուսակալ դրաւ Առանի ցեղը. արեւելեան կողմին Սիւնեաց ցեղը, արեւելեան հարաւային կողմին Կադմեան ցեղը. արեւմտեան հիւսիսային կողմը Բագրատունեաց ցեղը. արեւմտեան կողմը Անգեղեան ցեղը. արեւմտեան հարաւային կողմը Աղձնեաց բդեշխը ինչուան Տիգրիս գետոյն եզերքը Ասորեստանի սահմանակից։ Իսկ հիւսիսային կողմին կուսակալ դրաւ Գուգարաց բդեշխը։ Ասոնցմէ Սիւնեաց և Կադմեան ցեղերուն կուսակալութիւնները Արամ նահապետէն 'ի վեր հաստատուած կային, իսկ մէկալները Վաղարշակ Պարթեւը հաստատեց։ Իւրաքանչիւր կուսակալներ ունէին առանձին գունդեր գրեթէ տասնական հազար կամ ալ աւելի, Հայաստանը թշնամեաց յարձակմունքէն պահելու համար։ Առանի ցեղին կուսակալութիւնը շատ չյիշուիր մեր գրոց մէջ, և կ'երեւի թէ պատճառը այս էր, որ Աղուանից աշխարհը՝ որոյ վրայ ինքը կուսակալ դրուած էր, միշտ Հայոց ձեռքը չմնաց։ Յայտնի չէ թէ որչափ ատեն տեւեց Վաղարշակին այս գեղեցիկ կարգաւորութիւնը. բայց կ'երեւի թէ եօթը կուսակալութեանց թիւը ետքերը պակսեցաւ։

266. Արտաշէս Բ ինչ փոփոխութիւն ըրաւ զինուորական կարգին մէջ։

Արտաշէս Բ իր որդւոցը խռովութիւնները խաղաղելու համար, զօրաց իշխանութիւնը չորս մաս բաժնեց. արեւելեան, արեւմտեան, հիւսիսային կողմի զօրքերուն զօրավար դրաւ իր իրեք որդիքը, եւ հարաւային կողմին իր Սմբատ դայեակը, եւ զանոնք իբրեւ կողմնակալ դրաւ այս չորս կողմերուն, որոնք պէտք եղած ատենը կը ժողվէին իրենց կողմնակալութեան սահմանին մէջ եղած զօրքը, ու միաբան թշնամւոյն դէմ կը պատերազմէին։

267. Տրդատ ինչ նորոգութիւններ ըրաւ զինուորական կարգին մէջ։

Տրդատայ ժամանակը Վաղարշակայ կարգաւորութիւնը վերջացեր էր, այս ինքն Հայաստանի այլեւայլ կողմերը զատ սպարապետ ու կողմնակալ ըլլալը, եւ մէկ զօրավար կ'իշխէր բոլոր զօրաց վրայ, որ էր Արտաւազդ Մանդակունին։ Բայց երբոր Արտաւազդ մեռաւ, Տրդատ նորէն հաստատեց առջի կարգը, եւ Ստեփաննոս Օրբելեանին ըսածին նայելով, արեւելեան կողմին կուսակալ եղաւ Սիւնեաց ցեղէն 21 իշխաններով, արեւմտեան կողմին Անգեղտան ցեղէն 22 իշխաններով, հիւսիսային կողմին Գուգարաց ցեղէն 22 իշխաններով, եւ հարաւային կողմին Կորդուաց ցեղէն 21 իշխաններով *։

* Խորենացին Ստեփաննոս Օրբելեանէն տարբեր

268. Տրդատայ ըրած կարգաւորութիւնը որչափ տևեց։

Տրդատայ ըրած կարգաւորութիւնը տևեց ինչուան Արշակունեաց թագաւորութեան վերցուիլը, անկէց ետքը երբոր Պարսիկք սկսան Հայաստանի վրայ տիրել՝ ամենևին յիշատակութիւն չկայ այս չորս գունդերուն վրայ. և Հայոց զինուորութիւնը Պարսից իշխանութեան տակն անցաւ, որ շատ անգամ Հայոց հետևակ զօրքերովը և ընտիր ձիաւորներովը կը պատերազմէր իր թշնամեացը հետ, և կը յաղթէր։

269. Պատերազմի ատեն Հայք զօրքերը ինչպէս կը շարէին, և բանակին պահպանութեանը համար ինչ զգուշութիւններ կ՚ընէին։

Սովորաբար իրեք առ[illegible] կը բաժնէին, որ կ՚ըսուէր աջ և ահեակ կողմն կամ թև, և միջոց կողմն, միջոցի գունդ, միջին վայր։ Երբոր բանակը տեղ մը կենար, չորս դին պատնէշով կը պատէին, զանազան կողմերէն դռներ թողլով, բայց ասկէ՝ բանակին չորս կողմը փոս ալ կը բանային աւելի ապահովութեան համար։

Շատ անգամ բանակին առջևը վահան-

կը զրուցէ, թէ արևմտեան կողմին գնդին զօրավար դրաւ Բագարատ ասպետը Բագրատունեաց ցեղէն. հիւսիսային զօրքին Միհրանը որ Վրաց առաջնորդ ու Գուգարաց բդեշխն էր, արևելեան գնդին Մանաճիհր Ռշտունին։

նետով կը ծածկէին բերդի մը պէս, որ կ'ըսուէր վահանափակ. ու երբոր զօրքը նեղը կը մտնէր կ'երթար անոր տակը կ'ամրանար, իբրև ամուր բերդի մը մէջ։ Այս կերպը Յոյներէն մտաւ։ Իսկ զօրքը ճամբայ ընելու ատեն կային առաջապահ, վերջապահ, կողմնապահ գնդեր, թշնամիէն բանակը ապահով պահելու համար։

270. Ի՞նչ զէնք կը գործածէին պատերազմի ատեն։

Սովորական զէնքերն էին սուր միասայրի կամ երկսայրի, այսինքն մէկ կամ երկու բերնով սրած, թուր, նրան, վաղր կամ վաղակաւոր, որ սուրին այլևայլ տեսակներն են։ Կը գործածէին նաև գեղարդն, նիզակ, տուրն, աղեղն, վահան, սակր կամ սակուր, ձիգս, պարսաքար, և այլն*։ Այս զէնքերը ունեցող զինուորները մասնաւոր անուամբ կը կոչէին սուսերաւորք, վաղակաւորք կամ վաղրաւորք, նիզակաւորք, տուրնա-

* Նրան այսինքն պզտի սուր (թճ. խանչէր)։ Վաղր կամ վաղակաւոր մեծ սուր (եաթաղան). սակր կամ սակուր երկու կողմով տապար (պալթայ). իսկ ձիկոկ'երևի թէ մէկ կողմով տապար է, գլուխն ալ սրածայր երկաթ մը ունենալով։ Սուսեր ճանկաւոր երկաթ տէգին ծայրը խոթած (ղըղղըն). Գեղարդն որ կ'ըսուի նաև փէգ՝ է սրապիզանձ (ֆոգըլաճայ յնող) երկաթէ սրածայր գործի, երկայն փայտէ կոթի վրայ անցուցած (մըզրագ, սիւնկիւ). գեղարդին պզտի տեսակին կ'ըսուի Նիզակ որ ձեռքով կը նետուի (հարպա)։

ւորք՝ կամ ռազմաւորք, աղեղնաւորք, վահանաւորք, կամ վահանակիրք, սակրաւորք։

Շատ անգամ նիզակները ու նետերը թոյնի մէջ կը խոթէին, ինչպէս զեռուններու, օձի ու վիշապի արեանը մէջ, որով կ՚ըսուէր ճիգանք վիշապամոխ, կամ արեամբ օձից մխեալ, և այլն։

Աղեղնաւորութեան ու նետաձգութեան կողմանէ խիստ երևելի էր մեր ազգը, ինչպէս կը գովեն նաև Երոդոտ ու Քսենոփոն։

271. Ջինուորները ինչ զրահ կը հագնէին։

Ջինուորաց զրահներն էին երկըթէ կամ պղընձէ սաղաւարտ, լանջապան, բազպան, զանկապան, և այլն։ Հեծեալները զիներնէն ինչուան ոտքերնին բոլոր զրահ կը հագնէին, նոյնպէս նաև իրենց ձիերը. և խիստ անուանի էին Հայոց հեծեալները։ Իսկ աղեղնաւորները և որոնք որ հեռուանց կը պատերազմէին, աւելի թեթև կը հագնէին։

272. Զօրաց թիւը որչափ էր։

Սովորական կամ որոշուած զօրաց թիւն էր 120,000. բայց այլևայլ պատերազմի ատեն պէտք եղածին չափ կը ժողվըւէր. Խորենացին Արամին համար կ՚ըսէ թէ 50,000 ընտիր զօրք ժողվեց Նիւքարին դէմ երթալու համար. իսկ Արտաշէս Ա.ին զօրքը այնչափ շատ էր, որ իրենց նետ նետելովը արևը կը մթագնէր, ինչպէս կ՚ըսէ Խորե

նացի Եւագրիոս Յոյն պատմիչէն առած : Բիւզանդ Արշակ Բ.ին ատեն ինչուան 60 բիւր կը դնէ, որ կ՚ընէ 600,000. բայց կ՚երևի թէ չափազանցութեամբ ըսուած է, կամ թէ բիւր ըսելով ինքը տասը հազար չհասկընար : Վարդանանց ատեն 66,000. իսկ Բագրատունեաց ժամանակ ինչուան 80,000. — 100,000 զօրքով բանակ կ՚ելլէր :

273. Ի՞նչ մասնաւոր անուն ունէին գունդերը :

Կային գունդեր որ մասնաւոր անուն ունէին. ինչպէս են Ազատագունդ փաղա որ ժողվըւած էր բոլոր նախարարաց տղոցմէ :

Այրարատեան գունդ, որ Այրարատ նահանգէն կը ժողվուէր :

Մատենիկ գունդ, որ Պարսից մատեան կամ անմահ ըսուած գունդին նման էր, և քաջութեան կողմանէն ալ երևելի:

Մարդպետական գունդ, Մարդպետին զօրքերն էին :

Մարզպետական գունդ, որ մարզպետութեան ցեղէն կը ժողվուէր :

Տանուտիրական գունդ, որ կը ժողվուէր ոստանկաց աշխարհէն, որ է Ծոփք գաւառը Չորրորդ Հայոց մէջ :

Կ՚երևի թէ ասոնցմէ զատ կային նաև ուրիշ գունդերու անուններ ալ նախարարութիւններէն կամ երկրին անունէն առնուած, ինչպէս են վերոյիշեալները, բայց մեր պատմիչները չեն յիշեր :

274. Զօրաց գլխաւորներուն մասնաւոր ի՞նչ անուններ ունինք։

Զօրավար կամ զօրապետ կամ զօրագլուխ կ'ըսուէր այն որ բոլոր բանակին կ'իշխէր, զոր Խորենացի կը կոչէ նաև միագլխապետ։ Իսկ սպարապետ (այսինքն սպայապետ) անունը որ պարսից սիպահի բառէն եղած է, որ ըսել է զօրք կամ սպայ, թէպէտ և շատ անգամ զօրավարի տեղ ալ գործածուած է, բայց յատկապէս զօրավարին չէր տրուէր, հապա կ'ըսուէր սպարապետ արևելեան կամ արևմտեան, հիւսիսային կամ հարաւային զօրաց։

Սպասալար (այսինքն սպայից սալար կամ սաղար, որ ըսել է զօրաց առաջնորդ), մեր մէջը շատ գործածուած չէ, և կը դրուի զօրավարի տեղ։

Սաղար, որ հետևակ զօրաց գնդապետներու կը տրուէր, երբեմն նոյն իսկ հետևակ զօրաց տեղ ալ դրուած է։

Ստրատեղատ բառը Յունարէնէ առնուած է որ զօրավարի նշանակութիւն ունի, բայց մեր մէջը քիչ գործածուած է։

275. Այս անուններէն զատ ուրիշ ի՞նչ զինուորական պատուոյ անուններ ունինք։

Այս անուններէն զատ ունինք բիւրաւոր որ 10,000 զօրքի կ'իշխէ. հազարաւոր կամ հազարապետ. իսկ հարիւրապետ, յիսնապետ ու տասնապետ անունները իրաւ մեր ազգային պատմիչներու մէջ չկան, բայց հաւա-

նական կ՚երևի թէ մեր զօրաց մէջն ալ կային ասոնք կամ ասոնց նման բաժան-մունք, ինչպէս ուրիշ պրկելեան ազ-գաց ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Գործիք քաղաք առնլոյ .

276 . Քաղաք առնելոյ համար սովորա-բար ի՞նչ հնարք կը բանեցընէին ։

Սովորական հնարքն էր երկայն ժամա-նակ քաղաքը պաշարել ու սովով առնուլ . կամ պարսպին հիմունքը քակել ու կործա-նել ։ Հոս գիտնալու բան է որ մեր ազգը օտարաց վրայ շատ յարձակմունք չընե-լուն, քաղաք պաշարելու համար մասնաւոր գործիք չեն յիշուիր մեր մէջ, բաց ՚ի քարա-ձգէն, այն ալ ետքերը սկսան գործածել ու-րիշ ազգերէն օրինակ առնլով ։

277 . Ի՞նչ տեսակ գործի է բաբանը ։

Մեծ մեքենայ մի էր գերաններով շինած, և վրայէն չուանով խոշոր քար մը կախած, ծայրը սուր ու երկաթապատ, զոր մեքե-նայէն հեռացընելով կը թողուին զինուոր-ները պարսպին վրայ, որ ահագին ուժով ստէպ զարնելով կը փլցընէր պարիսպը ։ Անուանի է Մանազկերտ ու Բաղէշ քա-ղաքները առնլոյ համար Տուղրիլին գոր-ծածած ահագին Բաբանը, որոյ քարը 400 հոգի կը քաշէին ։ Այս ահագին բաբանը

Բաղէշ քաղքին պաշարման ատեն փռանգ ազգէն մէկը նոր գիւտով մը այրեց ու քաղաքն ալ պաշարմանէն խալըսեց ։

278. Ո՞րն է փիլիկուանը ։

Փիլիկուանը բաբանի նման գործիք մի է, Թերևս անոր պզտիկը, որով Մանազկերտ քաղքին պաշարման ատեն ճարտար Հայ քահանայ մը Թշնամւոյն բաբանին զարնուածքը կը փճացընէր իր փիլիկուանին քարը ճիշդ անոր քարին դիմացն ուղղելով, որով քարը Թշնամւոյն վրայ կ՚իյնէր ։

279. Ո՞րն է Էշ ըսուած գործին ։

Էշ ըսուածը անուաւոր գործիք մի էր, զոր իրեք հոգի կը քաշէին, և պարսպին մօտեցընելով տակը կը մտնէին, ու կացիններով մուրճերով պարսպին հիմունքը կը քակէին ։ Ասով Շապուհ Պարսից Թագաւորը առեց Տիգրանակերտ քաղքին, մեծին Տիգրանայ շինած ամուր պարիսպները փլցնելով ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

*Տէրութեան նշանին ու թագաւորին վերտառութեանց վրայ.*

280. Հայոց տէրութեան նշանը ի՞նչ էր ։

Արշակունեաց և Բագրատունեաց ատեն տէրութեան նշանը արծիւ էր, իսկ Ռուբինեանց ատենը առիւծ ։ Պատերազմի ատեն իւրաքանչիւր գունդ զատ զատ նը-

չաններ ու դրօշներ կ'ունենար, բայց յայտնի չէ թէ այս նշանները ինչ տեսակ էին։ Արշակ Բին ատեն՝ որ զինուորութեան կարգը նորոգեց, կը յիշէ Բուզանդ, աղեղնադրօշք, արծուենշանք, և վարժեակնիշք. Նոյնպէս և Մեսրոպ պատմիչը նոյն Արշակայ պատմութեան մէջ կը յիշէ արծուենշանք, աղեղնադրօշք։ Դաշանց Թուղթին մէջ կը յիշուին դրօշք դաղմատականք և վիշապագլուխք, զոր մեծն Կոստանդիանոս տուաւ Տրդատայ զօրաց։

281. Պատերազմի երթալու ատեն բանակին դիմացէն ինչ կը տարուէր։

Քրիստոնէութեան ատեն բանակին առջևէն խաչադրօշ կը տանէին, և սովորութիւն կար զօրաց հետ մէկտեղ նաև քահանայներ տանելու, որոնք բանակին մէջ պատարագ կ'ընէին։ Այս սովորութիւնը Բագրատունեաց վերջերը, երբոր Հայաստան Պարսից և իսմայելացւոց ձեռքէն անցաւ, վերցուած էր. բայց Ռուբինեաց ատեն նորէն հաստատուեցաւ Զաքարէ սպասալարին խնդիրքովը ԺԳ դարուն սկիզբը։

282. Թագաւորները ինչ վերտառութիւն կամ տիտղոս կը բանեցընէին։

Մեր թագաւորները ուրիշ արևելեան ազգերուն պէս վսեմ ու հպարտ վերտառութիւններ չէին գործածեր հապա պարզ կերպով իրենք զիրենք արքայ Հայոց կամ արքայ Հայոց Մեծաց միայն կ'անուանէին. ինչպէս յայտնի կ'երևի Վաղարշակայ,

Տրդատայ, Աբգարու և ուրիշ թագաւորներուն թղթերուն մէջ։ Իսկ Բագրատունեաց ատենը սկսան իրենք զիրենք շահան շահ կամ շահնշահ անուանել, այս ինքն արքայից արքայ, զոր տաճկի ոստիկանները դրին, Անւոյ քաղքին թագաւորը մէկալ մանր թագաւորներէն որոշելու համար. բայց ետքէն սովորութիւն ըլլալով ամէն Բագրատունի թագաւորներն ալ իրենք զիրենք շահան շահ կ'անուանէին։ Ռուբինեանք ալ թագաւոր Հայոց կամ թագաւոր ամենայն Հայոց կ'անուանէին. որոնց առանձին պատուանուն կոչուածն էր Սուրբ թագաւոր։

283. Թագուհւոյն վերտառութիւնն ի՞նչ էր։

Պարզ կերպով տիկին միայն կը կոչուէր, և իրեն իշխանութիւնը տիկնութիւն։ Թագուհի անունը խիստ քիչ գործածուած է. իսկ դշխոյ և բամբիշ հազիւ երբեմն տրուած են մեր տիկին բառին տեղ։

# ԳԼՈՒԽ ԺԱ.

## *Ազգային զգեստուց և սովորութիւններու վրայ.*

284. Թագաւորները ի՛նչ զգեստ կը հագնէին։

*Մեր Թագաւորները Պարսից, Մարաց ու Բաբելացւոց Թագաւորներուն պէս լայն երկայն և ճոխ զգեստներ կը հագնէին, մէջքերնին ոսկի կամար՝ մարգարտով ու գոհարներով զարդարած, վրանին սամոյր, կուրծքերնին ապիզակ (պատուանշան), գլուխնին ոսկի թագ մարգարտով ծեփած, վրան ոսկիէ ու արծըթէ ականակուռ զարգմանակ (չէլէնկ)։ Թագին վրայ կը դրուէր տէրութեան արծիւ նշանը, և Թագին առջը կար հանգոյց կամ կապ մը որ կ'ըսուէր աշխարհական հանգոյց, թերևս այս նշանակութեամբ, որ Հայաստան աշխարհը իբրև աւանդ մը իր ձեռքը յանձնուած է։ Քրիստոնէութեան ատեն Թագին վրայ խաչ ալ կը դնէին։ Թագաւորը կը գործածէր նաև խոյր (քավուք) որ Թագէն զատ է, ու կ'երևի թէ տան մէջ առանձին եղած ժամանակ գլուխը կը դնէր, որ ոսկեթել բեհեզով կը շինուէր։ Թագաւորները մօրուքնին ու մազերնին երկայն կը թողուին*, ու մազեր-*

* Կ'երևի թէ Կիլիկեցւոց ատեն մեր Թագաւոր-

նին մարգարտէ շինած վարսակալով (մազի կապ) մը կը կապէին ու կը զարդարէին ։ Ոտուընին նախարարներուն պէս կարմիր կօշիկ կը հագնէին . միայն Թագաւորին կօշկին վրայ ասղնեգործած կ'ըլլար արծիւ՝ կտուցով օձ մը բռնած ։ Երբոր Թագաւորները զբօսանքի համար դուրս կ'ելլէին , կարմիր վրան (չատըր) կը գործածէին , վրան արծիւներ բանած ։

285 . Թագաւորին տիկինը ի՞նչ զգեստ կը հագնէր ։

Թագաւորին տիկինը Թագաւորին պէս փառաւոր զգեստներ կը հագնէր . երկայն պատմուճան , գլուխը վարսակալ Թագ և պսակ կը դնէր գոհարներով զարդարած , ձեռքը ապարանջան , ականջը օղ , և այլն ։ Նոյնպէս նաև իշխանաց կանայքն ալ գլուխնին Թագ կը դնէին ։ Կ'երևի թէ տիկինը Թագին վրայէն բանած վառ կամ շղաշատեռ (պիւրիւնճիւկ) մը կը ձգէր կռնըկէն վար 'ի կախ ։

286 . Ուրիշ մեծամեծ պաշտօնատէրները ի՞նչ զգեստ կը հագնէին ։

Թագաւորին երկրորդը գլուխը յակինթներով զարդարած պսակ կը դնէր , երկու ականջը օղ , մէկ ոտքը կարմիր կօշիկ . ոսկի գօտի և պատառաքաղ կը գործածէր , և

ները իրենց մօրուքնին կ'ածիլէին , անոր համար կը գանգատի Լամբրոնացին ըսելով , " Աճեցուցէք զհերս և զմօրուս զինչ ձեր հարքն "։

ոսկի գաւաթով կը խմէր։ Այսով կ'երեւի թէ ոսկի գդալ և պատառաքաղ գործածելը և ոսկի գաւաթով խմելը միայն Թագաւորին ու Թագաւորին երկրորդին տրուած էր, և ուրիշ իշխանները չէին կրնար գործածել։

287. Թագադիր ասպետը ի՞նչ պատուոյ զգեստներ ունէր։

Թագադիր ասպետին համար կ'ըսէ Խորենացի, որ Վաղարշակ թոյլ տուաւ արքունեաց ու Թագաւորին պալատին մէջ պտըտելու ատեն իրեք կարգ մարգրտով շարած վարսակալ դնել գլուխը՝ առանց ոսկւով և արծաթով զարդարելու։ Բայց Արտաշէս Բ իր Սմբատ դայեկին՝ որ նաև Թագադիր ասպետ էր, ուզելով մէկ շնորհք մը ընել, հրաման տուաւ որ բաց 'ի ականջին երկու օղերէն և կարմիր կօշկէն ուրիշ ամէն բանք Թագաւորին երկրորդին պէս գործածէ։

Ինչպէս որ Թագաւորին համար ըսինք, նոյնպէս նաև ուրիշ ամէն մեծամեծները լայն զգեստներ կը հագնէին, վրայէն պատմուճան՝ որ ինչուան ծունկերը կը հասնէր, տակէն վարտիք խորշ խորշ ծալլած, մէջքը գօտի ու վրայէն սուր կախած։

288. Նախարարները ի՞նչ զգեստ կը հագնէին։

Նախարարներուն զգեստին վրայօք մասնաւոր տեղեկութիւն մը չունինք Խորենացիէն. բայց Եղիշէ Վասակ Սիւնիին համար, որ մարզպանեաց ատեն Հայաստանը

կը կառավարէր, կ'ըսէ թէ վարտակով կը գործածէր, գլուխը ոսկեթել խոյր. մէջքը ոսկիէ գօտի մարգրտով եւ գոհարներով զարդարած, ականջը օղ, վիզը գումարտակ (կերտանըլըզ), կօշակը սամոյր:

289. Պրոկոպիոս Յոյն պատմիչը ի՞նչպէս կը ստորագրէ Հայոց նախարարներուն զգեստը:

Պրոկոպիոս փոքր Հայոց նախարարներուն զգեստները խիստ գովելով, կ'ըսէ թէ կը հագնէին բրդէ քղամիդ ծիրանեգոյն ոսկեթել զգեստ, որոյ ծայրը ոսկիէ կոճակ ադամանդով զարդարած, ուսկից կախուած էր ոսկիէ շղթայով իրեք պատուական յակինթ քար: Պարեգօտնին՝ մետաքսէ ծալք ծալք շինուած ու ոսկւով բանած. և կարմիր ռունապաններ (թօզլուգ), որոնք միայն Յունաց կայսրը և Պարսից թագաւորը կը գործածէին:

290. Ուրիշ ի՞նչ ազգային սովորութիւններ կը յիշուին մեր պատմիչներուն մէջ:

Ա. Երբոր մէկը իշխանութեան հասնէր, սովորութիւն կար որ փառաւոր մատնի կուտային:

Բ. Կը յիշուի թուղթը կամ հրովարտակը մատնիով կնքելը, որոյ վրայ փորած կ'ըլլար գրողին անունը, և կնիքը կ'ըսուէր վարազագրոշմ:

Գ. Խորենացին կը դնէ թէ թագաւորին փեսայութեան օրը, թագաւորը պալատը մտնելու առեն ստակ կը սփռէին, իսկ թա-

գուհայն հարսնութեան սենեկին մէջ մարգարիտ կը ցանէին, և թագուհւոյն ծիրանի կը հագցընէին և գլուխը թագ կը դնէին։ Թէպէտ և մասնաւոր յիշատակութիւն չըկայ, բայց ասկէց յայտնի կ'երևի թէ նաև ժողովրդեան մէջ ալ սովորութիւն կար հարսնիքի օր սատակ սփռել, որ ինչուան հիմա մնացած է մեր ազգին մէջ։

Դ. Իբրև տխրութեան կամ սգոյ նշան, կար նաև մեր ազգին մէջ օձիքը և զգեստնին պատռելու սովորութիւնը։

Ե. Պատանի տղոց գլուխը կը գերծէին և միայն ցցունք (փէրչէմ) ու գէս կը թողուին. իսկ երբոր մեծնային երկայն մազ կը թողուին։

Զ. Եկեղեցականք ազատ էին տէրութեան ամէն տեսակ տուրքերէն, ու երբոր թագաւոր մը կամ իշխան մը զրկութեան հարկի տակ կը ձգէր, իրաւունք ունէին դէմ բողոքելու։ Այս սովորութիւնը կար նաև կռապաշտութեան ատենը, որ քուրմերը և անոնց երկիրները ազատ էին տէրութեան հարկէն։

291. Մեր ազգին մէջ գերի ծախելու սովորութիւնը կա՞ր թէ չէ։

Ոչ երբէք մեր մէջ մտած է հիւսիսային ազգաց այս վայրենի ու անգութ սովորութիւնը. մանաւանդ թէ պատերազմի մէջ ձեռք ընկած գերիներն ալ ազատաբար կ'ապրէին Հայաստանի մէջ, և կամաց կամաց իրենք ալ ազգային իրաւունք կը ժառանգէին։

292. Ազգային ինչ հանդիսաւոր տօներ կային ։

Կռապաշտութեան ատեն տարեգլխին՝ Թագաւորը բոլոր մեծամեծներովը ու խուռն բազմութեամբ ժողովրդեան մեծ հանդէսով կ'երթար, ամանորաբեր տօնը՝ նոր տարւոյն և նոր պտուղներուն համար՝ Բագրևանդայ Բագուան գեղին մէջ կատարելու, ուր էր Մաժան քրմապետին վերջին Տիգրանայ եղբօրը գերեզմանը, որոյ վրայ շինուած էր Արամազդայ վանատրի բագին մը, որոյ զոհերէն ամէն անցնող դարձողները կը վայելէին ։ Ասոր համար էր որ վանատուր անունը կը տրուէր ։

Այս տօնը Վաղարշ Թագաւորը հաստատեց, որ ետքը քրիստոնէութեան ատեն ալ կը կատարուէր, և Թագաւորը մեծամեծներով և ժողովրդով կ'երթար Արամազդայ բագնին տեղ շինած Ս. Գրիգոր Լուսաւորչի եկեղեցին, Յովհաննու Կարապետի և Աթանագինեայ տօնը կատարելու համար, որոց նշխարները հոն ամփոփած էին ։

293. Բաց ասկէ ուրիշ ինչ հանդիսաւոր տօներ կային ։

Բաց ասկէ Թագաւորը տարին չորս անգամ մեծամեծներով ու ժողովրդով կ'երթար Աշտիշատ քաղքին Վահէվահեան մեհեանը ։ Այս մեհեանը սուրբն Գրիգոր Լուսաւորիչ կործանեց, և անոր տեղ շինեց պզտի եկեղեցի կամ մատուռ մը, որ

ընդունեցաւ Աշխարհամատեան բոլոր Հայաստանի մէջ առաջին մատուռը ըլլալուն. որոյ մէջ դրած սրբոյն Յովհաննու և Աթանագինեայ նշխարքներէն ։ Եւ Թագաւորը քրիստոնէութեան առթին նոյնպէս տարին եօթը անգամ մեծամեծներով, եպիսկոպոսներով, քահանաներով ու ժողովուրդով կ'երթար այս եկեղեցին, և հոն կաթողիկոսը մեծահանդէս պատարագ կը մատուցանէր Թագաւորին ու ժողովրդեան առաջիկայութեամբը ։

Այս եկեղեցւոյն յիշատակն է որ ինչուան հիմա կը կատարենք զատկէն երկու շաբաթ ետև Աշխարհամատրան կիրակի անուամբ ազգային տօնախմբութեամբ ։

294 . Թագաւորին Թագադրութեան օրը ինչ հանդէս կ'ընէին ։

Թէպէտ և մասնաւոր յիշատակութիւն մը չկայ թէ ինչ հանդէսներ կ'ընէին, բայց այս յայտնի է թէ մեծ ուրախութեան մէջ կ'ըլլար բոլոր Հայաստան ։ Իսկ քրիստոնէութեան ատեն քառասուն յիսուն եպիսկոպոսի չափ կը ժողվէին ու մեծ հանդիսով և տօնախմբութեամբ կ'օծէին Թագաւորը, և կը նստեցընէին զինքը Թագաւորական աթոռին ու պատուական գահին վըրայ, և կաթողիկոսն ու բոլոր իշխանները անոր առջևը հաւատարմութեան և միամիտ ծառայութեան համար երդում կ'ընէին ։ — Բագրատունեաց ատեն մեր Թագաւորը երբեմն Թագը Յունաց կայսրէն և կամ ամի-

բազկատէն կ'առնուր։ Երբոր մէկը Թագաւոր նստէր մէկ կէնփրին դէմքը կը նկարէին։

295. Թագաւորական Թագը ո՞ւր կը պահուէր.

Թագաւորական գանձին մէջ. և անով կը պսակէին Թագաւորները։ Կը յիշէ Կիրակոս որ մեծին Խոսրովու փառաւոր և հրաշալի Թագը՝ որոյ նման ուրիշ Թագաւորներ չունէին, և անշուշտ անով կը պսակուէին օծման օրը իրմէ վերջի Թագաւորները. Հայաստանի խեղճութեանը ատեն Վրաց երկիրը կը պահուէր տեղւոյն ամրութեան համար, ուր ինչուան Կիրակոսին ատենը կեցեր էր, և ընկեր էր Վրաց Թագաւորներուն։ Այս Թագը որ կ'երևի թէ անգին և մեծամեծ գոհարներով զարդարած պիտի ըլլայ, ԺԳ դարուն մէջ Վրաց Ռուզուդան Թագուհին ուրիշ պատուական ընծաներով Թաթարաց խանին տուաւ։

296. Թագաւորին մահուանը համար ի՞նչ հանդէսներ կ'ընէին հեթանոսութեան ատեն։

Խորենացին Արտաշէս Բին համար կը պատմէ թէ երբոր մեռաւ, իր սիրելի կանանցմէ, հարճերէն և մտերիմ ծառաներէն շատը իրենք զիրենք սպաննեցին։ Դրեր էին մարմինը ոսկիէ դագաղի մէջ, բեհեզէ անկողնի վրայ պառկեցուցած, ու երկայն ոսկեթել զգեստ մը հագցուցած, գլուխը Թագ, և իրեն ոսկի զէնքը դագաղին առջին դրած, և դագաղին չորս կողմը

քրմին որդիքը և ազգականները. անոնցմէ ետքը զինուորական կարգի պաշտօնեայք, վերջը նախարարները իրենց գունդերովը՝ բոլորն ալ զէնք հագած: Դագաղին առջեւէն պղնձէ փող կը զարնէին, և ետեւէն սեւ զգեստ հագած լալկան աղջիկներ, անոնց ետեւէն ալ անթիւ ժողովուրդ, և այսպէս հանդէսով տարին ինչուան գերեզմանը, և հօն շատերը թագաւորին սիրոյն համար իրենք զիրենք սպաննեցին:

297. Քրիստոնէութեան ժամանակ երբոր Տրդատ թագաւորը մեռաւ, թաղմանը ինչ հանդէս ըրին:

Երբոր Տրդատ մեռաւ, մարմինը արծաթապատ թագաղի մէջ դրին, որուն լծուած էին ոսկի սանձով չորս ջորիներ, և դագաղը տեսակ տեսակ զգեստներով զարդարած. անոր քովէն թագաւորին որդիքը, ազգականները ու բարեկամները, և զինուորները բոլոր զէնք հագած երկու կարգ կ'երթային: Դագաղին առջեւէն աստուածային երգեր ու խունկ կը ծխուէր, ետեւէն փող ու տաւիղ և լալկան կնիկներ, անոնց ետեւէն ալ անթիւ բազմութիւն: Ասանկ հանդիսով ինչուան Թորդան տարին, ու հոն կճեայ տապանի մէջ դրին և թաղեցին:

Ասով յայտնի կ'իմացուի թէ քրիստոնէութեան առեն այն ինքնակամ սպանումները չէին ըլլար, և թէ դագաղին առջեւէն աստուածային երգեր, սաղմոսներ կ'ըլլուէին և խունկեր կը ծխուէին, ու կաթուղի-

կոսն ալ ներկայ կ'ըլլար սգալի հանդէսին բոլոր իր գղերովը մէկտեղ ։ Բայց ասոնցմէ սովորութիւն կար թագաւորներուն ու մեծամեծներուն հետ մէկտեղ ոսկի արծաթ և ուրիշ հարուստ բաներ թաղելու, ու գերեզմանին վրայ մահարձաններ ու կոթողներ կանգնելու, ու փառաւոր կենայ չիրիմներ շինելու ։

298. Արշակունի թագաւորները ո՞ւր կը թաղուէին ։

Արշակունի թագաւորները կը թաղուէին Բարձր հայոց Դարանաղի գաւառին Անի կամ Կամախ ըսուած ամուր բերդին մէջ, ուր կը պահուէր նաև թագաւորական գանձը ։ Ուստի նախատինք և անարգանք կը համարուէր երբոր թագաւոր մը հոս չթաղուէր . ինչպէս եղաւ Տիրան Բ թագաւորին որ թաղուեցաւ Կուաշ ։ Շապուհ Բ երբոր տիրեց Կամախին, թալլեց մէջի գանձը, ու թագաւորներուն ոսկորներն ալ գերեզմաններէն հանեց, բաց'ի Սանատրուկ թագաւորին ոսկորներէն, որոյ գերեզմանը խիստ ահագին ու ամուր ըլլալուն համար չկրցաւ քակել ։

299. Եկեղեցականները ի՞նչ հանդէսով կը թաղուէին ։

Եկեղեցականներուն թաղման մէջ մասնաւոր կերպով կը յիշուի կանթեղներ ու մոմեղէններ տանելը, բաց 'ի մէկալ սովորական արարողութիւններէն, որ են մեռելին առջևէն խունկ ծխել, երգել, և այլն ։

300. Մեր ազգին մէջ մեռելները զմռսելու սովորութիւն կա՞ր թէ չէ։

Մեռելները զմռսելու սովորութիւնը կար նաև մեր ազգին մէջ ալ, բայց Եգիպտացւոց պէս հասարակաց չէր, հապա միայն երբոր մեռելը հեռու տեղ տանել կ'ուզէին, այն ատեն կը զմռսէին ու կը խնկէին, ինչպէս Հայկ Բելայ մարմինը ըրաւ ու խրկեց Հարք գաւառը։

301. Մեռելին վրայ մասնաւոր ի՞նչ սուգ կ'ընէին։

Երբոր մէկը կը մեռնէր բոլոր ընտանիքը ու սիրելիները սև զգեստ կը հագնէին, և երկայն ատեն սուգի մէջ կը կենային, որ երբեմն ինչուան տարի մը կը քշէր։ Իսկ կռապաշտութեան ատեն նաև չարաչար իրենք զիրենք կը ծեծէին, մազերնին կը փետտէին, կը ճանկռտէին երեսնին, ճակատնին ու կուրծքերնին, և ուրիշ ատոնց նման յուսահատութեան գործեր կ'ընէին, որոնք մեծն Ներսէս բոլոր արգիլեց, քրիստոնէութեան դէմ գործեր ըլլալուն համար։

## Եկեղեցական սովորութիւններ.

302. Եկեղեցական ի՞նչ սովորութիւն կար մեր ազգին կաթողիկոսին վերաբերեալ։

Նախ Ս. Գրիգոր Լուսաւորչէն սկսեալ ինչուան մեծին Ներսէսի ատեն Հայոց կաթողիկոսները Կեսարիա կ'օծուէին, որպէս

զի Թադէոս առաքելոյն յաջորդութիւնը մնայ ։ Վասն զի Թադէոսի առաքելոյն Հայաստան գալէն ու քրիստոնէութիւնը քարոզելէն ետև Թէպէտ և ասդիս անդին Հայաստանի մէջ կը գտնուէին քրիստոնեաներ ինչուան ազգին լուսաւորութեանը ատեն, բայց կաթողիկոսութեան յաջորդութիւնը դադրեր էր եպիսկոպոս չըլլալուն համար ։ Ուստի Ս. Գրիգոր Լուսաւորիչ և իրեն յաջորդները Թադէոս առաքելոյն յաջորդութիւնը պահելու համար Կեսարիա կ'երթային, ուր Թադէոս առաքեալ Հայաստան գալու ատեն իր Թէոփիլոս աշկերտը եպիսկոպոս ձեռնադրեր էր ու հոն թողեր* ։ Մեծն Ներսէս ետքինը եղաւ որ Կեսարիա օծուեցաւ, և իրմէ ետքը այս սովորութիւնը վերջացաւ ։

Բ. Կաթողիկոսը գլուխը քօղ կը ձգէր որոյ սովորութիւնը ինչուան ԺԱ դարուն մէջ կը յիշուի. բայց յայտնի չգիտցուիր թէ արդեօք Ս. Լուսաւորչէն սկսած է թէ ետքէն. սակայն խիստ հին սովորութիւն է որ Յոյներուն մէջ ալ կար ։ Բագրատունեաց վերջի ժամանակներն ալ կաթողիկոսաց գլուխնին քօղ դնելը յայտնի է անկէց, որ երբոր ուզէին կաթողիկոս մը աթոռէն վար ձգել, կ'առնուին իրեն քօղն ու գաւազանը,

* Թերևս այն Թէոփիլոսն է որուն խնդիրքովը գրած է Ղուկաս աւետարանիչ Աւետարանն ու Գործք առաքելոցը ։

և անոր հակառակ երբոր ուզէին մէկը կաթողիկոսութեան պատուոյն հասցընել, քօղ ու գաւազան կը խաւրէին. այս սովորութիւնը շատ տեղ կը յիշեն մեր վերջի մատենագիրները։ Իսկ մեր ազգին մէջ Միթր (եպիսկոպոսական թագ) գործածելու սովորութիւնը ԺԲ դարուն մէջ Կիլիկեցւոց ատեն մտաւ Լատինացոցմէ առնլով, և անկէց ետքը եղած մատենագիրներուն թագ և խոյր ըսածը կաթողիկոսին զգեստներուն մէջ միթրն է, զոր Հռոմայ Քահանայապետներ ալ երբեմն պալիումին* հետ ընծայեցին մեր Կիլիկիա նստող կաթողիկոսներուն։

Գ. Կաթողիկոսը միշտ 12 եպիսկոպոս կ՚ունենար իր քովը իրեն խորհրդական ու ձեռնտու. կ՚ունենար նաև վարդապետներ ու քահանաներ. որոց թիւը կ՚որոշէ Մատ-

* Պալլիումը (լտ. Pallium) պզտի եմիփորոն մի է զոր կը գործածեն լատինացիք, և կը կախուի վզէն դէպի առջևը ու ետևը։ Ասոր նիւթը կը հանեն երկու ոչխարի բուրդէն, զոր երկու սարկաւագք կը դարմանեն ինչուան իրենց բուրդերը խուզելու ատեն, և իրենց ձեռքովը կը խուզեն։ Կարելէն ու անկէց պալլիում շինելէն ետև կը դնեն սրբոյն Պետրոսի և Պօղոսի Նախատօնակին իրիկունը անոնց գերեզմանին վրայ, և բոլոր գիշերը հոն կը կենայ, ու երկրորդ օրը խորանին վրայ կ՚օրհնեն։ Պալլիումը արքեպիսկոպոսութեան նշան է, և մեծ պատիւ է երբոր Հռոմայ պապը մէկուն խաւրէ, և ըսել է թէ զինքը կը հաստատէ իր իրաւանցը մէջ։

թէոս պատմիչը, ըսելով թէ 12 եպիսկոպոս, և վարդապետ միշտ կը գտնուէր կաթողիկոսին քով, և 60 կրօնաւոր քահանայ և 500 աշխարհական, վասն զի կաթողիկոսը գրեթէ թագաւորի պատիւ և իշխանութիւն ունէր, մանաւանդ անիշխանութեան ժամանակ՝ իբրև Ազգապետ։

Դ. Ոչ ոք կրնար նստել թէ եկեղեցական ըլլայ թէ աշխարհական, կաթողիկոսին նստած տեղը ուր ալ որ երթար. և այս բանս կ'ընէին իրեն յարգութիւնը պահելու համար։

Ե. կաթողիկոսը ուր որ երթար՝ մանաւանդ հանդիսաւոր կերպով, միշտ դիմացը խաչ ու հայրապետական գաւազան կը տանէր։ կաթողիկոսին քովը կը պահուէր միշտ Լուսաւորչին սուրբ աջը։

Զ. Սովորութիւն կար ամէն կաթողիկոսներուն դէմքը քաշելու, և կարգաւ եկեղեցւոյ պատին վրայ կախելու։

Է. Երբոր կաթողիկոսը հեռուկեկ ճամբորդութիւն ընէր, հետը հարիւրաւոր դինուորներ, եպիսկոպոսներ, քահանաներ կ'երթային, և միշտ ճերմակ ջորւոյ վրայ կը հեծնէր ոսկեզօծ թամբով զարդարած, և ոչ երբէք ձիոյ վրայ, ինչպէս եպիսկոպոսներն ալ։

303. կաթողիկոսը ո՞ր զարմէն կ'ըլլար։

կաթողիկոսը Արշակունեաց ատեն Ս. Գրիգոր Լուսաւորչին ցեղէն կ'ըլլար. և այս սովորութիւնը տևեց ինչուան սուրբն Սա-

հակ, և անկէց ետքը վերջացաւ, ինչպէս ինքն ալ սուրբն Սահակ աստուածային յայտնութեամբ գուշակեր էր։ Անոր համար ալ եկեղեցական բարեկարգութիւնները տակն ու վրայ եղան. և ինչպէս կ՚ըսէ Մեսրոպ պատմիչ, Հայոց աշխարհին աւերմանը պատճառ եղաւ մէյմը Գրիգոր Լուսաւորչին ցեղէն կաթողիկոս չըլլալը, մէյմ՚ալ Մամիկոնեան կարիճ ու տիրասէր ազգէն զօրավար չըլլալը։

304. Ի՞նչպէս կ՚ընտրէին կաթողիկոսը։

Կը ժողովէին արքեպիսկոպոսները, եպիսկոպոսները, վանահայրներ, և վարդապետներ ու խորհրդով և քուէարկութեամբ կ՚ընտրէին երկու կամ իրեք հոգի, ու ետքը թագաւորին կ՚առաջարկէին, որ ժողովքով անոնցմէ մէկը կ՚ընտրէր, ու օծման օրը ծունկ դնելով հայրապետական մատանին նորընտիր կաթողիկոսին մատը կ՚անցընէր, ու ձեռքը կը պագնէր։

305. Երկոտասաներորդ դարուն մէջ կաթողիկոսին ընտրութեանը համար ի՞նչ օրէնք դրուեցաւ։

Երկոտասաներորդ դարուն մէջ Աղթամարայ Դաւիթ կաթողիկոսին հերձուածէն ետև նոր կանոն մը սահման եցաւ, այսինքն թէ առանց հաւանութեան Բջնոյ, Հաղբատու, Եւստաթէու կամ Տաթևու եպիսկոպոսանիստ վանքերուն, և Արտազու եպիսկոպոսին հաւանութեանը կաթողիկոս չնստի։

306. Կաթողիկոսը մինչեւ ուր կ'իշխէր։

Մեր կաթողիկոսը առջի բերան կ'իշխէր չէ թէ միայն Հայոց վրայ, հապա նաեւ Վրաց ու Աղուանից, եւ անոնց վրայ կը դնէր մէյմէկ արքեպիսկոպոս իր իշխանութեան տակ։ Վիրք վեցերորդ դարուն իրենց Կիւրիոն արքեպիսկոպոսին ձեռքովը զատուեցան Հայերէն Քաղկեդոնի սուրբ ժողովը ընդունելով։ Իսկ Աղուանք ինչուան տասներորդ դարը մեր կաթողիկոսաց իշխանութեան տակն էին, բայց անկէ ետքը ատեն ատեն իրենք ալ զատուեցան։ Սակայն Յոյնք միշտ Հայու կաթողիկոսին իշխանութեան տակ կը համարէին Վիրքն ու Աղուանքը։

307. Ի՞նչ կալուածներ ունէր կաթողիկոսը։

Տրդատ երբոր քրիստոնեայ եղաւ շատ տեղեր ու գեղեր կաթողիկոսարանին կալուած թողուց։ Բուզանդ կը յիշէ մեծին Ներսեսի ատեն 15 գաւառ կաթողիկոսարանին կալուած, որոնցմէ գլխաւորներն էին Այրարատ, Դարանաղի, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք։ Յովհան կաթողիկոս կը յիշէ Արտաշատը, Կաւակերտը, Արամօնս գեղը, եւ Հոռոմոց մարգ ըսուածը։ Մատթէոս պատմիչ կը յիշէ 500 անուանի գեղ որ Հայոց թագաւորներէն տրուած էին կաթողիկոսարանին։

308. Ո՞ւր էր կաթողիկոսարանը։

Գրիգոր Լուսաւորչին ատենէն սկսեալ ին-

չուան Արշակունեաց տէրութեան վերջը կաթողիկոսարանն էր Վաղարշապատ քաղաքին մէջ։ Մարզպանաց ատեն եղաւ Դուին քաղաքը, ուսկից Դաւիթ առաջին կաթողիկոսին ատեն փոխադրեցաւ մինչև իր մահը Արամօնս գեղին մէջ։ Պետրոս կաթողիկոսին ատեն Վասպուրականին Ձորոյ վանքը, ետքը Սեբաստիա քաղաքը. Բագրատունեաց ատեն Անի քաղաքը, իսկ Կիլիկեցոց ատեն Ծովք գիւղակը ու ետքը Հռոմկլայ և վերջը Սիս։

309. Կաթողիկոսական աթոռը քանի՛ ճիւղ բաժնուեցաւ։

Ս. Գրիգոր Լուսաւորչէն սկսեալ ինչուան Զ դարուն վերջերը միշտ մէկ կաթողիկոս կ'իշխէր Հայաստանի վրայ։ Զ դարուն Յոյնք ուրիշ հակառակաթոռ կաթողիկոս մը դրին Թէոդոսուպօլիս կամ Կարնոյ քաղքին մէջ։ ԺԱ դարուն չորս բաժնուեցաւ կաթողիկոսական աթոռը, Եգիպտոս, Հոնի (որ Միջագետաց մէջ կ'ըյնի), Անի և Մարաշ։ Ասոնք ամէնքն ալ եպիսկոպոսներ կը ձեռնադրէին, ու քահանայութեան սուրբ ձէթը կ'օրհնէին։ Քիչ ատենէն վեց եղաւ կաթողիկոսներուն թիւը. Եգիպտոս երկու կաթողիկոս նստեցաւ*, մէյմ'ալ Թալըլուր։ Բայց շատ չանցաւ՝ երբոր Տէր Բարսեղ կաթողիկոս նստաւ զամէնքն ալ նուաճեց, և ինքը եղաւ միապետ կաթողիկոս։ Եւ սակայն ԺԱ դարուն վերջերը դարձեալ ի-

...երից բաժնուեցան , Սեաստ , Հռոմկլա և Աղթամար՝ ուր շատոնց սկսած էր . և անկէց ինչուան հիմա մնացած են իրեք կաթողիկոսական աթոռներ . մէյմը էջմիածին որ բուն Ս . Գրիգոր Լուսաւորչի յաջորդութիւնն է , և մէկալնոնցմէ վեր է իր իշխանութիւնը , մէկալը Սիս Կիլիկիոյ մէջ , ան ալ յաջորդութիւն է Լուսաւորչայ , որ ԺԱ դարուն մէջ երկու բաժնուեցաւ , մէկն յէջմիածին , մէկալն հոս . երրորդն է Աղթամար . Ասոնք իրեքն ալ ամեններն իրարմէ կախումն չունին , և ինքնագլուխ կը կառավարին :

310 . Կաթողիկոսները ինչ կնիք կը գործածէին :

Սովորականն էր մէջ տեղը Քրիստոսի դէմքը , վրան գրած Յիսուս Քրիստոս , ու չորս կողմը Շնորհիւ Տեառն կաթողիկոս ամենայն Հայոց : Ասանկ է ըստ մեծի մասին ամէն կաթողիկոսներուն կնիքը , կամ քիչ տարբերութիւն ունին : Կաթողիկոսը նամակ մը կամ կոնդակ մը գրելու ըլլար , սովորաբար այսպիսի վերնագիր կը դնէր . . . . շնորհօքն Աստուծոյ կաթողիկոս ամենայն Հայոց , կամ կաթողիկոս ընդհանուր ամենայն Հայաստանեայց , և կամ եպիսկոպոսապետ Հայոց մեծաց : Ետքերը սկսան աւելի երկընցընել վերնագիրները տեսակ տեսակ մակդիրներ աւելցընելով : Ստորագրութիւնը կ'երևի թէ միշտ կարմիր գրով կ'ընէր , ինչպէս որ յայտնի կը յիշէ Դ Կոստանդին

կաթողիկոսը իր Եղիշէրուն մէկուն վկայ-ըսելով « Ձեռնադրեցաք մերով առաքելա-կան կարմիր ձեռնադրովս ԺԵ յունվարի 'ի թուին ՊԻԳ (1374), Կոստանդին շնոր-հօքն Աստուծոյ կաթողիկոս ամենայն Հայ-ոց » :

311. Կաթողիկոսը ի՞նչ իրաւունք և անուններ ունի :

Կաթողիկոսը որ կ'ըսուէր նաև հայրապետ, պատրիարք, եպիսկոպոսապետ, քահանայապետ, ամէն արքեպիսկոպոսներէն ու մետրապոլիտներէն վեր է, ուզած ատենը կրնայ արքեպիսկոպոս ու եպիսկոպոս ձեռնադրել, ու ինքնակամ միւռոնն իւղը օրհնել : Իրեն սեպհական է հինգ կարգ եմիփորոն առնուլը :

312. Ո՞վ եղաւ մեր ազգին մէջ եկեղեցական բաներու կարգ կանոն դնողը :

Նախ Ս. Գրիգոր Լուսաւորիչ, որ Հայաստանը լուսաւորելէն ետև եկեղեցւոյ մէջ շատ բարեկարգութիւններ ըրաւ. 400էն աւելի եպիսկոպոս ձեռնադրեց Հայաստանի գաւառներուն ու քաղաքներուն համար, և կարգ դրաւ որ իրեն քովը 36 եպիսկոպոս կենան՝ 18 աջ կողմը, 18 ձախ կողմը : Լուսաւորչէն ետև երևելի եղաւ մեծն Ներսէս, որոյ ատենն շատ բարեկարգութիւն գտաւ եկեղեցին. եպիսկոպոսներուն թիւը աւելի շատցուց, որ 500ը կ'անցնէր : Իսկ իրեն համար 12 եպիսկոպոս աթոռակից ու խոր-

հրդակից ընտրեց, որ կը կենային միշտ հայրապետանոցին մէջ, և այս սովորութիւնը մինչուան հիմա կը տևէ։ Բայց ասկէ [illegible] Ներսէս Յաւնացմէ առնլով եկեղեցական գլխը Թը դաս բաժնեց, Թ դասուց հրեշտակաց թուովը, այսինքն պատրիարք, արքեպիսկոպոս, մետրապօլիտ, եպիսկոպոս, քահանայ, սարկաւագ, կիսասարկաւագ, վերծանօղ և սաղմոսերգու. այսպէս կը դնէ Յովհաննէս կաթողիկոս։ Իսկ Վարդան՝ վերծանողին և սաղմոսերգուին տեղ կը դնէ դպիր, կրօնաւոր և ժողովուրդ, սկիզբն ալ արքեպիսկոպոսը դուրս կը թողու։ Հայաստանի մէջ եղած հայրապետը կ'ըսուէր պատրիարք, Վրաց և Աղուանից վրայ կը դրուէր արքեպիսկոպոս. Սիւնեաց աշխարհին, Մելիտինոյ, Մարտիրոսաց քաղքին ու Սեբաստիոյ մէջ մետրապօլիտ. իսկ Հայաստանի զանազան սահմաններուն մէջ եպիսկոպոսներ ու քորեպիսկոպոսներ։

313. Ի՞նչ իշխանութիւն ունի արքեպիսկոպոսը, և ի՞նչ զգեստ կը հագնի։

Արքեպիսկոպոսը՝ որ քիչ կար Հայաստանի մէջ, իշխանութիւն ունի մետրապօլիտ ձեռնադրելու և դրօշմի իւղ օրհնելու, և իրեք արքեպիսկոպոս մէկտեղ կրնան պատրիարք մը ձեռնադրել։ Իրենց եկեղեցական զգեստը ինչ որ կը յիշուի Մխիթար Գօշին դատաստանագրքոց մէջ, է փիլոն, ու անոր վրայ եմիփորոն չորս կարգ։

314. Մետրապոլիտները ի՞նչ զգեստ կը հագնէին։

Մետրապոլիտը՝ որ կը նշանակէ Յունաց բառով մայրաքաղաքացի, վասն զի մայրաքաղաքներու եպիսկոպոսներու կը տրուէր այս անունը, նոյն արքեպիսկոպոսներու զգեստը կը հագնի. բայց եմիփորոնը իրեք կարգ է։ Իրեն իշխանութիւնն է եպիսկոպոս ձեռնադրել, ու դրօշմի եղը օրհնել, և իրեք մետրապոլիտ կրնան իրենց արքեպիսկոպոս ձեռնադրել։

315. Եպիսկոպոսները ի՞նչ իշխանութիւն ունէին և ի՞նչ զգեստ կը հագնէին։

Եպիսկոպոսը՝ որ ըսել է այցելու, մետրապոլիտներուն զգեստը ունի, բայց եմիփորոնը երկու կարգ. իշխանութիւն ունի սեղան, աւազան ու օծման եղը օրհնելու և քահանայ ձեռնադրելու. և իրեք եպիսկոպոս կրնան մէկտեղ իրենց մետրապոլիտ ձեռնադրել։

Եպիսկոպոսներուն պարտքն էր տարին իրեք անգամ այցելութեան ելլել բոլոր իրենց թեմին մէջ, ինչպէս որ Առաքեալք սահմանած էին, որպէս զի անկարգութիւնները վերցընեն ու բարեկարգութիւնը անխախտ պահեն։ Այս սովորութիւնը ետքերը դադրեր էր Հայաստանի խեղճ վիճակին պատճառաւ ու թշնամիներէն տանկոխ ըլլալուն համար։ Անոր համար Կոստանդին կաթողիկոս ԺԳ դարուն իր կանոնական թղթոյն մէջ զանգատ կ՚ընէ այս բանիս վերցուելուն վրայ։

316. *Քորեպիսկոպոսաց, քահանայից, սարկաւագաց վրայ ի՞նչ գիտելիք կան։*

*Պզտի վիճակներուն ու գեղերուն պէտսուչը կ'ըսուի քորեպիսկոպոս, որոյ իշխանութիւնը եպիսկոպոսներուն իշխանութենէն պզտիկ է։ — Քահանային որոշիչ ըզգեստն է երկու ուսին վրայ ուրար կամ փակեղն դնելը, ուր սարկաւագը միայն ձախ ուսին վրայ կրնայ դնել։ Քահանան կ'ըսուի նաև երէց, միայն այս է տարբերութիւնը, որ քահանան քաղքի մէջ կ'ըլլայ, իսկ երէցները գեղերու ու ագարակներու մէջ։*

## ԳԼՈՒԽ ԺԲ.

## ԱԶԳԱՅԻՆ ՕՐԻՆԱՑ ՈՒ ԴՐԱՄՆԵՐՈՒ ՎՐԱՅ։

### *ՅՕԴՈՒԱԾ Ա.*

### *Օրէնք.*

317. *Վաղարշակ ի՞նչ օրէնքներ դրաւ։ — Վաղարշակ բաց 'ի այլևայլ օրէնքներէն ու բարեկարգութիւններէն որով Հայաստանը կարգի կանոնի դրաւ, հրամմեց որ քաղաքացիները միշտ գեղացիներէն վեր սեպուին. որոշեց խորհուրդ ընելու և գբօսանքի ատենները, և իրեն համար երկու*

ազգարար դրաւ, որ մէկը միշտ արդարութիւն և աղէկ բան տուն տայ, ու մէկալը անիրաւութենէ և ուրիշ գէշ բաներէ զգուշացընէ ։ Բայց տանեցմէ հաստատուն օրէնք մ՚ալ դրաւ Թագաւորաց՝ որդւոց որդի յաջորդութեանը համար, այսինքն թէ Թագաւորին անդրանիկը միայն կենայ Թագաւորին քով Այրարատ նահանգը, իսկ մէկալ մանչ ու աղջիկ զաւակները բոլոր Հաշտենից գաւառը բնակին՝ որ Տարօնի մօտ կ՚ըլնի, և այն գաւառը իրենց ժառանգութիւն տուաւ ։ Այս սովորութիւնը ինչուան Արշակունեաց տէրութեան վերցուիլը տևեց, և Արտաւազդ Բ Հաշտենից գաւառին վրայ աւելցուց Աղիովիտ ու Առբերանի գաւառներն ալ ։ Բայց ետքէն այնչափ բազմացան արքայորդիքը, որ Ա. Տիրանայ ատենը խնդրեցին որ իրենց տեղը ընդարձակէ, բայց չկատարեց ։

318. Յովհաննէս Թագաւորը ինչ օրէնքներ հաստատեց ։

Յովհաննէս Թագաւորը Բագրատունեաց տէրութեան ատենը մասնաւոր օրինաց գիրք մը չինեց, որով կը վարուէին Բագրատունեաց ժամանակը. Նոյն օրէնքները Անի քաղքէն Խրիմ գացած գաղթականները հետերնին տարին, ու անոնցմով կը վարուէին, որոց մէջ կը պատուիրէ կիրակի օր դատաստան չընել, տուրք չառնուլ, պարտապանէն դրամ չպահանջել, և այլն ։

319. Մխիթար Գոշի Դատաստանագիրքը ո՞րն է։

Բաց 'ի Յովհաննէս Թագաւորին Օրինաց գրքէն ունինք նաև Մխիթար Գոշին Դատաստանագիրքը, որոյ մէջ Թագաւորաց վրայ խօսելու ատեն կը դնէ, թէ երբոր Թագաւորը մեռնի, անոր կը յաջորդէ իրեն եղբայրը և ոչ եթէ անդրանիկ որդին. և թէ որ եղբայր չունենայ, այն ատեն որդին կը յաջորդէ։ Թէ որ Թագաւորին որդւոյն և աղջկանը որդի ըլլայ, որդւոյն որդին պէտք է որ Թագաւորէ և ոչ աղջկանը. բայց թէ որ ոչ եղբայր, ոչ որդի ունենայ, այն ատեն Թագը կ'առնու աղջիկը, ու կարգուելով կրնայ իր Թագը էրկանը տալ թէ որ ուզէ. բայց աղջկան մահուընէն ետև օտար կը համարուին իր զաւկըները։ Իսկ թէ որ Թագաւորը ամենևին ժառանգ չունենայ, այն ատեն կրնայ Թագը տալ իր մօտիկ ազգականներէն մէկուն։ Ասով կ'երևի թէ Բագրատունեաց Թագաւորները Արշակունեաց պէս որդւոց որդի չէին Թագաւորեր։ Բաց ասկէ գրած է Մխիթար Գոշին մէջ որ Թագաւորը առանց կաթողիկոսին հրամանին կամ հաւանութեան չկարենայ Թագաւորել։ Չկարենան մեծամեծ իշխանները նստիլ Թագաւորին առջև, բայց եթէ իրեն հրամանովը. իսկ կաթողիկոսը կրնայ ինքնիշխան նստիլ։ Թագաւորին հետ չկրնար մէկը սեղան նստիլ բաց 'ի կաթողիկոսէն, իսկ Թագաւորին հաւանու-

թեամբը կրնան ուրիշներն ալ նստիլ ։

Կան նաև Մխիթար Գօշին մէջ ուրիշ կարգեր և օրէնքներ-տէրութեան եկամուտներուն տուրքերուն վրայ, և այլն, որոնք երկար կ՚ըլլայ հոս յիշել ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Դրամք.

320. *Հայերը հին ատեն ինչ դրամներ կը գործածէին ։*

Թէպէտ և չենք կրնար այս բանիս վրայ ուղիղ դատաստան ընել խիստ հին դրամներ ձեռուընիս չունենալով, մանաւանդ Հայկազանց ատենէն մնացած, բայց շատ հաւանական կ՚երևայ որ մեր Թագաւորները թէ Հայկազանց ատեն ըլլայ թէ Արշակունեաց և թէ Բագրատունեաց ժամանակի իրենց անունովը սատակ կը կոխէին. վասն զի այս սովորութիւնը ամէն տէրութեանց մէջ կայ, թէպէտ և պզտիկ ըլլայ ։ բ. որ Արտաշէս Ա. Պարսկաստանի մէջ իր սահմանէն դուրս իր անունովը սատակ կոխեց, ինչպէս որ որոշ կը յիշէ Խորենացին, ուրեմն ևս առաւել իր սահմանին մէջ ։ գ. որ Բագրատունեացմէ քիչ մը վերջը՝ դրամ կոխելու համար մասնաւոր օրէնքներ գրած է Մխիթար Գօշ, ուր իշխանաց կամ նախարարաց կ՚արգիլէ սատակ կոխելը և միայն Թագաւորին

կու տայ այն իշխանութիւնը . ուրեմն ըսել է թէ դրամ կը կոխէին որ այն օրէնքները գրուած են : Բայց այս ալ յայտնի է որ Հայերը այն տէրութեանց հետ որ աւելի վերաբերութիւն ունէին կամ որոնց որ կը հպատակէին , անոնց դրամներն ալ իրենց երկրին մէջ համարձակ կը գործածէին , ինչպէս Յունաց ու Պարսից դրամները Արշակունեաց ժամանակ , Արաբացւոց դրամները Բագրատունեաց ատեն :

321 . Կիլիկեցւոց Լեւոն Թագաւորին ատենը գտնուած դրամին վրայ ինչ գիտելիք կան :

Կ'ըսէ Վարդան թէ Կիլիկիոյ Լեւոն Թագաւորին ատենը դրամ մը գտնուեցաւ , որոյ վրայ գրած էր հայերէն գրերով Հայկազանց կռապաշտ Թագաւորի մը անունը . և ասով կը հաստատէ թէ կար սրբոյն Մեսրոպէն առաջ հայու հին գիր :

322 . Հիմա աւելի ո՛ր Հայ Թագաւորաց դրամները կը գտնուին :

Հիմակուան գտնուած դրամներն են Արտաշէսի , միջին Տիգրանայ , Արտաւազդայ . Աբգարու արշակունի Թագաւորաց դրամներ , վրան Յունարէն գրած * . գըլ-

* Յունարէն գրով ու լեզուով գրած ըլլալուն պատճառը այն է . որ Հայերը Արշակունեաց տէրութեան սկիզբները մասնաւոր գիր չունէին , հապա Յունաց գիրը ու անոր հետ մէկտեղ նաև երբեմն լեզուն ալ կը գործածէին , Յունաց հետ շատ վերաբերութիւն ունենալով :

խարկնին Պարթևաց գլխարկներուն նման ։ Բագրատունեաց ատենի ամենևին դրամ չկայ , իսկ Ռուբինեանց թագաւորներուն շատ դրամներ կը գտնուին վրան Հայերէն գրած . ինչպէս են Լևոն թագաւորներու դրամներ , Ա և Բ Հեթում թագաւորներու , Կոստանդնի , Օշնի , և այլն ։

323 . Սպիտակ և կարմիր ըսուած դրամոց վրայ ի՞նչ գիտելիք կան ։

Երեքտասաներորդ դարէն սպիտակ անունով դրամ կը յիշուի , որ է արծաթ դրամ , ուսկից ելած կը կարծուի հիմակուան մեր աշխարհաբառին մէջ ստակ բառը ։ Կար նաև կարմիր անունով դրամ մը որ ոսկի պէտք է որ ըլլայ , բայց յայտնի չէ թէ ի՞նչ արժէք ունէին այս դրամները ։

324 . Ի՞նչ պատճառաւ է որ հիմա ազգային դրամներ շատ չեն գտնուիր , մանաւանդ Բագրատունեաց , Արշակունեաց ու Հայկազանց թագաւորներու ։

Ա . Շատոնց 'ի վեր մեր տէրութեան դադրելը , որով ազգային դրամները անգործածելով պակսեր են ։ Բ . Հայաստանի ոտնակոխ ըլլալը և այլևայլ ատեն քաշած թշուառութիւնները , և ուրիշ տէրութեանց հպատակ ըլլալը , և անոնց դրամները գործածելը ։ Գ . Օսմանեան տէրութեան սովորութիւնը որ Ասիոյ մէջի հին ստակները ժողվել տալով , կը հալեցընէ ու իր ստակը կոխել կու տայ , որով անշուշտ շատ հայու ստակներ ալ փճացած են ։

# ԳԼՈՒԽ ԺԳ.

## ՀԱՅՈՑ ԿՐՕՆՔԻՆ ՎՐԱՅ.

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### *Հայոց նախկին կրօնքը մինչև 'ի քրիստոնէութիւն .*

325 . *Ջրհեղեղէն առաջ ինչ կրօնք էր Հայաստանի մէջ.*

*Որովհետև Ադամայ բնակութեան տեղը Հայաստանին մէջ էր՝ դրախտին տեղը հոն ըլլալով ( § . 8 ) , ուստի յայտնի կ'ե-րևի թէ երկայն ատեն ուանդութեամբ աս-տուածպաշտութիւնը տևած էր Հայաստա-նի մէջ . բայց թէ որչափ ատեն , և թէ ետքը ինչ կրօն կը պաշտէին Հայաստանի բնակիչները , յայտնի չէ . և սակայն հա-ւանական կ'երևի թէ ետքն կռապաշտու-թեան դարձան , ինչպէս բոլոր աշխարհ .*

326 . *Ջրհեղեղէն ետև ինչ կրօն կար Հայաստանի մէջ.*

*Ջրհեղեղէն ետևնորէն Հայաստանի մէջ սկսաւ աստուածպաշտութիւնը , ուր որ նախ Նոյ նահապետը ճշմարիտ Աստուծոյ սեղանը շինեց . Եւ Հայկ մեր նախահայրը չուզելով Բելայ հնազանդիլ՝ որ ինքզինքը Աստուծոյ կարգը դնելով կ'ուզէր ժողո-*

վերջէն պաշտուիլ, երբոր Հայաստան դարձաւ, ինչպէս որ իր կորսնցուցած լեզուն նորէն ստացաւ, սանկ ալ նաև աստուածպաշտութեան կրօնքին մէջը աւելի հաստատեցաւ։ Ուստի Հայկէն ինչուան Անուշաւանին առեն, որ Յակոբ Նահապետին ժամանակը կ'ըյնի, կ'երևի թէ կռապաշտութիւն մտած չէր մեր ազգին մէջ. վասն զի Խորենացին նախ Անուշաւան Նահապետին համար կ'ըսէ թէ նուիրած էր Արամանեկին սօսի ծառերուն՝ որ Արմաւիր քաղքին մէջ տնկուած էին։

327. Արևապաշտութիւնը երբ սկսած է։

Արևը և ուրիշ լուսաւոր մարմինները պաշտելը հեթանոսութեան ամէն տեսակ պաշտամունքէն հին է, որ կը կոչուէր եբրայական բառով սաբէութիւն, որ ելած է սաբա բառէն, որ զօրք ըսել է, աստղներուն բազմութիւնը զօրաց բանակի նմանցնելով։ Արևապաշտութիւնը Պարսից կամ Քաղդէացւոց ազգէն մտած էր մեր ազգին մէջ Վաղարշակէն շատ առաջ. և Վաղարշակ շինեց Արմաւիրի մէջ մեհեան մը և մէջն ալ դրաւ արևու և լուսնի արձաններըը։ Հայոց արև պաշտելուն մէկ նշանն ալ այս է, որ կար Հայաստանի մէջ մասնաւոր ժողովուրդ մը որ կ'ըսուէր Արևորդիք՝ արև պաշտելնուն համար։

328. Արևուն ինչ անուն կու տային այլևայլ ազգերը։

Եգիպտացիք Օսիրիս կ'ըսէին արևուն,

Պարսիկք Միհր. նոյնպէս նաև Որմիզդը՝ ասկից ելած է մեր Արամազդ բառը, կը տրուէր Պարսից մէջ երբեմն նաև արեւուն: Ուստի Հայերն ալ Արամազդ անունը բաց 'ի Դիոսէն՝ որ ըստ Յունաց Կռոնոսին որդին էր, կու տային նաև արեւուն՝ զոր առջի բերան բացօթեայ տեղ կը պաշտէին, ետքերը մասնաւոր տաճարներ ալ սկսան շինել: Սուրբ գրքին մէջ յիշուած Բահաղն ու Բէլը՝ զոր ոմանք նոյն կը համարին Նեբրովթին հետ, և կը պաշտէին Փիւնիկեցիք և Մովաբացիք, Մողոք կամ Մեղքոմը զոր Ամմոնացիք և Քամովսը զոր Մովաբացիք կը պաշտէին, արեւու զանազան անուններ են: Իսկ Յոյնք արեւուն Ապողոն կ'ըսէին:

329. Ո՞րչափ ատեն տևեց արեւապաշտութիւնը Հայաստանի մէջ:

Արեւապաշտութիւնը որ Վաղարշակէն առաջ անորոշ ժամանակէ 'ի վեր սկսած էր, տևեց ինչուան Տրդատայ ժամանակը, որոյ ատեն քրիստոնէութեան պատճառաւ թէպէտ և վերցուեցաւ կռապաշտութեան հետ նաև արեւապաշտութիւնը, բայց դեռ Միջագետաց կողմերը տեղ տեղ մնացեր էր արեւապաշտութիւնը ինչուան Մագիստրոսի ու Ներսէս Շնորհալիին ատենը:

330. Կրակապաշտութիւնը երբ սկըսաւ:

Արեւապաշտութեան հետեւանքն է կրակապաշտութիւնը, վասն զի մարդիկ տեսնելով որ կրակն ալ կերպով մը արեւու նմա-

նութիւնն ու զօրութիւնը ունի, սկսան կրակն ալ պաշտել. մասնաւոր ատրուշաններ, այսինքն կրակի տուներ շինելով։ Կրակապաշտութիւնը Պարսիցմէ մտաւ մեր ազգին մէջ, և թերևս նախ ծաւալեցաւ Միջագետաց Ուրհա կամ Եդեսիա քաղաքը, որ նոյն է սուրբ գրքին մէջ յիշուած Ուր քաղքին հետ, որ հուր բառէն ելած կը կարծուի։ Այս Ուրհա քաղքէն կամաց կամաց տարածեցաւ Հայաստանի խորերն ալ, և այլևայլ տեղեր կրակատուններ շինուեցան և մանաւանդ Բագուան ու Բագայառիճ քաղաքներուն մէջ, որ քրմերու քաղաքներ էին, ուր կրակը բագիններու վրայ մշտավառ կը պահուէր։

331. Հայերը լուսին ալ կը պաշտէին։

Այն ազգերը որ արև կը պաշտէին, կը պաշտէին նաև լուսինը և ուրիշ երկնային մարմինները։ Ուստի մեր ազգն ալ կը պաշտէր լուսինը Անահիտ անուանելով, ըստ Յունաց Արտեմիս, ըստ լատինացւոց Տիանա, և ըստ սուրբ գրոց Աստարտ կամ Աստարտէս զոր Փիւնիկեցիք և Սիդոնացիք կը պաշտէին։ Եւ ինչպէս որ տաճարները նուիրած էին Բահաղին, որ բարձր տեղ պարսպով պատած կը շինէին, ասանկ ալ անտառները նուիրած էին Աստարտին, որոնք սովորաբար Բահաղին տաճարին քովերը կը տնկուէին։ Մեր լեզուին մէջ Անահտայ տեղ՝ լուսին նշանակելու համար՝ կը գործածուի նաև Աստղիկը՝ որ Սեմայ

*քոյրն էր, և կ'երևի թէ մեր աստղ բառէն ելած է ։ Իսկ Եգիպտացիք կը պաշտէին լուսինը Իսիս անունով, և կը նկարէին զինքը կնիկ մը գլուխը մահիկ դրած, և կը նուիրէին իրեն արջառ ։*

332. *Ի՞նչ է դիցապաշտութիւնը ։*

*Դիցապաշտութիւն կ'ըսուի զմարդիկ աստուածացընելը ու Աստուծոյ պէս պաշտելը ։ Դիցապաշտութիւնը թէպէտ և արևապաշտութենէ ետքը հնարուած է, բայց կը յիշուի նաև թէ հին ատեն մարդիկ Սատուռնոսը՝ որ է Նոյ, կը պաշտէին Բահաղ անունով որ է արև, և Կրոնոս անունով որ է ժամանակ ։ Կը պաշտէին Սեմը՝ որ է Զօրոաստր՝ Զրուան անունով ։ Կը պաշտէին նաև Ոսիրիս կամ Օսիրիսը Սատուռնոսի որդին՝ որ երկրագործութիւն սորվեցուց, և Աստղիկը Նոյին աղջիկը՝ որ բժշկութիւն սորվեցուց ։ Եւ որովհետև Ոսիրիս կամ Օսիրիս և Աստղիկ երկուքն ալ երևելի էին աստղաբաշխութեան և արևու ու լուսնի վարդապետութիւններուն մէջ, անոր համար առջինը ըսուեցաւ արեգակն, երկրորդը լուսին ։*

333. *Դիցապաշտութիւնը ե՞րբ մտաւ Հայաստանի մէջ ։*

*Թէպէտ և այս վերի յիշուած նահապետներուն բնակութիւնը Հայաստանի մէջ եղաւ* (§. 28. 30), *բայց իբրև աստուած իրենց մահուընէն ետքը պաշտուեցան երբոր ելան գնացին ուրիշ զանազան երկիրներ ։ Ուստի հաւանական կ'երևի թէ Հայաստանի կռա-*

պաշտութեան ժամանակը՝ Հայկազանց ատեն ու Արշակունեաց տէրութեան սկիզբը երկնքի լուսաւորները, ու չորս տարրերը միայն կը պաշտէին. իսկ դիցապաշտութիւնը մտաւ աւելի Արտաշէս Ա. ին ատենը որ Յունաստան արշաւելով, բերաւ անկէց Դիոսի, Արտեմիսի, Աթենասայ, Հեփեստոսի, Ափրոդիտեայ և ուրիշ աստուածներու գեղեցկաձոյլ արձանները, և դնել տուաւ Անիի կամ Կամախի մէջ. նոյնպէս փոքր Ասիայէն բերաւ Արտեմիսի, Ապողոնի, Հերակղեայ պղնձէ ոսկեզօծ արձանները ու Արմաւիր դնել տուաւ։

534. Անահտայ վրայ ինչ գիտելիք կայ։

Անահտայ կամ Արտեմիսին պաշտօնը խիստ յաճախած էր Հայաստանի մէջ, որոյ համար Հայաստանի այլևայլ կողմերը շատ կռատուններ շինուած էին, ինչպէս է Տարօնոյ Աշտիշատ գեղին, և մանաւանդ Եկեղեաց գաւառին մէջ որ կ'ըսուի նաև Անահտական գաւառ, ուր էր Անահտայ փառաւոր ու հարուստ մեհեանը իր ամբողջ ոսկեձոյլ արձանովը Երէզ աւանին մէջ*։

* Այս արձանը Արտաշէս Յունաստանէն բերաւ, իսկ մեհեանը շինեց իր որդին Տիգրան Բ։ Կար ուրիշ Արտեմիդայ փառաւոր արձան մը որ նոյնպէս Արտաշէս Ա փոքր Ասիայէն Հայաստան բերաւ ու դրուեցաւ Արմաւիր քաղաքը։ Այս Երէզ աւանին մէջ եղած տաճարին վրայ մեծ գովեստով կը խօսի Պլինիոս, և կ'ըսէ թէ ամէն ոք

Հոս եկաւ Տրդատ Հռոմէն դառնալէն ետև ու յորդորեց մեր Սուրբ Լուսաւորիչը որ պսակէ այս Անահտայ արձանը ու երկըրպագութիւն ընէ անոր ։ Անահտայ տաճարին մէջ կը վառուէր երբեմն նաև կրակ, ինչպէս որ կը յիշէ Ստրաբոն ։

335. Բաց ասոնցմէ ուրիշ ինչ գիտելիք կան Անահտայ վրայ ։

Անահիտ՝ Դիոսի կամ Արամազդայ և Լատոնայի աղջիկը և Ապողոնի քոյրը, շատ անգամ լուսնի տեղ ալ դրուելով, կը նկարուի գլխուն վրայ մահիկ մը դրած և կամ գլուխը աստղանիշ քօղով մը ծածկած ։ Անահտայ՝ որ զգաստութեան ու պարկեշտութեան աստուածուհի էր, մեր նախնիքը կու տային խնամակալող ու կեցուցիչ, նաև ոսկիածին, ոսկիամայր ու ոսկիահատ անունները, որոնք բոլոր կը յիշուին Ագաթանգեղոսին մէջ, և թերևս այս վերջի իրեքը Եկեղեաց գաւառին մէջի ոսկիէ արձանին պատճառաւ, և կամ թէ Անահիտ ոսկիէ հանքերուն ալ պաշտպան ըլլալուն համար ։

336. Արամազդայ վրայ ինչ գիտելիք կան ։

Բաց 'ի այն Արամազդէն որ արևու տեղ կը գործածուէր, ինչպէս որ ըսինք վերը,

գերէն աւելի Հայերը կը պաշտեն Անահիտը, և շատ մեհեաններ շինած են այլ և այլ տեղ, և փառաւոր մեհեան մը Եկեղեաց գաւառին մէջ։

կար ուրիշ Արամազդ մ՚ալ որ է ըստ Յունաց Դիոս կամ Զեւս, ամէն աստուածներու գլուխ ու հայր, և երկնքի ու երկրիս ստեղծող, որուն ինչպէս որ կ՚ըսէ Յովհան Իմաստասէր, այլեայլ ազգեր զանազան անուններ կու տային. Քուշացիք Ներրովթ կ՚ըսէին, Բաբելացիք Բէլ, Փղշտացիք Բահաղ, Հելլենացիք (այսինքն Յոյնք) Դիոս կամ Զեւս, Պարսիկք Որմիզդ, Հայք Արամազդ: Ասոր պաշտօնը Յոյներէն մտաւ մեր ազգին մէջ, որուն փառաւոր մեհեանը կար Անի բերդին մէջ, որ շինեց Տիգրան Բ, ուր կանգնուած էր Ողոմպիական Դիոսի կամ Արամազդայ փառաւոր արձանը, որ Արտաշէս Յունաստանէն բերաւ:

337. Բաց 'ի այս Արամազդէն ուրիշ Արամազդներ ալ կա՞ն:

Կը համրուին իրեք չորս Արամազդներ ալ, որոնցմէ մէկն էր այն Արամազդը որ օտարասէր, հիւրընկալ, հիւրասէր և վանատուր մակդիրներով կը զարդարուէր, որոյ տօնը փառաւոր հանդէսով կը կատարուէր Հայաստանի մէջ Նաւասարդին առջի օրը, և առանձին կերպով կը պաշտուէր Բագուանին մէջ:

338. Վահագնի վրայ ի՞նչ գիտելիք կան:

Մեր նախնեաց մէջ երկու Վահագն կը յիշուի, մէկը բուն մեր հայկազն Վահագնը, որ իրեն մեծամեծ քաջութիւններուն համար, Վիրք աստուածացուցին զինքը

ու սկսան պաշտել, որոյ պաշտօնը կ'երևի թէ ետքերը մտաւ մեր ազգին մէջն ալ, և սովորաբար կը պաշտէին անտառներու և անձաւներու մէջ, ու քաղաքներու և գիւղերու պաշտպան ոգին կը համարուէր հրէշներու ու կատաղի գազաններու դէմ։ Երկրորդն է Յունաց Հերակլէսը, որոյ քաջութիւնները մեր Վահագնին քաջութիւններուն նման ըլլալուն՝ մեր նախնիք իրեն Վահագն անուն տուին. որոյ պղնձէ ոսկեզօծ առնապատկերը այսինքն արձանը՝ Արտաշէս փոքր Ասիայէն Հայաստան բերաւ Արմաւիր քաղքին մէջ դնելու համար, բայց իր մահուընէն ետքը Տարօնոյ Աշտիշատ աւանը փոխադրեցաւ։

339. Ո՞րն է Ափրոդիտէն։

Ափրոդիտէն որուն որ մենք Աստղիկ կ'ըսենք, տարբեր է մէկալ Աստղիկէն զոր լուսնոյ տեղ կը պաշտէին։ Ափրոդիտէին կամ Աստղիկան պաշտօնը, որուն Լատինացիք Վեներա կ'ըսեն այսինքն Արուսեակ, Յունացմէ մտաւ մեր ազգին մէջ, որոյ արձանը Արտաշէս Յունաստանէն բերաւ, և ետքը Տիգրան Արտաշէսին յաջորդը դրաւ Աշտիշատ աւանին մէջ Հերակլեայ կամ Վահագնի արձանին քով։ Աստղիկան կամ Ափրոդիտէին, որ անառակութեան ու ամմէն զարշելի պղծութեան աստուածուհի է, նուիրած էր մրտենին ու ծաղիկներէն վարդը. անոր համար կ'երևի թէ մերոնք կռապաշտութեան ատեն ասոր տօնը վար-

դավառ կ'անուանէին, նոյն օրը վարդերով իրենք զիրենք ու իրենց կուռքերը պսակելուն համար։ Ասոր տօնը փառաւոր հանդէսով կը տօնէին Վահեվահեան մեհենին մէջ։

340. Վահեվահեան մեհենին վրայ ինչ գիտելիք կան։

Վահեվահեան մեհեանը որ Տարօն գաւառին Աշտիշատ* աւանին մէջն էր, Հայաստանի ամենէն հարուստ մեհեաններէն մէկըն էր, և թերևս առջինը, ուր շատ ոսկիէ արծըթէ գանձեր պահուած կային և թագաւորներու մեծամեծ ընծաներ։ Այս ընդարձակ մեհեանը իրեք զատ մեհեաններ կը բաժնուէր, և մէջը իրեք բագին կար զանազան կուռքերու։ Առջի մասը կ'ըսուէր վահեվահեան, որոյ անունով նաև բոլոր մեհեանն ալ Վահեվահեան կ'անուանէր, ասոր մէջն էր Հերակլէսի պղնձէ ոսկեզօծ արձանը զոր Սկիւլիս և Դիպինոս երկու կրետացի անուանի քանդակագործները շիներ էին։ Այս արձանը, ինչպէս որ ըսինք վերը, Արտաշէս Ա. փոքր Ասիայի մէջ գտնելով բերաւ Հայաստան ու կ'ուզէր Արմաւիր քաղքին մէջ տնկել. բայց երբոր Արտաշէս մեռաւ, Վահունի ցեղին քրմապետները կարծելով որ այս Հերակլէսին արձանը

* Աշտիշատ աւանին անունը եղած է յաշտ (զոհ) և շատ բառերէն, կռոց քաղաք ըլլալուն համար, որոնց ամէն օր անթիւ զոհ կ'ըլլուէր։

իրենց Վահագն Թագաւորին արձանն է, բերին Աշտիշատին մէջ տնկեցին, որ իրենց քաղաքն էր։ Վասն զի մեր Վահագնին վրայ ալ կըպատմուի թէ վիշապի մը հետ կռուելով կտրեց անոր գլուխը, ինչպէս այս Հերակլէսին արձանն ալ նոյն բանը կը ձեւացընէր, անոր համար կ'ըսուէր վիշապաքաղ։ Այս արձանը Հայաստանի մէջ ութերորդ Վահագնի արձանը եղաւ։ — Երկրորդ մեհեանն էր ոսկիածին, ոսկիամօր ըսուած Անահտայ, որոյ մէջ կար իրեն բագինը ու ոսկիէ փառաւոր արձանը, որուն կը զոհէին արջառներ. և այն արջառները որ որոշուած էին Անահտայ զոհ ըլլալու, կրնային արձակ համարձակ դաշտերու մէջ պտըտիլ ու խոտ ուտել, և չէր կրնար մէկը անոնց դպչիլ ու վնասել, վասն զի Անահտայ նշանը իրենց ճակտին վրայ ունէին։ Այս երկրորդ մեհեանն ու բագինը մէկալ երկուքէն աւելի հին էր, վասն զի Ա. Արտաշէսէն առաջ կար։ — Երրորդ մեհեանն էր Աստղկան կամ Ափրոդիտէի մեհեանը. որոյ արձանը Արտաշէս Ա. Յունաստանէն բերաւ, ու Տիգրան Բ Աշտիշատ աւանին մէջ Հերակլեայ արձանին քով կանգնեց։

341. Որո՞նք էին Գեմետր և Գիսանէ կուռքերը։

Գեմետր և Գիսանէ երկու եղբարք էին որ Վաղարշակայ ատեն Հնդկաստանէն փախչելով Հայաստան եկան. և Վաղարշակ սի-

րով ընդունելով զիրենք . Տարօն գաւառին մէջ իրենց բնակութեան տեղ տուաւ , զոր որդւոց որդի ժառանգեցին : Երբոր իրենք մեռան, իրենց զաւկըները աստուածոց կարգը անցուցին զիրենք , ու բագիններ շինեցին և սկսան պաշտել , և Գիսանէին համար պղնձէ 30 կանգուն բարձրութեամբ արձան մը շինեցին , և Դեմետրէին 15 կանգուն : Այս արձանները ու բագինները՝ որ գիւղ բնակարան եղեր էին , սուրբն Գրիգոր Լուսաւորիչ աստուածային զօրութեամբ կործանեց , և շինեց անոնց տեղը Մշու Սուրբ Կարապետ ըսուած եկեղեցին , որով քով շինուեցաւ ետքը Գլակայ վանքը :

342 . Բարշամին կուռքին պաշտօնը ո՞ւսկից մտաւ Հայոց մէջ :

Հայերը կը պաշտէին նաև Բարշամին անունով կուռք մը , որ ըստ ոմանց Բարշամ Ասորին է , զոր Արամ նախահայրը սպաննեց . բայց ետքը Ասորիք իրեն քաջութիւներուն համար աստուածոց կարգը անցուցին ու սկսան պաշտել իբրև Արևու որդի . Տիգրան միջին ասոր փղոսկրէ , բիւրեղէ և արծըթէ շինած արձանը Միջագետաց կողմէն Հայաստան բերելով անկէց Դարանաղեաց գաւառին Թորդան գեղին մէջ , մանաւոր մեհեան մը շինելով . և անկէց ետքը Հայերն ալ սկսան պաշտել , որոյ արձանին ճերմկութեանը համար սպիտակափառ ածականը կու տային , ինչպէս կ'ըսէ Ագաթանգեղոս . « Էր 'ի գեօղն Թորդան մեհեան ա-

նուաննեալ սպիտակափառ գիցն Բարշիմնիա » ։ Այս հարուստ մեհեանը սուրբն Գրիգոր Լուսաւորիչ կործանեց ու արձանն ալ փշրեց ։

343. Բաց 'ի այս կուռքերէն ուրիշ ինչ կուռքեր կը պաշտէին Հայերը ։

Հայերը կը պաշտէին նաև Արամազդայ աղջիկը Նանէ, որոյ մեհեանը շինուած էր Թիլ աւանին մէջ, զոր սուրբն Գրիգոր կործանեց ։ Հեփեստոս կամ Եփեստոս Արամազդայ որդին՝ որոյ արձանը Արտաշէս Ա. Յունաստանէն բերաւ, և Տիգրան իրեն յաջորդը դրաւ Բագառինջ կամ Բագայառինճ գեղին մէջ որ բագնաց* քաղաք էր, ուր մասնաւոր մեհեան մը շինեց որ Միհրական մեհեան ըսուեցաւ, վասն զի Հեփեստոս կրակի աստուած է ։ Այս մեհեանն ալ Գրիգոր Լուսաւորիչ կործանեց ու մէջի հարստութիւններն ալ աղքատաց բաժնեց ։ — Ապողոն, որոյ պղնձէ ոսկեզօծ արձանը Արտաշէս Ա. Փոքր Ասիայէն Հայաստան

* Բագին ըսելով կը հասկըցուի այն սեղանը որոյ վրայ կրակապաշտութեան ատեն մշտավառ կրակ կը վառէին ու կը պաշտէին. և սովորաբար բագնին դիմացը արևու պատկեր մը կ'ըլլար ։ Այս տեսակ տաճարները կ'ըսուին պարսիկ բառով ատրուշան, որ ըսել է կրակարան, վասն զի ատր կրակ ըսել է ։ Կրակատուն կամ ատրուշան բառին տեղ երբեմն մեր մէջը Տօխրաթան ալ կ'ըսուի ։

խաւրեց, որ դրուեցաւ Արմաւիր Թագաւորանիստ քաղաքին մէջ* ։

344. Կուռքերու մարդազոհ ընելու սովորութիւն կա՞ր Հայոց մէջ թէ չէ ։

Կ'երևի թէ ընդհանուր Հայոց մէջ սովորութիւն չկար մարդազոհ ընելը, ինչպէս որ Կարքեդոնացիք և ուրիշ ազգերէն ոմանք շատ կ'ընէին ։ Միայն տեղ մը յիշատակութիւն կայ դիւացեալ վիշապններու, որոց

* Հոս երկու իրարու հակառակ, բայց միանգամայն զարմանալի գիտելու բան կայ ․ Նախ Ա Արտաշէսի կուռքերը շատցընելու ու կռապաշտութիւնը Հայաստանի մէջ խօթելու համար ունեցած սաստիկ նախանձը, անանկ որ կարծես թէ իր ամէն քաջութիւններէն ու յաղթութիւններէն մեծ կը սեպէր կուռքի փառաւոր արձան մը ձեռք ձգելը ։ Այս իր նախանձին հետևող եղաւ նաև իր որդին Տիգրան միջին, որոյ համար կ'ըսէ Խոր․ (Բ․ ԺԴ) « Առաջին գործ զմեհեանսն շինել կամեցաւ »․ վասն զի Թագաւոր ըլլալուն պէս էն առջի գործը եղաւ հօրը բերած կուռքերը ասդին անդին զետեղելը զատ զատ մեհեաններ շինելով։ Երկրորդ գիտելու բանն է Գրիգոր Լուսաւորչի նոյնպիսի սաստիկ եռանդն ու նախանձը, որ այն կուռքերը բոլոր փշրեց, ու մեհեաններէն ոմանք կործանեց ոմանք ալ եկեղեցւոյ վերածեց ։ Ասանկով ինչպէս մէկ հոգւոյ ձեռքովը կռապաշտութիւնը մտաւ կամ հաստատեցաւ Հայաստանի մէջ, նոյնպէս ուրիշ հոգւոյ մը ձեռքովը վերցուեցաւ ․ երկուքն ալ նախանձաւոր իրենց հաւատքին վրայ, բայց մէկուն նախանձը սուտ ու սատանայական, մէկալինը ճշմարիտ ու աստուածական ։

կոյս աղջիկ ու անմեղ տղաներ զոհ կ'ընէին. ասով կ'երևի թէ Հայաստանի մէջ թէպէտ և ըլլայ ալ մարդազոհ ընելու սովորութիւնը, այն ալ խիստ քիչ, և մասնաւոր մէկ քանի տեղ կամ ատեն. ընդհանրապէս կենդանիներ կը զոհէին, ու այլևայլ հարուստ ընծաներով կը զարդարէին կուռքերուն մեհեանները, որով շատ հարուստ մեհեաններ կային Հայաստանի մէջ. որ ատեն ատեն թշնամեաց աւար եղան, ու անոնց հարստութեանը պատճառ:

345. Քանի՞ երևելի մեհեաններ կային Հայաստանի մէջ:

Հայաստանի մէջ այլևայլ տեղեր շատ մեհեաններ կային, որոց մէջ եօթը աւելի երևելի էին, ինչպէս որ կը յիշէ Ագաթանգեղոս, որոց մեծն Խոսրով Պարսից Արտաշիր Թագաւորին դէմ մեծամեծ յաղթութիւններ ընելէն ետև, ուրախութեան համար խաւրեց շատ ճերմակ ցուլեր, նոխազներ, ձիեր, ջորիներ, ոսկիէ արծըթէ զարդեր և ուրիշ մեծամեծ պարգևներ:

346. Կռապաշտութենէն զատ ուրիշ ի՞նչ տեսակ աւելորդապաշտութիւններ կային Հայոց մէջ:

Ինչպէս ուրիշ հին հեթանոս ազգերը, սանկ ալ նաև Հայերը այլևայլ աւելորդապաշտութիւններ ունէին. կը հաւատային կախարդութիւններու, հմայից, աստեղագիտութեան, երազագիտութեան, ճիւաղներու, և ուրիշ մանր մունր աւելորդապաշ-

տութիւններու ։ Կը հաւտային նաև մեռելակոչութեան, որ ինչուան քրիստոնէութեան առեն ալ մնացած էր ․ վասն զի կ՚ըսէ Բուզանդ քաջն Մուշեղին համար՝ զոր սպաննեց մեր Վարազդատ Թագաւորը, թէ իր ընտանիքը անոր մարմինը տանիքի վրայ դրած, կը յուսային որ քաջ մարդ ըլլալուն համար Առլէզները գան ու լզելով կենդանացընեն ․ ու անանկ կեցաւ ինչուան որ հոտեցաւ մարմինը ։ Այս բանս կը պատմուի նաև մեր Արայ նահապետին վրայ ալ ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ․

*Հայաստանի մէջ քրիստոնէութեան մնացելոց վրայ ․*

347 ․ Քրիստոնէութիւնը երբ մտաւ Հայաստանի մէջ ։

Ինչպէս որ ջրհեղեղէն ետև աստուածպաշտութիւնը նախ Հայաստանի մէջ սկըսաւ, ասանկ ալ նաև քրիստոնէութիւնը նախ Հայաստանի մէջ տարածեցաւ, հաւատալով 'ի Քրիստոս մեր Աբգար Թագաւորը ․ որ Միջագետաց Եդեսիա քաղաքին մէջ կը թագաւորէր ։ Եւ ինչպէս որ հաւանական կ՚երևի, լսելով նախ իրեք մոգերէն մեսիային գալուստը ․ հաւտացեր էր իրեն ․ և աւելի այս հաւատքին մէջ հաստատեցաւ իրեն իրեք երևելի նախարարներուն խօսքովը, զորոնք խաւրեր էր Մարինոսին

չնորհաւորելու համար, որ Հռոմայեցւոց կայսեր կողմանէ նոր հազարապետ դրուած էր Փիւնիկեցւոց, Պաղեստինացւոց, Ասորւոց ու Միջագետաց երկրին ։ Վասն զի այս նախարարները երբոր իրենց գործողութիւնը լմնցուցին, դառնալու ատեն Աստուծոյ նախախնամութեամբը հանդիպեցան Երուսաղէմ, Քրիստոսի հրաշքները տեսնելու համար, որոյ վրայ շատ բաներ լսեր էին. ու հոն լսածներնէն աւելի աչքով տեսնելով, երբոր դարձան իրենց տեղը, պատմեցին Աբգարու տեսածնին. և Աբգար ճշմարտապէս հաւատաց 'ի Քրիստոս, ըսելով թէ իրաւցընէ Աստուծոյ որդին է, վասն զի չկայ մէկը որ մեռեալ յարուցանէ բայց եթէ Աստուած ։

348. Աբգար 'ի Քրիստոս հաւատալէն վերջը ի՞նչ ըրաւ ։

Թուղթ մը գրեց Քրիստոսի որ գայ իր շինած քաղաքը ու զի՛նքը բորոտութենէ սրբէ. և Քրիստոս Թովմաս առաքելոյն ձեռքով թըղթին պատասխանը գրելով, խոստացաւ իրեն՝ համբառնալէն ետև իր աշկերտներէն մէկը խաւրելու որ զի՛նքը բժշկէ ։ Երբոր Աբգար Թադէոս առաքելոյն ձեռքովը մկըրտեցաւ ու իր հիւանդութենէն առողջացաւ, թուղթ գրեց Պարսից Ներսէհ թագաւորին ու Տիբերիոս Հռոմայեցւոց կայսեր որ հաւատան 'ի Քրիստոս, և ինքը Թադէոս առաքելոյն օգնութեամբը սկսաւ իր ժողովուրդը կռապաշտութենէ 'ի քրիստոնէութիւն դարձընել ։

349. *Հեղինէի՝ Աբգարու տիկնոջը վրայ ինչ գիտելիք կան։*

*Հեղինէ Աբգարու կինը՝ առջի հաւատացող թագուհին եղաւ, որ Աբգարու մահուընէն ետև երբոր Սանատրուկ թագաւորեց ու նորէն կռապաշտութիւն սկսաւ, չուզեց բնակիլ կռապաշտներու մէջ, գնաց Երուսաղէմի տաճարը, և հոն ոսկիէ աչտանակ մը ընծայ ըրաւ, ինչպէս որ կը յիշէ Յովսեպոս ալ. ու Ագաբոս մարգարէին գուշակած սովին ատենը, իր ամմէն ունեցածը ծախեց ու ցորեն գնելով կարօտեալներուն բաշխեց. ու ինքը հոն վախճանեցաւ, որուն փառաւոր գերեզման չինեցին Երուսաղէմի դրան առջև։*

350. *Թադէոսէն ետև ո՞ր առաքեալը եկաւ լուսաւորեց Հայաստանը։*

*Սուրբն Բարթողիմէոս առաքեալը, որ քարոզեց Հեր ու Զարևանդ գաւառները, Անձևացեաց երկիրը՝ ուր թողուց սուրբ Աստուածածնի պատկերը կուսանաց քով Հոգեաց վանքին մէջ, որ ինքը շիներ էր։ Քարոզեց նաև Սիւնեաց աշխարհին և անոր Գողթն գաւառին մէջ, ու Հայաստանի ուրիշ կողմերը, և նահատակեցաւ Հայաստանի Արեբանոս քաղաքը։*

351. *Այս երկու առաքեալներուն մահուընէն ետև Հայաստանի վիճակը ինչ եղաւ։*

*Հայք քրիստոնէութիւնը թողլով նորէն կռապաշտութեան դարձան. սակայն մեա-*

ցին տեղտեղ քրիստոնեաներ ալ, ինչպէս Անձևացեաց աշխարհը ինչուան Հռիփսիմեանց գալստեան ատեն, և Սիւնեաց երկիրը. բայց այս քրիստոնեաներն ալ երթալով աւելի քիչցան Թագաւորաց հալածմունքէն, մանաւանդ Խոսրով Թագաւորին Տրդատայ հօրը հանած հալածումէն, որ շատ մարտիրոս ըրաւ:

352. Հայաստանի երկրորդ անգամ լուսաւորութեանը պատճառ ով եղաւ:

Նախ Հռիփսիմեան կուսանք, որոնք թէպէտ չքարոզեցին Հայաստանի մէջ քրիստոսական հաւատքը, բայց իրենց մարտիրոսական մահուանը պտուղը եղաւ Ս. Գրիգոր Լուսաւորիչը, որ տասնուչորս տարի Խոր վիրապը կենալէն ետև, եղաւ մկրտեց Տրդատ Թագաւորը, իշխանները ու ժողովուրդը, և այս երկրորդ լուսաւորութիւնը որ եղաւ չորրորդ դարուն սկիզբը, առջինէն շատ աւելի մեծ էր, վասն զի գրեթէ բոլոր ազգը դարձաւ՚ի Քրիստոս: Եւ սակայն դեռ տեղ տեղ մնաց կռապաշտութիւնը, ինչպէս Գողթն, Տաշիր, Գարդման գաւառներուն մէջ, ուսկից սուրբն Մեսրոպ վերցուց. Նոյնպէս նաև Տարօնին մէջ, Ծոփաց գաւառին մէջ, և այլն: Մնացած էին ինչուան սրբոյն Մեսրոպայ ատենը Միջագետքի մէջ նաև Արևորդիք ըսուած արև պաշտող մարդիկ, որոնցմէ կը գտնուէին նաև ինչուան Շնորհալւոյն ատենները նոյն կողմերը ու Սամոստիա քաղաքը, ինչպէս որ վերը ըսինք:

353 . Գրիգոր Լուսաւորիչ քրիստոնէութիւնը տարածելու համար ինչ ըրաւ ։

Սկսաւ այրել կռապաշտական ու մեհենական գրուածները, կործանել կռոց մեհեանները, որոց մէջ անուանի էին Արտաշատու մէջ Անահտայ տաճարը, Թորդանին մէջ Բարշամինը, Անիի մէջ Արամազդինը, Երէզ աւանին մէջ Անահտայ, Աշտիշատ աւանին մէջ Վահէվահեան մեհեանը և այլն ։ Ու անոնց տեղը սկսաւ եկեղեցիներ շինել քաղաքներու գեղերու ու Հայաստանի ուրիշ ամմէն կողմերը, և եկամուտ կը կապէր եկեղեցիներու, քահանաներու*, և այլն, և չորս հարիւրէն աւելի եպիսկոպոս ձեռնադրեց Հայաստանի այլեւայլ գաւառներուն համար ։ Այս ամմէն բարի գործողութեանց ձեռնտու էր Տրդատ թագաւորը թէ սուրով, թէ բարի օրինակով, և թէ յորդորելով ։

354 . Միաբանական կենաց սկզբնաւորութիւնը Հայաստանի մէջ նախ որոնց ձեռքով եղաւ ։

Նախ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ շինեց ասդիս անդին այլեւայլ վանքեր միաբանական կենաց համար, որոց մէջ անուանի

* Պապ Թագաւորը Տրդատայ յեկեղեցիս տըւած կալուածները բոլոր ակրութեան յափըշտակեց, եօթներորդ մասին երկուքը միայն անոնց թողլով. և գեղերուն մէջ եղած քահանաներուն թիւն ալ պակսեցուց իւրաքանչիւր գեղին մէջ մէկ քահանայ ու մէկ սարկաւագ դնելով ։

է Տարօնոյ Գլակայ վանքը որ Ս. Կարապետի վանք ալ կ՚ըսուի, ուր երբեմն 400 կրօնաւոր կային. Նոյն ինքն Ս. Գրիգոր իր կեանքը աստուածահաճոյ գործերով պսակելէն ետև, քաշուեցաւ Սեպուհ լեռը ճգնաւորական կեանք անցընելու, և ինքը նախ եղաւ Հայաստանի մէջ անապատաւոր կենաց առաջնորդ, որով մեր երկրին անապատներն ալ խստակեաց ճգնաւորներով զարդարեցան, որ զարմանալի ճգնութեամբ ու սրբութեամբ նախանձաւոր եղան Եգիպտոսի անապատներուն: Այս անապատական կեանքը Տարօնոյ մէջ ծաղկեցուցին Ս. Անտոն և Կրօնիդէս, զորոնք Լուսաւորիչ իր հետը Կեսարիայէն բերեր էր:

355. Սուրբ Գրիգորէն ետքը որո՞նք վանքերը շատցուցին ու բարեկարգութիւն մըտուցին:

Զորրորդ դարուն մէջ Ս. Եպիփան՝ Դանիէլ ծերունւոյն աշկերտը, որ Ծոփաց ու Աղձնեաց աշխարհին մէջ շատ վանքեր շինեց: Նոյն ատեն նաև Մեծն Ներսէս, որ Հայաստանի մէջ շատ տեսակ բարեկարգութիւններ ըրաւ, և շինեց շատ վանքեր, որոց թիւը 2000էն աւելի կը համրուի. ասոնցմէ շատը Պապ թագաւորը Մեծն Ներսէսը սպաննելէն ետև կործանեց: Նոյնպէս երևելի եղան նաև Ս. Սահակ, Մեսրոպ, և ԺԱ դարուն մէջ Գրիգոր Վկայասէր, որ վանական կենաց մէջ շատ բարեկարգութիւններ մտուց:

**356 .** *Իշխաններուն մէջ որոնք եղան եկեղեցական բարեկարգութիւններու պատճառ ։*

Իշխանաց ու Թագաւորաց մէջէն անուանի եղան Ե դարուն մէջ Վահան Մամիկոնեան մարզպանը որ կրօնաւորներուն թիւը շատցուց . Ժ ու ԺԱ դարերուն մէջ Գագիկ Ա Բագրատունի թագաւորը , Գրիգոր Պահլաւունի , Վահրամ Պահլաւունի , և Գրիգոր Մագիստրոս իշխանները , և Կիլիկեցոց Թագաւորներուն մէջ Լեոն Ա ։

**357 .** *Հայաստանի կրօնաւորներուն վիճակը ինչպէս էր ։*

Հայաստանի կրօնաւորները շատ խստակեաց էին , ինչպէս որ ինչուան հիմա ալ կ'երևի . շատերը բոլոր տարին միս չէին ուտեր , գինի բերաննին չէին առներ , ու միայն ընդեղէն ու կանաչեղէն ուտելով ու պարզ ջուր խմելով կ'անցընէին , միշտ աղօթքի հետ ըլլալով կային որ քրձազգած ու բոկ և լռակաց էին ։ Խստակրօնութեան կողմանէ երևելի վանքերն էին , Թանահատի վանքը , Խոտակերից վանքը , Կամրջաձորոյ վանքը , Երիցավանք , Մաքենիս , Խլաձորի վանք , Ստաթև կամ Տաթև , Սևան , և այլն ։ Սակայն կային մենաստաններ ալ ուր ուսման ետևէ ալ կ'իյնային , ինչպէս Գլակայ վանքը , Սևանայ վանքը , Հաղբատայ , Սանահնի ու Նարեկայ վանքերը ։ Հայաստանի մէջ եղած վանքերուն բազմութիւնը , որ ԺԱ դարուն

միայն Վասպուրական աշխարհին մէջ 900 կը համրուէին, որոնցմէ 115ը մեծամեծ վանքեր էին, ինչպէս կ'ըսէ Թովմա Արծրունի, կը ցուցընեն Հայոց կրօնասիրութիւնն ու աստուածսիրութիւնը ։

358 . Վանք բառին տեղ ուրիշ ինչ անուն կը տրուի ։

Վանք բառին տեղ որ շատ գործածուած է, կ'ըսուէր երբեմն նաև մենարան, մենաստան, բայց աւելի սովորական էր ուխտ բառը ։ Իսկ երևելի ու մեծամեծ վանքերը կ'ըսուէին մայրավանք կամ մայրաքաղաք, ինչպէս են Գլակայ, Հաղբատու, Սանահնի վանքերը ։

359 . Որո՞նք եղան Հայաստանի մէջ կուսաստաններ շինող ։

Առջի կուսաստանը շինեց Բարդուղիմէոս առաքեալ ամէն միանձանց վանքերէն առաջ Անձևացեաց երկրին մէջ, և վանքին անունը դրաւ Հոգւոց կամ Հոգեաց վանք, ուր իր շինած Ս. Աստուածածնի եկեղեցւոյն մէջ դրաւ Յովհաննէս աւետարանչին կիպարիս փայտէ շինած Ս. Աստուածածնի պատկերը, և կուսաններ դրաւ այս պատկերին պահապան ։ Երկրորդ անուանի եղաւ Մեծն Ներսէս, որ շատ կուսաստաններ շինեց Հայաստանի այլևայլ կողմերը ։ Ինչուան ԺԲ դար կը յիշուին կուսաստաններ՝ բայց քիչ էին թուով . որոնցմէ ԺԲ դարուն մէջ անուանի էր Քոբայր վանքը՝ ուր Թագաւորազուն կանայք ալ կ'երթային կուսութեամբ կրօնաւորելու համար ։

360 . Քրիստոնէական հաւատոյ համար Հայք ի՞նչ հալածանքներ քաշած են ։

Առջի հալածանքը եղաւ Պարսից Շապուհ Բ Թագաւորը Դ դարուն վերջերը , ու շատ մարդ մարտիրոս եղաւ ։ Այս հալածանքը աւելի սաստկացուցին Մերուժան Արծրունի ու Վահան Մամիկոնեան , որոնք Պարսից Թագաւորին հաճոյ ըլլալու համար հաւատքնին ուրացան , ու Պարսիկ զօրքերով վազեցին Հայաստան , եկեղեցիները կործանեցին , ատրուշաններ շինեցին ու կը ստիպէին զամէնքը որ Պարսից հաւատքն ընդունին , և ատով իրենց պիղծ ձեռքը համազգիներուն սուրբ արիւնովը շաղախեցին , և նահատակեցին զանոնք որ հաստատուն կեցան քրիստոսական հաւատքին մէջ ։ Բայց ետքերը Շապուհ տեսնալով որ հալածմունքով աշխարհը կ'աւրուի , ու բնակիչներն ալ կը պակսին , ու Քուշանաց պատերազմն ալ վրան գալով՝ դադրեցուց հալածմունքը , և Հայաստան խաղաղեցաւ ։

361 . Շապուհ Բ ին ատեն եղած հալածման պատճառը ի՞նչ էր ։

Վասակ Մամիկոնէին նախանձը . վասն զի կ'ըսէ Բուզանդ , թէ առաջ Պարսից Շապուհ Թագաւորին ու մեր Արշակ Թագաւորին մէջ մեծ սէր կար . բայց ետքէն Շապուհ վախնալով որ չըլլայ թէ Արշակ իրմէն բաժնուի ու Յունաց կայսեր հետ միանայ , երդում ուզեց իրմէն ։ Անոր համար Տիզբոն քաղքէն քահանաներ բերին ու անոնց առ-

ջնը Արշակ երդուընցաւ սուրբ Աւետարանին վրայ, Պարսից հետ սէրը հաստատուն պահելու համար, և ասով արձըկուեցան։

Եւ որովհետև այս ամէն բաները Վարդան Մամիկոնէին ձեռքով եղաւ, որով շատ սիրելի ալ եղաւ Շապուհին, Վարդանին Վասակ եղբայրը նախանձելով անոր վրան, փախաւ գնաց Յունաց կողմը, որպէս զի ասով ատելի ըլլայ իր Վարդան եղբայրը Պարսից առջև։ Այս բանս երբոր լսեց Շապուհ, կարծելով թէ Արշակայ հրամանովը եղած է, սաստիկ բարկ[illegible]ւ, ու միտքը դրաւ թէ Արշակ իր երդ[illegible]ը ոտքի տակ առած է. անոր համար նախ Տիզբոն քաղքին քահանայքն ու սարկաւագները 70 հոգի սպաննել տուաւ, ետքը սկսաւ բոլոր իր տէրութեան մէջ այսինքն Հայաստան, Ասորեստան, Պաղեստին ու Միջագետք սոսկալի հալածանք հանել, որով բիւրաւոր հոգիք մեռան, որոց թիւը ինչուան 200,000 կը համրուի, իսկ մեր Բուզանդը 40,000 կը դնէ։

362. Երկրորդ հալածանքը ինչպէս սկըսաւ։

Թէպէտ և Շապհոյ հալածանքը դադրեցաւ, բայց Պարսիկք մտքերնին դրին որ Հայերը իրենց հաւատքին դարձընեն. անոր համար Յազկերտ Ա. իր Շապուհ որդին Հայոց Թագաւոր դրաւ, որ Հայերը Պարսից կրօնը դարձընէ։ Այս չար խորհուրդը որ այն ատեն առաջ չկրցաւ երթալ, Յազ-

կերտ Բ ուզեց կատարել, ուստի հալածանք հանելով շատ հոգի մարտիրոս ըրաւ ու շատերն ալ Պարսից աղանդը դարձուց ։

363 . Յազկերտ Բ ին հալածման պատճառը ինչ էր ։

Այս երկրորդ հալածանքին՝ որ առջինէն սաստիկ եղաւ Հայաստանի մէջ, պատճառն էր Վարազվաղան Սիւնւոյն ատելութիւնն ու վրէժխնդրութիւնը ընդդէմ Վասակ Սիւնիին ։ Ասիկայ, ինչպէս կըսէ Ղազար Փարպեցի, առած էր Վասակ Սիւնեաց իշխանին աղջիկը իրեն կնութեան, ու [illegible] կը կռուէր իր կնոջը հետ, անոր համար կուզէր Վասակ զինքը սպաննել, բայց չկրնալով, վռնտեց զինքը Հայաստանէն, որ փախչելով գնաց ապաւինեցաւ Միհրներսեհ Պարսից հազարապետին, ու հոն իրեն հաճոյ ըլլալու համար, ուրացաւ հաւատքը, ու կը ջանար կամ բոլոր Հայոց աշխարհքը Պարսից աղանդին դարձընել՝ որով սիրելի ըլլայ Պարսից թագաւորին, և կամ սպաննել իր Վասակ թշնամին ։ Այս բանս իմանալով Վասակ ինքն ալ գնաց ուրացաւ հաւատքը՝ Վարազվաղանին ձեռքէն ազատելու համար . ու եռքը Պարսից թագաւորին աչքը մտնալու համար, սկսաւ ջանալ որ Հայերը պարսիկ ընէ, որով Հայաստանը տակնուվրայ ըրաւ և շատերը քրիստոնէութենէ դարձուց Պարսից աղանդը ։

Այս ատեն եղաւ Վարդանանց անուանի հաւատոյ պատերազմը Վասակին ու պար-

սիկ զօրքերուն դէմ, որոյ մէջ ընկաւ մեռաւ Վարդան մարտիրոսական մահուամբ 1036 հոգւով ։ Իսկ անօրէն Վասակ չէ թէ միայն իր փափաքին չհասաւ, հապա նաև չարաչար մահուամբ մեռաւ բանտի մէջ ։

364. Ի՞նչպէս դադրեցաւ այս աղետալի հալածումը ։

Այս հալածումն տևեց մինչուան Ե դարուն վերջերը Վաղարշ Բին ատեն ։ Եւ հալածումը դադրելուն պատճառն էր նախ Պարսից Հեփթաղներէն չարաչար յաղթըւիլը, որոյ մէջ Պերոզ Յազկերտին յաջորդը՝ մեռաւ. երկրորդ՝ Վահանայ Մամիկոնեանին քաջութիւններն ու յաղթութիւնները որ կ՚ընէր Պարսից դէմ ։ Ուստի Վաղարշ Բ Պերոզին յաջորդելուն պէս մէկէն հալածանքը դադրեցուց ու թոյլ տուաւ Մեծին Վահանայ որ Հայք քրիստոնէութիւնը համարձակ պաշտեն ու կրակատուները կործանեն, և զինքն ալ Հայաստանի մարզպան դրաւ ։

365. Վահանայ մարզպանութենէ ետև ինչ եղաւ Հայաստանի վիճակը ։

Վահանայ մահուանէն ետև երբոր սկսան տիրել Հայաստանի Պարսիկ մարզպաններ, նորէն հալածմունքը անպակաս էր, թէպէտ և առջիններուն պէս սաստիկ չէր. մինչուան որ Պարսից տէրութիւնը վերցուեցաւ 637ին ու Արաբացիք տիրեցին. և ասով Պարսից կողմէն հալածմունքը դադրեցաւ ու սկսաւ Արաբացոց կողմէն ։

366. ի՞նչ հալածումներ ըրին Արաբացիք։

Արաբացիք բաց անթիւ աւերմունքէն ու կոտորածներէն, ատեն ատեն հաւատոյ հալածմունք ալ հանեցին, ինչպէս Ջափր ամիրապետին ժամանակը և Բուղա ու Յուսուփ անօրէն ոստիկաններուն ատեն, որոնք գերի ըրած իշխանները ու ժողովուրդը կը ստիպէին մահմետական հաւատքն ընդունելու՝ մահ սպառնալով, և ասով շատերը դարձան ու շատերն ալ քաջութեամբ մարտիրոսացան։

367. Հայերը Յոյներէն ի՞նչ նեղութիւն քաշեցին հաւատոյ համար։

Եօթներորդ դարէն սկսեալ ինչուան Շնորհալւոյն ատենը Հայերը միշտ նեղութիւն կը կրէին Յոյներէն, որոնք կը ստիպէին զիրենք թողուլ իրենց ծէսերը ու յոյն ըլլալ. և այս բանս ինչուան տանջանքներով ալ կ'ընէին, և երբեմն թող չէին տար ալ որ Հայերը իրենց կաթողիկոս դնեն։ Եղան ոմանք որ դարձան յոյն եղան, ինչպէս Սենեքերիմ Վասպուրականի թագաւորին հետ Փոքր Ասիա գացող ժողովուրդէն մէկ մասը, որ ըսուեցան Հայհոռոմք. որոնցմէ ինչուան հիմա ալ կը գտուին այն կողմերը, և են դաւանութեամբ Յոյն և լեզուով և սովորութեամբք Հայ։

# ԳԼՈՒԽ ԺԴ.

## *Հայոց լեզուին առաջնութեանը վրայ.*

368. *Ո՞րն է աշխարհքիս մէջ առջի լեզուն։*
*Այս խնդրոյն վրայ շատ կարծիքներ եղած են, ոմանք Ասորերէնը, ոմանք Քաղդէացին և Փիւնիկեցին, և շատերը Եբրայեցերէնը կը դնեն, առանց լաւ քննելու թէ առջի լեզուն հոն մնացած պիտի ըլլայ, ուր որ Նոյ նահապետը ջրհեղեղէն ետքը բնակեցաւ, որ է Հայոց աշխարհքը. և որովհետև Նոյի լեզուն Ադամայ լեզուն էր, վասն զի կ'ըսէ սուրբ գիրքը թէ Բաբելոնի խառնակութենէն առաջ «Էր ամենայն երկիր լեզու մի և բարբառ մի ամենեցուն. ուրեմն Հայոց լեզուն որ Նոյի ատենէն յաջորդաբար եկած է՝ Ադամայ լեզուն է, ուստի և աշխարհքիս առաջին լեզուն։ Բայց այս կարծիքը տեղն 'ի տեղը ցուցընելէն առաջ, ջրենք նախ անոնց կարծիքը որ Եբրայեցերէնը առաջին լեզու կը դնեն, որով կը ջրուի նաև Քաղդէարէնին առաջին լեզու ըլլալը, որ Եբրայեցերէնին մայրն է, ուր ոմանք ազգութեամբ անոր ներհակը կը դնեն, այսինքն Եբրայեցերէնը Քաղդէացւոյն մայր։*

# ՅՕԴՈՒԱԾ Ա.

## Եբրայականին առաջին լեզու չըլլալուն վրայ

369. Ինչպէս կը ցուցընես թէ Հրէից լեզուն առջի լեզուն չէ։

Ա. Հրեայք ինչուան Աբրահամու ատեն դատ ազգ չէին ձեւացած, հապա Աբրահամէն սկսաւ, որ կը բնակէր Քաղդէացւոց երկիրը, որ Նոյի տապանէն ելլելէն ետեւ բնակած տեղէն շատ հեռու էր, և Աբրահամու նախահայրերը բոլոր Քաղդէացի ըլլալով, բնական է որ Աբրահամ նահապետն ալ անոնց լեզուն կը խօսէր։ Ուստի ինչպէս կ'ըսեն ոմանք Եբրայեցւոց լեզուին առաջին գտնողը Աբրահամ նահապետը եղաւ, որ էր Քանանացւոց լեզուն, (որ կ'ըսուի նաեւ Փիւնիկեցւոց լեզու) որով կը խօսէին Աբրահամու յաջորդները. և այս լեզուն սկսաւ բանեցընել Աբրահամ երբոր Աստուծոյ հրամանովը Քաղդէացւոց երկրէն ելլելով գնաց Քանանացւոց երկիրը։ Այս լեզուն ալ՝ երբոր ետքերը Հրեայք Բաբելոն քշուեցան, Քաղդէացւոց լեզուին հետ խառնուելով, երրորդ լեզու մը դուրս ելաւ, որով կը խօսէր Քրիստոս ալ ու իրեն աշկերտները։

Բ. Առաջին լեզուն այն ազգին մէջ մնաց, որ Ջրհեղեղէն ետեւ աստուածպաշտութեան ետեւէ էր, որ է Մասիս լեռան ստորոտը

բնակած ազգը, վասն զի Նոյ տապանէն ելնելէն ետև հոն իջաւ։ Իսկ Աբրահամ նահապետին նախնեացը ու հօրը կռապաշտ ըլլալը յայտնի է սուրբ Գրքէն. ուստի առոյգ չէ ըսելը թէ Նոյէն յաջորդութեամբ աստուածպաշտութիւնը անցեր է Եբերայ ցեղին, որ միշտ աստուածպաշտութեան մէջ մն[illegible] և աշտարակաշինութեան գործոյն [illegible]նուելով, առջի լեզուն ալ իրենց մէջ մնացեր է։

Գ. Հրէից լեզուին մէջ չկայ յիշատակարան մը տեղւոյ կամ մարդու անուններու որ անմիջապէս Նոյի ատենէն սկսած ըլլայ. և այն տեղւոյ կամ մարդու յատուկ անունները որ կը յիշուին Ծննդոց գրքին մէջ և նշանակութիւն մը ունին, անիկայ ապացոյց մը չկրնար ըլլալ Հրէից լեզուին առաջնութեանը. վասն զի Մովսէս հնգամատեանը գրելու ատեն, նոյն բառերը թարգմանելով կը դնէր, ինչպէս որ կ'ըսեն երեւելի պատմիչներէն ոմանք. և այս բանս կը տեսնուի նաև օտար թարգմանութեանց մէջ, ինչպէս նաև հայերէնի մէջ*։ Բայց ասկէց կան շատ բառեր Հրէից լեզուին մէջ, որոնց ստուգաբանութիւնը ամենևին

* Զոր օրինակ կ'ըսէ սուրբ Գրոց մէջ (Ծն. իզ. 20) թէ Իսահակ «կոչեաց զանուն ջրհորոյն Զրկումն» այսինքն ոչ եթէ Իսահակ ըրկուսն անուանեց ջրհորը. հապա այնպիսի բառով մը որ մեր մէջը թարգմանաբար զրկումն կը նշանակէ։

վերաբերութիւն մը չունի բառին հետ . ինչպէս Արարատ բառը Երրայեցւոց լե֊զուով կը նշանակէ Անէծք սոսանման , ուր մենք գիտենք ազգային պատմութենէ թէ Արային անունէն առնուած է ։

370 . Ի՞նչու համար սուրբ Հարց շատերը Հրէից լեզուն առաջին լեզու կը դնեն ։

Յոյն ու Լատին սուրբ Հարց[illegible] ինչպէս նաև մեր ազգէն Ս . Լուսաւոր[illegible]րդան վարդապետ և Երզնկացին , Հրէից լեզուն առաջին լեզու կը դնեն , աւելի բարեպաշ֊տութեան հոգւով քան թէ մասնաւոր քննութեամբ , հաւատալով Հրէից բարու֊նիններուն պատճառներուն ։ Բաց աւելէց Իսրայէլացւոց աստուածընտիր ժողովուրդ ըլլալուն ու աստուածաշունչը անոնց լե֊զուով գրուած ըլլալուն համար , կարծեցին թէ առջի լեզուն ալ եբրայեցերէնն է , որ անոնցմէ ամենևին չհեռանիր ։ Ուստի այս բանասիրական խնդրոյն մէջ սուրբ Հարց միայութիւնը պարզ կարծիք է ։ Նորերուն մէջ անուանի եղան Ուոլդըն , Կալմէթ և Պօշար որ պաշտպան կեցան Հրէից լեզուին առաջնութեանը , որոց կարծիքը Հուետիոս և ուրիշները զօրաւոր պատճառներով կը ջրեն ։ — Դառնանք հիմա ցուցընենք թէ Հայոց լեզուն աշխարհիս առաջին լեզուն է , որ Հրէից լեզուին առաջին չըլլալուն չորրորդ ամենազօրաւոր պատճառը կ'ըլ֊լայ ։

# ՅՕԴՈՒԱԾ Բ.

## Հայոց լեզուին առաջնութեանը վրայ

371. Հայոց լեզուին վրայ ի՞նչ գիտելիք կան :

Հայոց լեզուն հին մայրենի լեզու է, և ինչպէս որ պիտի ցուցընենք՝ ադամային լեզու, ուստի կը սխալին մեծապէս անոնք որ մեր պատմութեանը և աշխարհագրութեանը տեղեկութիւն չունենալով, Հայոց լեզուն Ասորւոց կամ Մարաց կամ Արաբացւոց և կամ Եբրայեցւոց լեզուէն ելած է կ՚ըսեն, այն ազգերուն սահմանակից եղած Հայաստանի գաւառներուն մէջ անոնց սովորութիւններէն մէկ քանին, նաև անոնց բառերէն մեր լեզուին մէջ ալ գտնուելով, որ ասիկայ ամէն սահմանակից գաւառներուն մէջ ալ կ՚ըլլայ նաև ուրիշ տեղեր :

372. Ինչէ՞ն կը ցուցընես թէ Հայկայ խօսած լեզուն հիմակուան մեր խօսած լեզուն է :

Հայկ որ Բաբելոնի աշտարակը շինող հսկայից մէկն էր, երբոր հոն եղողներուն լեզուն խառնակեցաւ, դարձաւ ինքը իրեններովը Հայաստան եկաւ, և հոն տեղի բնակչաց լեզուն՝ զոր պատժուելով կորսընցուցեր էր, նորէն սովրեցաւ, և ինքը ինչ լեզու որ կը խօսէր այն ատեն, նոյն լեզուն

մնաց ինչուան հիմա ։ Եւ այս յայտնի է իրեն ու որդւոցը դրած տեղւոյ ու մարդկան անուններուն նշանակութենէն որ նոյնպէս կը նշանակեն հիմա ալ․ ինչպէս են, Հայկաշէն (Հայկէն շինուած), Գերեզմանք՝ ուր որ Բէլ իրեններովը ընկաւ պատերազմի մէջ, Արագած (Արմենակայ ագած, վասն զի հոն կը բնակէր ինքը), Արմաւիր (իբր Արմայիսայ իր կամ երկիր), Գեղաքունի կամ Գեղարքունի (Գեղամայ արքունի), Գեղամաշէն, Ցոլակ (ցոլացնող ակն), Այրարատ (Արայի արտ՝ ուր որ ինքը մեռաւ), Գառնիկ, փառնակ (փառացի), Պերճ, Բազուկ, Սկայորդի, Զարմայր (զարմանալի այր), Հրաչեայ, Հրանտ (հրաւանդ) Վահան, Սանատրուկ (տուրք Սանոտայ՝ դայեակին անունովը տրուած), Սլաք, (ժանտ բնութիւն ունենալուն համար), և այլն ։

Չի կրնար մէկը ըսել թէ Հայաստանի բնակիչները Հայկայ խառնակած լեզուն սովրած ըլլան և այն լեզուն ինչուան հիմա մնացած ըլլայ, վասն զի, Ա․ անհնարինական է որ քիչը շատին հետևի քան թէ շատը քիչին․ ուստի Հայկ և ընկերները որ թուով քիչ էին, պէտք էր որ տեղացոց լեզուն սովրէին, որ իրենց առջի լեզուն ըլլալով, դիւրաւ ալ կրնար սովրիլ ։ Բ․ Հայկ գիտէր որ լեզուաց խառնակութիւնը պատժոյ համար եղած էր․ արդ ինչպէս կրնար թողուլ իր առջի նախնական լեզուն, զոր կը խօսէին բոլոր իր պապերը ու իր

Թորգոմ Հայրը որ Հայաստանի մէջ մնացեր էին, և ինչպէս կրնար ինքը քիչ հոգւով իր խառնակած լեզուն տարածել Հայաստանի մէջ անոնց հակառակ. գիտենք ալ թէ երբոր Հայաստան դարձաւ առջի բնակութեան տեղը Հարք անուանեց իր նախնեացը ու հօրերուն յիշատակը պահելու համար, որ յայտնի ապացոյց է անոնց վրայ ունեցած սիրոյն։

373. Ինչէ՞ն կը ցուցընես թէ Նոյի խօսած լեզուն անփոփոխ մնաց Հայաստանի մէջ։

Նոյ, ինչպէս ուրիշ տեղ ըսինք, երբոր տապանէն ելաւ բնակեցաւ Հայաստանի մէջ, և իրեն սերունդը բազմացաւ, որոնց ամենուն լեզուն նոյն Նոյի խօսած լեզուն էր։ Երբոր այնչափ շատցան՝ որ երկիրը բաւական չէր զիրենք կերակրելու, շատերը ելան Հայաստանէն ու գնացին Սենաար դաշտը, և ուզեցին ամբարտաւանութեան խորհուրդով այն բարձր աշտարակը շինել. որոյ վրայ Աստուած սաստիկ բարկանալով կործանեց աշտարակը ու լեզունին խառնեց, սովորական կարծիքին նայելով եօթանասունուերկու լեզու բաժնուեցաւ։ Իսկ Հայաստանի բնակչաց լեզուն անփոփոխ մնաց։ Չենք կրնար ըսել թէ Նոյէն մնացած լեզուն վերցուած ու կորսուած ըլլայ Հայաստանէն. վասն զի թէ որ խառնակած լեզուները չվերցուեցան և ինչուան հիմա կան, ինչո՞ւ համար վերցուի այն լե-

զոյգ որ Ադամէն ինչուան Նոյ տեւեց ան-պատուհաս մնաց · և զարմնալ չվերցուե-ցաւ այն ազգը որ Հայաստանի մէջ բազ-մացաւ, ուրեմն և ոչ ալ իրենց լեզուն ։ Եւ զարմնալ, չենք կրնար ալ ըսել թէ բոլորո-վին ուրիշ լեզուի փոխուեցաւ, վասն զի թէ որ մէկալ լեզուները չփոխուեցան, ին-չու փոխուի այս լեզուն ։ Այս բանս կ՚ըսենք ընդհանրապէս, ոչ եթէ պատահական փո-փոխմանց համար, որ ամէն լեզուներու մէջ ալ եղած են · ուստի և Հայու լեզուին մէջ ալ եղած կրնան ըլլալ, զանազան առ-ջերէ Հայաստան եկած գաղթականներէն ու շրջակայ ազգերէն * ։

744 · Ինչէ՞ն կը ցուցընես թէ Նոյի լեզուն մեր հիմակուան խօսած լեզուն է ։

Ա · Ասով որ Հայաստանի մէջ նոյն բազ-մացած ազգը չփոխուեցաւ բոլորովին, հա-պա նոյն Հայոց ազգն է որ որդւոց որդի յա-

* Մեր լեզուն եօթը գլխաւոր ճիւղ բաժնուած էր հին ատեն, ինչպէս կը դնէ Յովհան Երզնկա-ցին հին քերականութեան մեկնութեան մէջ՝ Ստեփաննոսէն առած, այսինքն Կորճայք, Տայե-ցի, Խութացի, Չորրորդ Հայեցի, Սպերացի, Սիւնի, Արցախային · և այս լեզուները եզերական կը կոչէ, իբրև թէ Հայաստանի ծայրը կամ սահմանա-գլուխները խօսուած լեզուներ ։ Ամենէն մաքուրն էր միջնաշխարհին լեզուն այսինքն Այրարատ նա-հանգին՝ ուր կը նստէր թագաւորը · և Ոստա-նիկներուն լեզուն, որ Չորրորդ Հայոց մէկ կողմը կը բնակէին ։

Ջորդմարար եկած է պահելով Նոյին խօսած լեզուն, որ ինչուան իրմահը Հայաստանի մէջ բնակեցաւ։

Բ. Նոյի ատենէն մնացած տեղւոյ անունները՝ որոնք մէյմէկ անգիր ու հաստատուն յիշատակարաններ են, թէ Նոյ Հայաստան իջաւ և թէ ինչ լեզու որ կը խօսէր ինքը՝ նոյն լեզուն մնացած է ինչուան հիմա. վասն զի տեղւոյ անունները ինչ որ կընշակէր նոյն ատեն հիմա ալ նոյնպէս կը նշանակեն. և այս մեծ ապացոյց է թէ Նոյի խօսած լեզուն՝ մեր գրաբառ լեզուն է։ Օրինակի համար հօս մէկ քանին յիշենք։

ա. Նախիջուան, (Նախ իջեւան)* ուր Նոյ տապանէն ելլելուն պէս նախ իջաւ, և տեղւոյն անունը այսպէս անուանեցին Նոյ և իրեն որդիքը, և այս բանս հաստատուն աւանդութեամբ ինչուան մեզի հասած է։ Այս բանիս կը վկայէ նաև Յովսեպոս ըսելով, թէ Հայք Նոյին իջած տեղը Արովագէրիոն կը կոչեն, որ Հայոց Նախիջեւան բառին յունարէն թարգմանութիւնն է։ Արդ ինչպէս որ Յովսեպոսէն ինչուան հիմա մնացած է այս աւանդութիւնը, որ Քրիստոսէ քիչ մը առաջ էր, նոյնպէս ալ Նոյէն ինչուան Յովսեպոս կրնար մնալ։

բ. Ակոռի (արկ ուռի) ուր որ Նոյ նախ

* Նախիջուան քաղաքին ու գաւառին անունը կը գրուի նաև Նախճաւան, Նախիջաւան, Նախիջեւան, Նախջեւան։

այգի տնկեց , և կ'իյնի անմիջապէս Մասիս լերան ոտքը , որոյ գինին շատ յարգի ու ազնիւ էր . և կը կարծուի թէ Նոյ այս տեղւոյն գինիէն խմելով գինովցեր է ։ Այս գեղը 1840ին Մասիս լեռնէն եկած հրաբխովը բոլորովին կործանեցաւ , բայց տեղը յայտնի կեցած է ։

գ . Երևան ( երևեցան ) կը կարծուի թէ այս անուամբ կոչեցաւ այն տեղը որ ամենէն առաջ տապանին մէջէն տեսան , երբոր սկսեր էր ջուրը երթալով ցածնալ ։

դ . Առնոյոտն , ( ոտն առ Նոյ ) ինչպէս որ յիշուած է այս կերպով ( Թովմ . Արծր . ) որ Վասպուրական աշխարհին գաւառներէն մէկն է , Նախջուանի և Ակոռի գեղին մօտ , որոց մէջտեղուանքը բնակեցաւ Նոյ ։ Ոմանք Առնոյոտն գաւառին մէջ թաղուած է կ'ըսեն Նոյ , բայց Վարդան աշխարհագիրը Նախջուանի մէջ կը դնէ Նոյի գերեզմանը ։

դ . Մարանդ ( մայր անդ ) որ կ'ըյնի Վասպուրական աշխարհին մէջ , ուր թաղեցաւ Նոյեմզար Նոյի կինը , ինչպէս որ կ'ըսէ Վարդան աշխարհագիրը , և կ'ըյնի Նախջուանի մօտերը ։

ե . Ցրօնք , Աստղնբերդ , որ Նոյի ատենէն գրուած են . վասն զի Ոլոմպիոդորոս հին աւանդութենէ առած կ'ըսէ , թէ Տարբան Սեմայ որդին իր անունովը կոչեց Տարօն գաւառը . բաց ասկէց այն տեղը ուկէց իր որդիքը բաժնուեցան ու ցրուեցան կոչեց Ցրօնք ։ Իսկ Աստղնքերդ կոչուեցաւ

Նոյի Աստղիկ աղջկանը անունովը, և կ'ըյնի Տարօնի մէջ։

375. Նաւասարդ բառին վրայ ինչ գիտելիք կան։

Ծննդոց գրքին մէջ կ'ըսէ թէ առջի ամսուն առջի օրը պակսեցաւ ջուրը երկրիս երեսէն, և Նոյ բացաւ տապանին ծեղունը և տեսաւ որ պակսեր էր։ Արդ յայտնի է որ մեծ ուրախութիւն ունեցան այն օրը տապանին մէջ եղած մարդիկը ջուրին ցածնալուն համար, և որպէս զի այն օրուան յիշատակը չկորսուի, կոչեցին Նաւասարդ՝ իբր թէ (Նաւաստ աւարտ կամ Նաւ հասարդ)։ Այս մեծ ուրախութեան յիշատակը միշտ մնացած էր Հայաստանի մէջ. վասն զի կռապաշտութեան ատեն ամէն տարի Նաւասարդին առջի օրը, որ է ըստ Հայոց տարւոյն առջի օրը, ամէն կողմէն ժողվուած մեծ հանդէսով տօն կը կատարէին, որ կ'երևի թէ Նոյի ատենէն սկսած էր, և կամ թէ նոյն իսկ Նոյի ջրհեղեղէն ազատելէն ետքը Աստուծոյ ըրած շնորհակալութեան ողջակիզին յիշատակն էր, և ամէն տարի տարեդարձին օրը նոյն ուրախութիւնը կը կատարուէր Հայաստանի մէջ։ Բայց կռապաշտութեան ատեն այս տօնը այլևայլ կուռքերուն անունովը կ'ըլլար Աշտիշատ աւանին Վահէվահեան մեհենին մէջ, և կ'անուանէր Վարդավառ * նոյն օրը իրենց

* Այս Վարդավառ անունը Թերևս Հայաստա-

աստուածներուն արձանները ու կրենք զի-րենք վարդերով պսակելուն համար։ Այս մեծ աշխարհահռչակ հանդէսը և ուրախու-թիւնը Ս. Գրիգոր Լուսաւորիչ քրիստո-նէութեան ատեն Այլակերպութեան տօնին փոխեց։ Բայց ասկէց նաւասարդին մէջ այլակերպութեան տօնին օրը սովորութիւն կայ մեր ազգին մէջ որ մէկզմէկու վրայ ջուր կը ցանեն, որ հին ատենէն մնացած է, և Այլակերպութեան տօնին հետ ամենևին վերաբերութիւն մը չունի. ուստի յայտնի նշան է որ Ջրհեղեղէն ազատելուն յիշատա-կը պահելու համար եղած է այս սովորու-թիւնը մեր ազգին մէջ, Նոյի ժամանակէն սկսեալ։ Դարձեալ տեղ տեղ սովորութիւն կայ մեր ազգին մէջ որ աղաւնի կը թռցը-նեն նոյն օրը, որ է Նոյի տապանէն աղաւ-նի թռցընելուն յիշատակը։

Այսչափ ապացոյցներով բաւական կը

նի մէջ կռապաշտութիւն մնելէն առաջ աս-տուածապաշտութեան ատեն ալ կար. վասն զի ջրհեղեղին յիշատակը որ այսչափ մեծ հանդէսով կը կատարէին Նաւասարդին առջի օրը. վարդե-րուն ծաղկած ատենը ըլլալով, կ'երևի թէ իրենց աստուածապաշտ սեղանները վարդերով կը պսա-կէին ու կը զարդարէին, անկէց տօնին անունը դրուած ըլլայ Վարդավառ, և մնացած ըլլայ ին-չուան կռապաշտութեան ատեն։

Վարդավառ անունը Խորենացին Վարդավառի Ճառին մէջ, խորհրդաւոր մեկնութեամբ մը Աւր-ուր կը թարգմանէ. տես. 334-337։

ցուցուի թէ Նոյի խօսած լեզուն մեր հիմակուան գրաբառ լեզուն է : Գանք հիմա ուրիշ ապացոյցներ ալ առաջ բերենք մեր լեզուին առաջնութեանը նպաստաւոր :

376 . Կենդանեաց անուններուն ստուգաբանութենէն ինչպէս կը ցուցընես թէ մեր լեզուն աշխարհիս առջի լեզուն է :

Կ'ըսէ Ծննդոց գրքին մէջ թէ Աստուած բոլոր կենդանիները ու թռչունները Ադամայ առջև բերաւ որ անոնց անուն դնէ , և ինչ անուն որ դրաւ անոնց նոյն անունները մնացին : Արդ ինչպէս որ կ'ըսեն Փիլոն , Մովսէս քերթող , Յովհ . Եզնկացին , յայտնի է որ Ադամ այն կենդանիներուն անունները իրենց բնութենէն կամ ձայնէն առնելով դրած է , և որովհետև ասանկ նշանակող կենդանեաց անուններ շատ կան մեր լեզուին մէջ , ուրեմն մեր լեզուին աւելի կը յարմարի Ադամայ խօսած լեզուն ըլլալը : Օրինակի համար , դնենք հոս մէկ քանի կենդանեաց անուններ , որոնք իրենց բնութիւնը բացատրող իմաստներ ունին :

Աղաւնի (աղու ունի) վասն զի հեզ է բնութեամբ :

Առիւծ և արծիւ ( առող և ծռող ) վասն զի գիշատիչ կենդանիներ են :

Արտոյտ . Վասն զի արտերու մէջ կը բնակի :

Աքաղաղ ( այգուն աղաղակող ) :

Եղջերու ( եղջերաւոր ) :

Երիվար . ( յերի վարող ) կռնակը բան տանող :

Լորամարգի. վասն զի Լօռերու մէջ ու թաց տեղ կը բնակի։

Խոզ. ('ի խուզողութենէ) վասն զի կընճիթով գետինը բան կը փնտռէ։

Կայտառ. կայտռելուն համար տրուած։

Կապիկ (կապող յինքն) վասն զի կ'ուզէ միշտ ուրիշին նմանիլ։

Կաքաւ (կաքաւող). վասն զի քալելու ատեն ցատկըտելով կ'երթայ։

Նապաստակ (ապաստանող) վասն զի բնութեամբ վախկոտ ըլլալով կ'ուզէ միշտ տեղ մը ապաւինիլ։

Սիրամարգ (սիրող զմարգ)։

Գտնենք քանի մը կենդանեաց անուններ ալ որոնց անունը իրենց ձայնէն առնլով դրած են. ինչպէս.

Ագռաւ, կռունկն, կաչաղակ, ձագառն, ճնճղուկ, ճանճ, մժեխ, ծիծառն, ծիտ, կով, բու, ոզնուր, ցուլ, բզէզ, փիշտակ, իժ, գեռան, սողուն, և այլն։

377. Մեր լեզուին կազմութենէն ինչպէս կը ցուցուի իրեն առաջնութիւնը։

Ամէնքը կը գրուցեն թէ նախնական լեզուն կատարեալ և ճոխ պիտի ըլլայ հընչման կողմանէ։ Արդ մեր լեզուն ա. գրեթէ ամբողջ ամէն հնչմունք ունի, բաց 'ի մէկ քանի յունական թլուատ հնչմունքներէն, որ լեզուի անկատարութիւն են քան թէ կատարելութիւն. և բաց 'ի մէկ քանի արաբացի կոկորդային հնչումներէն. որով մաքուր հնչումն ունեցող Հայ մը

կրնայ ուրիշ ամէն ազգաց օտար հնչումներ արտասանել , և այս բանիս համար է որ Եւրոպացիք շատ կը զարմանան մեր վրայ ։

բ . Շատ ճոխ է մեր լեզուն թէ՛ բառերու շատութեան կողմանէ և թէ բարդութեանց կողմանէ , որով կրնայ համարձակ ամէն բան բացատրել . և թէպէտ գիտութեան բառեր պակաս են՝ լեզուն շատ մշակուած չըլլալուն համար , սակայն լեզուին գեղեցիկ կազմութեանը պատճառաւ դիւրաւ կրնան հնարուիլ ։

գ . Արմատական ու հարկաւոր բառերը գրեթէ շատը միավանկ են . ինչպէս հայր , մ[illegible]ր , քոյր , հուր , օդ , ջուր , հող , ծառ , խոտ , բոյս , տունկ , փայտ , անդ , արտ , և այլն ։ Բաց աստի կան բառեր ալ որոնք մէկմէկէ ելլելուն կամ մէկմէկու վերաբերութիւն ունենալուն համար , կազմութիւննին ալ իրարու նման է . ինչպէս այր , հայր , մայր , եղբայր , քոյր (իբր քայր) , ուստր , դուստր . ամ , ամիս , ժամ , ժամանակ կամ ամանակ , գարուն , աշուն , ամառն , ձմեռն , հուր , ջուր . և այլն ։

դ . Լեզուին մեծ պարզութեանը նշան է սեռ և յօդ չունենալը , ինչպէս ունին Արաբացւոց , Եբրայեցւոց և գրեթէ բոլոր Եւրոպացւոց լեզուները նաև Յոյնն ու Լատինը . նոյնպէս նաև երկական թիւ չունենալը , ինչպէս ունի Արաբացին ։

378 . Մեր լեզուին արմատական բառե-

րէն ուրիշ մայր լեզուներու մէջ ալ կը գըտնուի՞ն թէ չէ ։

Այսչափ մեծամեծ պատճառներով յայտնի ցուցընելէն ետև թէ Հայերէնը նախնական լեզու է և մէկալ լեզուները բոլոր Բաբելոնի խառնակութեանը ատեն գոյացած, այս բանիս ապացոյց կը բերենք նաև նոյն լեզուներուն մէջ Հայերէն բառեր գըտնուիլը, ինչպէս օրինակի համար հաւ, մուկըն, անկիւն, արկղ, արաւետ, տուն, եօր, բառերուն լատիններէն կ'ըսեն ավիս, մուս, անկուլուս, արգա, արս, տոմուս, եօվուս. և այլն ։ Նոյնպէս կը գտնուին Սանսքրիթ լեզուին մէջ որ շատ լեզուներու մայր կը սեպուի, օրինակի համար դնենք մէկ քանին ։

| | | | |
|---|---|---|---|
| Փափի . | Կապիկ . | Աձա . | Այծ . |
| Աքշի . | Աչք . | Տիոս . | Տիւ . |
| Փամ . | Կամք . | Նաւ . | Նաւ * . |
| Տուռ . | Ծուռ . | Փարշաւա , | Փարշուամն ։ |

* Նաւ բառը գրեթէ ամէն լեզուի մէջ նոյն է, և ստոյգ կ'երևի թէ հայու լեզուէն ելած է, վասն զի Նոյեան տապանը Հայաստանի Մասիս լեռան վրայ իջնելով, մարդիկ նաւու առջի գաղափարը անկէց ունեցան ։ Նաւ բառին պարսկերէն կ'ըսեն նաւ, յն. Ναῦς (նաւս) լտ. Navis (նավիս) ։

# ԳԼՈՒԽ ԺԵ.

## Գիտութեանց վրայ.

### ՅՕԴՈՒԱԾ Ա.

379. *Ջրհեղեղէն ետև նախ ո՞ր ազգին մէջ սկսաւ ծաղկիլ գրականութիւնը :*

Ջրհեղեղէն ետև հաւանական է թէ մեր ազգին մէջ ծաղկեցան գրականութիւնը ու արհեստներ, վասն զի մարդիկ նախ Հայաստանի մէջ բնակեցան ու բազմացան : Բայց հոս ցուցընենք նախ համառօտ մը թէ ջրհեղեղէն առաջ որչափ առաջ գացած կ'երևնան գիտութիւնները աշխարհիս վրայ :

380. *Ջրհեղեղէն առաջ ո՞րչափ ծաղկած էին գիտութիւններն ու արհեստները :*

Ոմանք կը սեպեն թէ ինչուան ջրհեղեղ որ 2242 տարուան միջոց է ըստ եօթանասնից, աշխարհս խիստ շատ ծաղկած էր. և ոմանք ընդ հակառակն թէ ամենևին ծաղկած չէր. բայց աւելի հաւանական է առջիններուն ըսածը թէպէտ և չափազանցութիւն ալ ըլլայ, վասն զի ինչպէս որ աշխարհիս սկզբան ատեն մէկէն գտնուեցան երկրագործութեան, հովուութեան, ու դարբնութեան արհեստները և երաժշտութիւնը, ուրեմն հարկաւ կը հետևի թէ կամաց կամաց նաև ուրիշ շատ արհեստներ ալ գտնուեցան. մանաւանդ որ այն ատեն մար-

դուց կեանքը երկայն ըլլալով, խելացի ու ճարտար մարդիկ ալ երկայն ապրելով, կըրնային զանազան գիւտեր գտնել ու գիտութիւնը ծաղկեցընել ։

381. Ջրհեղեղէն առաջ գիր գտնուա՞ծ էր թէ չէ ։

Ամենաստոյգ կ՚երևի թէ գիր գտնուած էր. վասն զի նախ, բնական է որ կ՚ուզէ մարդ իր ատենի գիւտուածները որդւոց որդի սերունդներուն աւանդել, և այս բանս նշաններ դնելով կամ գրով կ՚ըլլայ ։

բ. Չկրնար ըլլալ որ աշխարհիս ստեղծման պատմութիւնը, նահապետաց կեանքը, անունները, տարիքնին և ուրիշ մանր մունր գիտուածները բերնէ բերան միայն աւանդութեամբ հասած ըլլան մինչուան Մովսեսի ատենն, որ գիր անցուց այս բաներս ։

գ. Յուդայի Առաքելոյն թուղթին մէջ գրած է., թէ «Մարգարէացաւ վասն նոցա և եօթներորդն յԱդամայ Ենովք», և այս մարգարէութիւնը ամենաստոյգ կ՚երևի թէ գրաւոր էր, ինչպէս կ՚ըսեն ոմանք, և մեր Երզնկացին ալ, որ գիր գտնողը նոյն Ենովքը կը դնէ.* ։

* Ուօլդըն կը զրուցէ թէ աշխարհիս սկիզբէն 'ի վեր հաւանական կ՚երևի թէ գտնուած էր գիրը. դարձեալ կը կարծէ թէ Ադամ գտած է, անկէց անցեր է Սէթին. անկէց ալ Նոյին ու իր յաջորդներուն՝ առջի լեզուին հետ միատեղ. և այս գիրը

դ. Եւսեբիոս վկայութիւն կը բերէ Բազմավէպն Աղեքսանդրէն, թէ Ջրհեղեղին համար Նաւը շինողը հրամմեց « զամենայն զառաջինս և զմիջինս և զվերջինս մատենից՝ փորել և դնել յԱրեգ քաղաքին Սիպարացւոց » (որ ըստ ոմանց է մեր Սպերը, ըստ սուրբ գրոց Սոփփեր.) և թէ Ջըրհեղեղէն ետքը հրաման եկաւ « երթալ 'ի Սիպարացւոց քաղաքէն փորել հանել զմատեանն որ ծածկեալ կայցեն անդ, և տալ մարդկան, և եթէ տեղին յորում վայրի ելեալ կային՝ Հայոց աշխարհն է »:

ե. Յովսեպոս կը գրէ թէ Ջրհեղեղէն ետև երկու սիւն մնացեր էր, որոց վրայ Ջրհեղեղէն առաջ եղած մարդիկը փորած էին երկնային մարմնոց վրայ տեղեկութիւններ, և աստղերուն շրջանները ու կարգերը, և այս սիւներուն մէկը նաև ինչուան իր ատենը մնացեր է եղեր:

Այսչափ ապացոյցները բաւական ըլլան ցուցընելու համար, թէ Ջրհեղեղէն առաջ գիր գտնուած էր:

382. Ջրհեղեղէն ետև ո՞վ եղաւ գրականութեան առջի ծաղկեցընողը:

Նոյ՝ որ 600 տարի Ջրհեղեղէն առաջ

մնաց կ՚ըսէ ինչուան լեզուներուն խառնակութեան ատենը, երբոր նոր լեզուներու հետ՝ առնեն անցնելէն ետև նոր գիրեր ալ գտնուեցան. բայց առջի գիրը մնաց անոնց քով, որ առջի լեզուն ունէին:

ապրելով, գիտէր անշուշտ Նոյն ժամանակի գիտութիւններէն շատը, որոնք իր սը-ղոցմով մէկտեղ Ջրհեղեղէն ետև Նորէն ծաղկեցուց, գրին գործածութիւն ալ մըտ-ցընելով:

383. Արտաքին պատմիչները Նոյին վրայ ի՞նչ կը գրուցեն:

Արաբացիք կ'ըսեն թէ Նոյ սովրեցուց աստեղաց ընթացքը, ու որոշեց տարին ա-րևուն շրջանին նայելով; ու տասներկու ամիսները՝ ըստ լուսնի շրջանին: Հեթա-նոսները որ զՆոյ Սատուռնոս կ'անուանէին, այնչափ իմաստուն մարդու տեղ դրած էին ու ամէն բան գիտցող ու ժամանակի իշխե-ցող, որ ինչուան ժամանակին անունովը զինքն ալ Կռոնոս անուանեցին:

384. Սեմ ի՞նչ բան սովրեցուց:

Սեմ որ ըստ արտաքին պատմիչներու կ'ըսուի Զօրոաստր կամ Զրադաշտ և կամ Զրուան, բնակեցաւ Հայաստանի Զարե-ւանդ գաւառը, որ իր անունովը կոչուած է (§. 28): Շատերը կ'ըսեն թէ այս Զրադաշտը գտաւ մոգութիւնը, և մոգութիւն ըսելով հին ատեն, ինչպէս կ'ըսէ Պլինիոս, կ'իմացուէր կրօնքի վերաբերեալ գիտութիւններ, բժըշ-կութիւն և աստղաբաշխութիւն. ուստի այս գիտութիւններս նախ Հայաստանի Զա-րեւանդ գաւառին մէջ սկսան ծաղկիլ, ո-րոնցմէ աստղաբաշխութիւնը՝ ատեն անց-նելէն ետև դարձաւ աստեղագիտութիւն, այս-ինքն աստղերուն դիրքն ու այլևայլ շար-

ժումները գիտելով մէկուն ծննդեանը և բաղդին վրայ սուտումնաւոր գուշակութիւններ ընել ։ Ասանկ ալ մոգութիւնը ժամանակաւ դարձաւ աղանդ մը, որ կը սովրեցնէր արևապաշտութիւն, աստեղագիտութիւն, և հմայութիւն ։

385. Բակտրիացի Զրադաշտին վրայ ինչ գիտելիք կան ։

Կը կարծուի թէ ասիկա Սեմայ թոռն էր Ցպրքանայ որդին ; որ գնաց բնակելու Բակտրիոյ մէջ. և հոն իր Սեմ պապէն առած գիտութիւնները ծաւալելով, ինքն ալ անոր անունովը կոչուած ըլլայ Զրադաշտ ։ Այս Բակտրիացի Զրադաշտը չորս* երևելի Զրադաշտներուն մէկն է, որ կ'ըսուի նաև Պարսից Զրադաշտ, ուստի և կ'երևի թէ աղքէն

* Այս չորս Զրադաշտներէն մէկը հայ էր, որոյ համար կ'ըսէ Կիւրեղ Աղեքսանդրացի (Յաճախ. Գիրք Է) « Զայսոսիկ գրեաց Զրադաշտն Հայկազուն, ազգաւ Պամփիլիացի ». բայց ուրիշները Հայկազունը Պամփիլիացիէն կը զատեն. նոյնպէս նաև Առնոբիոս որ չորս Զրադաշտներին ալ յիշելու ատեն կը զրուցէ թէ (եկեացէ) « և Արմենիոսն Թոռն Ոստանայ, և Պամփիւլ[illegible] ընտանին Կիւրոսի » ։ Ասկէց մեր Խնձիձեանը կը կարծէ թէ Ոստանը պիտի ըլլայ մեր Վասամ Հայկազուն նահապետը, որուն յաջորդեց Կար, և կը համարի թէ Վասամը մոգութեան եռանէ ըլլալուն համար, եղաւ երրորդ Զրադաշտը ։ Իսկ Պամփիլիացի Զրադաշտը ասկէց շատ ետև է, և կ'ըյնի Կիւրոսի ատեն ։

Բակտրիայէն Թուրքաստան անցեր է ։ Պարսիկները իրենց յաղթողներէն որոնք որ մոգութեան ետևէ եղան, կոչեցին Զրադաշտական ։ Այս մոգութեան արհեստը շատ տարածեցաւ Պարսից մէջ, և առջի ուղիղ գիտութենէն մոլորելով բոլորովին սուտ աղանդ մը դարձաւ ։ Ուստի Զրադաշտի անունով գրուած խենդուխելառ ու ծուռումուռ բաները, պէտք չէ խառնել Սեմայ ու իր Թոռանը վրայ, հապա ետքի Զրադաշտականներուն վրայ ։

386. Մոգ անունը ուսկի՞ց ելած է ։

Շատերը Մոգ անունը յատուկ անուն կը համարին, և թէ որ այդպէս է՝ կրնանք ըսել թէ Մոգ անունով հին նահապետ մը եղած ըլլայ Հայաստանի մէջ որուն անունով Մոկք նահանգ մ՚ալ կայ Զարևանդ գաւառին մօտիկ, հաւանական կ՚երևի որ այս Մոգը երկայն ատեն ուրիշներուն գիտութիւն սորվեցընելուն համար, իր անունը ըսուեցաւ Մոգ, ու գիտութիւնն ալ Մոգութիւն ։ Արդ ճշմարիտ մոգութեան արհեստը, ինչպէս որ վերը ըսինք, ատեն անցնելով աստեղագիտութիւն դարձաւ, և ով որ մոգութեան ետևէ կ՚ըլլար, մոգ կ՚ըսուէր իրենց գլխաւորին անունովը. Եւ այս գիտութիւնը շատ առաջ գնաց Պարսից ու Քաղդէացոց մէջ այլևայլ ճիւղեր բաժնըւելով ։ Ոմանք նոյն իսկ առաջին Զրադաշտին համար կ՚ըսեն թէ Մոգ կ՚անուանէր, մոգը իբրև յատուկ անուն առնելով, և

անկէց սկսած կը համարին մոգութիւնն ալ (§. 384)։

387. Քրիստոսի ծննդեան ատեն եկած իրեք մոգերը ուսկից էին։

Հաւանական կ'երևի ըսելը թէ մեր Մոկաց աշխարհէն եկան, որ Հրէաստանի արևելեան հիւսիսային կողմը կ'ըլնի, վասն զի գիտենք որ ուրիշ տեղ ալ սուրբ Գիրք Արևելք ըսելով կը հասկընայ մեր Հայաստան աշխարհը. և թէ որ Մոկաց աշխարհն ալ չգնենք, կրնանք դնել անոնց սահմանակից երկիրը՝ որ է Միջագետք, ուր որ կը թագաւորէր այն ատեն մեր Աբգար թագաւորը, որ ինչպէս հաւանական է, լսելով այն իրեք մոգերէն Քրիստոսի աքանչելի ծնունդը, հաւատաց մէկէն Մեսիային գալստեանը, որոյ վրայօք Բաղաամ մոգէն 'ի վեր՝ որ Միջագետքէն էր, միշտ գուշակութիւն կար մոգերու մէջ, թէ Նորանշան աստղ մը երևնալու ատեն աշխարհիս Փրկիչ մը պիտի ծնանի։ Ուստի ստոյգ չէ անոնց կարծիքը որ կ'ըսեն թէ Արաբիայէն եկան այս իրեք մոգերը, վասն զի ինչպէս որ Պետաւիոս ալ կ'ըսէ, Արաբիան Հրէաստանի հարաւային կողմը կ'ըլնի, չէ թէ արևելեան կողմը։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Առջի նահապետութենէն ետև Հայաստանի գրականութեան վիճակը.

388. Առաջին նահապետաց ատենէն ետքը Հայաստանի ուսման վիճակը ինչպէս էր։

Թէպէտ և շատ գիտութիւնք, ինչպէս որ ըսինք, Հայաստան գտնուեցան, բայց անոնց զարգացընողը օտարազգիք եղան, և ատեն անցնելէն ետև Հայաստան խաւար տգիտութեան մէջ մնաց ինչուան Վաղարշակայ ատենը, որ թէպէտ շատ տեսակ բարեկարգութիւններ ու շինութիւններ ըրաւ, որով աշխարհը իր խառնափնդոր վիճակէն հանեց, բայց ուսումը այնչափ չծաղկեցուց. հապա առաջին ծաղկեցընողը եղաւ Արտաշէս Բ, որ զանազան դպրոցներ ու մարզարաններ բանալով Հայաստանի մէջ արհեստներն ու գիտութիւնները առաջ տարաւ։

389. Երկրորդ անգամ ինչպէս նորոգեցան Հայաստանի մէջ գիտութիւնները։

Արտաշէս Բ էն ետև նորէն սկսաւ կամաց կամաց մարիլ ուսումնասիրութեան եռանդը, բայց ոչ ինչպէս որ Վաղարշակէն առաջ էր. ինչուան որ երկրորդ անգամ գիտութիւնները ծաղկեցան Վռամշապուհին ատենը, և պատճառն էր Հայ-

կական գրերուն գիւտը», որ եղաւ սրբոյն Մեսրոպայ ձեռքովը։

390. Մեսրոպեան նշանագիրներէն առաջ մեր ազգը ի՞նչ գիր կը գործածէր։

Խիստ հին ժամանակ յայտնի չէ թէ ինչ գիր կը գործածէր մեր ազգը։ Ոմանց կարծիքն է թէ կը գործածէր սեպաձեւ կամ բեւեռաձեւ ըսուած գիրերը, որ հաւանական կ'երեւի, տեսնելով որ երբոր Շամիրամ Հայաստան եկաւ, նոյն գրով շատ բան գրեց Վանայ բերդին վրայ, որ՝ եթէ ժողովուրդը չկարենար կարդալ, նոյն գրով չէր գրեր։ Ոմանք ալ կ'ըսեն թէ հին Պարսից զենտ ըսուած լեզուին գիրերը կը գործածէին։ Իսկ վերջի ատենները կը գործածէր Պարսից գիրը ու երբեմն նաեւ լեզուն աշխարհական բաներու մէջ. իսկ յունարէնն ու ասորերէնը աւելի եկեղեցական բաներու մէջ։

391. Ինչու՞ ետեւէ եղաւ սուրբն Մեսրոպ նոր գիր գտնելու։

Նախ որ օտար լեզուներուն գրերովը մեր լեզուին ամէն հնչմունքը չէր բացատրուեր. եւ երկրորդ՝ տեսնելով սուրբն Մեսրոպ որ Աստուածաշունչը ասորի լեզուաւ եկեղեցւոյն մէջ կարդալուն համար, ժողովուրդը շատ բան չէր հասկընար, եւ հարկ էր որ միշտ թարգմանիչ մը գտնուէր», որ իմաստը ժողովրդեան թարգմանէր. անոր համար աստուածսիրութեան եռանդով մը վառուած, ուզեց սուրբ գիրքը հայերէն թարգմանել. բայց որովհետեւ ազգային յա-

տուկ գիր մը չունէին ․ մտածեց նախ գիրը հնարել, և այս բանս իմացուց սրբոյն Սահակայ որ այն ատենուան հայրապետն էր, և իրմէ՝ ալ աւելի յորդորուեցաւ ։

392․ Դանիէլեան նշանագիրները ինչպէս գտնուեցան ։

Սուրբն Մեսրոպ Վռամշապուհին քով իր քարտուղարութեան պաշտօնը թողլէն ետև, երբոր անգամ մը Վռամշապուհ Միջագետք կ'երթար, ու ասորի և յոյն լեզու գիտցող ընտիր թարգման մը չգտնելով, ինչպէս էր սուրբն Մեսրոպ, շատ նեղութիւն կը քաշէր, Հաբէլ անունով կրօնաւոր քահանայ մը գիմացը ելաւ, ու խօսեցաւ Հայու լեզուին նշանագիրներ ամփղծել Դանիէլ եպիսկոպոսին նշանագիրներովը, որ իրեն ազգականն էր․ ասով յայտնուեցաւ թէ կայ Դանիէլ եպիսկոպոսին քով Հայու նշանագիրներ ։

393․ Դանիէլեան նշանագիրներուն վըրայ ինչ գիտ[illegible] կան ։

Դանիէլեան ըսուած նշանագիրները որ թուով քսանուերկու հատ էին, Հայոց հին գիրերն էին․ բայց որովհետև չէին կրնար լեզուին ամէն հնչմունքը բացատրել, և ձայնաւոր ալ չունէին՝ Արաբացոց ու Եբրայեցոց լեզուներուն պէս, անոր համար մէկդի թողուած էին, և անոր տեղը սկսեր էին գործածել Պարսից, Ասորւոց, Յունաց գիրերը․ որով Հայու հին նշանագիրները բոլորովին անծանօթ եղեր էին, ու գրեթէ

կորսուած . և ետքը գտնուելով Դանիէլ եպիսկոպոսին քով, անկեց նորէն դուրս ելան ։

394 . Վարդան պատմիչը Դանիէլեան նշանագիրներուն համար ի՞նչ կը գրուցէ ։

Վարդան յայտնի կը գրուցէ թէ Դանիէլեան նշանագիրները, Հայոց նշանագիրներ էին, հին ատենը հնարուած . և այս բանիս ապացոյց կը բերէ թէ Լևոն Թագաւորին ատենն գտնուեցաւ Կիլիկիոյ մէջ Հայկազանց կռապաշտ Թագաւորներու դրամ մը Հայու գրով ։ Թէ հին ատենն կային Հայու գիրեր սրբոյն Մեսրոպէն առաջ, կը վկայեն նաև Կորիւն, Խորենացի և Փարպեցի, թէպէտ և յայտնի ու բացայայտ կերպով չգրուցեն ։ Ունինք այս բանիս վկայութիւն նաև օտար ազգերէն ալ . Փիլոստրատոս՝ որ Կարակալլա կայսեր ատենը կ՚ըլնի Քրիստոսի 200 Թուականին, կ՚ըսէ թէ Պամփիլիա երբեմն յովազ մը գտնուեցաւ վիզը ոսկի մանեակ, վրան Հայու գրով գրած, այսպէս . « Արշակ Թագաւոր աստուածոյն Նիւսեայ » ։

395 . Սուրբն՛ Մեսրոպ ի՞նչ գիր գտաւ ։

Վռամշապուհին ձեռքով Դանիէլեան նշանագիրները գտնուելէն ետև, երկու տարիի չափ դպրոցներու մէջ սկսան տղոց այն գիրերը սորվեցընել . բայց տեսնելով որ անկարելի է այն նշանագիրներով մեր լեզուին բոլոր հնչումները հեգել, գնաց սուրբն Մեսրոպ՝ Պղատոն, Եպիփան ու Հռու-

փանոս ըսուած գիտուն մարգիկներուն քով օգնութիւն մը գտնելու համար . բայց երբոր անոնցմէ յոյսը փուճը ելաւ , ապաւինեցաւ առ Աստուած . և աղաւօթեցաւ տեսիլքի մէջ իր սրտին վրայ հայերէն գիրերը . և աղօթքէն ելլելէն ետև հնարեց Հայու գիրը Սամոսատիա քաղքին մէջ Հռոփանոսի օգնութեամբը Քրիստոսի 406 թուականին : Ասողիկ կը կարծէ թէ եօթը ձայնաւոր գիրերը Ա , Ե , Է , Ը , Ի , Ո , Ւ , աւելցուց սուրբն Մեսրոպ դանիէլեան հին Հայոց գրերուն վրայ , որոց թիւը 29 հատ կը դնէ : Կ'երևի թէ Ասողիկէն մոռած է խորենացւոյն մէկ քանի օրինակներուն մէջ այս եօթը ձայնաւոր գրերուն անունները :

396 . Մեսրոպեան տառերուն համար ինչ կ'ըսէ Վարդան պատմիչը :

Վարդան պատմիչ ամէնէն աւելի լաւ ու որոշ կը խօսի այս նիւթիս մէջ , և կ'ըսէ թէ Դանիէլեան քսանուերկու գիրերուն վրայ տասնըչորս հատ գիր աւելցուց Մեսրոպ : Վասն զի բաց 'ի ձայնաւոր գրերէն կան մեր լեզուին մէջ ըծորդ տառեր , որոց հնչմանը գիր որոշելը աւելի դժար է՝ քան թէ ձայնաւորները գտնելը , որ դիւրաւ կրնար Յոյնէն ալ առնուլ : Ոմանք ալ կը կարծեն թէ 36 գիրն ալ սուրբն Մեսրոպ գտաւ , ինչպէս կը կարծէ նաև Շնորհալին , բայց այս կարծիքը ստոյգ չէ :

Որ և իցէ կերպով սուրբն Մեսրոպ Հայու գիրը կատարելագործելէն ետև , յու-

նական ձեւով Հռոփանոսին օգնութեամբը կարգաւորեց զանոնք. և սորոյն Սահակայ օգնութեամբը հնչումները որոշեց:

397. Սուրբն Մեսրոպ ո՞ր տեսակ գիրը հնարեց:

Սուրբն Մեսրոպ հնարեց երկաթագիր ըսուած գիրը, որով գրուած են հին մագաղաթեայ ձեռագիրները, որ ատեն անցնելով տասներորդ դարուն ժամանակները դիւրութեան համար քիչ մը ձեր փոխուեցաւ հասակները կարճեցընելով: Մետասաներորդ դարուն վերջերը ու երկոտասանին սկիզբները հնարուեցաւ բոլորգիրը՝ որով կը տպուի հիմա ամէն գիրք: Ետքերը գրելը աւելի դիւրացընելու համար հնարուեցաւ ԺԴ դարուն նոտրգիրը. վերջէն՝ շեղագիրը, որ աւելի արագ գրելու համար է. իսկ Նրբագիրը, բոլորագիրը, զորագիրն ու զարդագիրը մեր օրերու Գեղագրութեանց գեղեցիկ գիւտերն են:

398. Ո՞րն է փակագիրը:

Այլեայլ երկաթագիր գիրերը մէկտեղ միացընելով գրելը, կ՚ըսուի փակագիր, որ համառօտութեան համար հնարուած է, և կը գործածուի աւելի տապանագիրներու և մատնիններու վրայ: Իսկ Նշանագիրն է շուտութեան համար բառերը այլեայլ համառօտ նշաններով գրելը, զոր կը գործածէին աւելի դպիրները, ինչպէս որ յիշատակութիւն կայ Ագաթանգեղոսին մէջ:

399. Գիրը գտնուելէն ետև Հայաստանի մէջ ուսմունքը ո՞րչափ ծաղկեցաւ:

Սուրբն Մեսրոպ գիրը գտնելէն ետքը սկսան մէկէն որրոյն Սահակայ հետ Աստուածաշունչը թարգմանել։ Նախ Առակաց գիրքը ու Նոր Կտակարանը իր երկու աշկերտներովը մէկտեղ թարգմանեց սուրբն Մեսրոպ. հին Կտակարանը ալ թարգմանեց սուրբն Սահակ։ Եւ որպէս զի քիչ ատենուան մէջ Հայաստան շատ առաջ երթայ, ասդիս անդին աշկերտներ խաւրեցին, այսինքն Կեսարիա, Միջագետք, Կոստանդնուպոլիս, Աղեքսանդրիա, և Աթէնք, ուր որ առաջ ալ Հայք կ'երթային ուսմունք սորվելու. և որոնց մէջ խիստ անուանի եղած էր Բրոյերեսիոս կամ Պարոյր Հայկազնը, որ հոն ճարտասանութեան դասատու էր և իր աշկերտներէն մէկն էր նաև Գրիգոր Աստուածաբանը, և մեծ անունը համար Հռովմ արձան կանգնուեցաւ, այս արձանագրով։ « Դշխոյ թագաւորաց Հռոմ՝ թագաւորին Պերճախօսութեան։ »

400. Սրբոյն Մեսրոպայ վրայ ուրիշ ինչ գիտելիք կան։

Սուրբն Մեսրոպ բաց 'ի մեր լեզուին գրերէն, գտաւ նաև Վրաց և Աղուանից լեզուին գրերը. և Սամոսատիոյ, Վաղարշապատայ, Փայտակարան նահանգին, Սիւնեաց աշխարհին, Գողթըն գաւառին Տաշիր գաւառին, և մանաւանդ Այրարատայ մէջ, և ուրիշ այլևայլ տեղեր շատ դպրոցներ բանալով, Նոր գտած Հայու գիրերը կը սորվեցընէր, և ուսմունքը աղբիւրի պէս

կը ծաւալէր Հայաստանի մէջ . որով քիչ ատենուան մէջ գիտութիւնը շատ առաջ գնաց , մանաւանդ Հայաստանէն դուրս գացող աշկերտներուն դառնալովը . որոնք բաց 'ի անթիւ թարգմանութիւններէն , սկըսան քովերնէն ալ գիրք շարադրել , որով Հայաստան գիտութեան դրախտ մը դարձաւ , և իրաւամբ այս Ե դարը մեր մատենագրութեան Ոսկի դարն ըսուեցաւ :

401 . Սուրբն Մեսրոպէն ու Սահակէն առաջ որո՛նք կը յիշուին մեր մատենագրաց մէջ , որ դպրոց բանալով ուսմունքը ծաղկեցուցած ըլլան :

Նախ կը յիշուի Ս . Գրիգոր Լուսաւորիչը որ մասնաւոր դպրոց բացաւ Թագաւորական ընտանիքը ու Արշակունեաց ցեղը կրթելու համար . բաց ասկէց , յորդորեց նաև Տրդատ Թագաւորը , որ այլևայլ գաւառներու մէջ հասարակաց դպրոցներ բանայ տղոց կրթութեան համար : Մասնաւոր փոյթ ունեցաւ Ս . Գրիգոր Լուսաւորիչ քրմաց տղաքը 'ի քրիստոնէութիւն կրթելու համար , ասորերէն ու յունարէն սովրեցընելով , ու իրենց համար ռոճիկ սահմանելով : — Երկրորդ ծաղկեցընողը եղաւ մեծն Ներսէս որ բաց 'ի անթիւ բարեկարգութիւններէն , այլևայլ դպրոցներ ալ հաստատեց տղոց դաստիարակութեանը ու յունարէն և ասորերէն սովրեցընելու համար :

402 . Թագաւորաց ու իշխանաց մէջ ո-

րո՞նք եղան անուանի ուսումնասիրութեան կողմանէ ։

Վաղարշակ Ա, որ Մարիբասայ Հայոց պատմութիւնը գրելուն պատճառ եղաւ ։ Արտաշէս Բ, որ ուսմունքը շատ ծաղկեցուց դպրոցներ բանալով ։ Տրդատ Թագաւորը, որ Գրիգոր Լուսաւորչին յորդորմամբը շատ դպրոցներ բացաւ ։ Վռամշապուհ Թագաւոր, որ ձեռքէն եկածին չափ սրբոցն Սահակայ և Մեսրոպայ օգնեց, անոնց կատարած կամակատար ըլլալով ։ Սահակ առաքեալ Բագրատունի իշխանը որ յորդորեց զԽորենացին Հայոց պատմութիւնը գրելու համար, զոր եթէ չունենայինք՝ բոլորովին կորսուած կ'ըլլար Մարիբասայ պատմութիւնը ։ Հինգերորդ դարուն վերջերը երևելի եղան Վահան Մամիկոնեան մեծին Վարդանայ եղբօրորդին զօրավար ու մարզպան Հայոց, որ Ղազար Փարպեցիին գրել տուաւ իր ատենի պատմութիւնը ։ Եօթներորդ դարուն մէջ Համազասպ Մամիկոնեան, Աշոտ պատրիկ, Վահան Կամսարական՝ որոյ խնդիրքովը Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոսը շինեց ընթերցուածոց մեկնութիւնը. և անոր որդւոյն Ներսեհ Կամսարականին խնդիրքովը՝ Փիլոն անուանովմէկը յունարէնէն թարգմանեց Սոկրատայ պատմագրութիւնը ։

403. Տասներորդ դարուն և անկէ ետքը ո՞րոնք եղան երևելի ։

Տասներորդ դարուն մէջ երևելի եղան

Գրիգոր Պահլաւունի և իրեն որդին Վահրամ Պահլաւունի՝ որ Գրիգոր Մագիստրոսին հօրեղբայրն էր ։ Գագիկ Ա, Գագիկ Բ թագաւորները, ու Գրիգոր Մագիստրոս որ շատ գրուածներ ալ ունի ։ Երեքտասաներորդ դարուն մէջ Ռուբինեան Լեւոն թագաւորը որ շատ ընթերցասէր ըլլալուն համար այլեայլ դպրոցներ հաստատեց ։ Հեթում Բ որոյ վրայ շատ գովեստով կը խօսի Յովհաննէս Երզնկացի՝ գրաւոր և ոտանաւոր կոչելով ։

404. Որո՞նք եղան կանանց մէջ երևելի ուսումնականութեան կողմանէ ։

Ամենէն անուանի եղաւ Սահակադուխտ Ստեփանոս Սիւնեաց արքեպիսկոպոսին քոյրը, որ ութերորդ դարուն մէջ երաժշտութեան դպրոց հաստատեց, երաժշտութեան մէջ անուանի ըլլալով. ունինք վարագուրի ետին կեցած ուրիշներուն երգել տալ կու տար, ինչպէս որ կ՚ըսէ Ստեփաննոս Օրբելեան, և շատ երգեր ու մեղեդիներ շինեց, որոնցմէ մէկն է նաև Սրբուհի Մարիամը որոյ սկզբնատառերը իր անունը կը կազմեն ։ Մարիամ՝ Աշոտ Ա թագաւորին աղջիկը, որ Նանայ սարկաւագէն շինած Յովհաննու աւետարանին մեկնութիւնը ընտիր ոճով նորէն թարգմանել տուաւ Թ դարուն մէջ, որ մէյմը թարգմանուած էր Սըմբատ Խոստովանող իշխանին հրամանովը ։ Դարձեալ և Շուշան Պահլաւունի տիկինը և ուրիշ ուսումնական կանայք ալ եղած

են, որոնց վրայ մասնաւոր յիշատակութիւն մը չկայ մեր մատենագրաց մէջ, թերեւս խիստ երեւելի չըլլալնուն համար։

405. Հայաստանի մէջ ի՞նչ երեւելի դպրատուններ կային։

Հին ատենը կ'երեւի թէ տէրութեան դպրատունը Վաղարշապատ Թագաւորանիստ քաղքին մէջն էր, ուսկից որ Թարգմանիչները սկսան գիտութիւնը ծաւալել Հայաստանի չորս դին, հոն տեղի դպրոցներուն մէջ սորված աշակերտները ասդին անդին խաւրելով գուրիչները սովրեցընելու համար։ Անուանի պիտի ըլլայ Բագաւան քաղքին դպրատունն ալ գէթ մեհենական գրքերու կողմանէ, վասն զի քրմերու քաղաք էր։ Երեւելի էր Անի կամ Կամախ բռնուած բերդին դպրատունը, ուր Բարդածան ազգային մեհենական պատմութիւնը ու Թագաւորաց գործերը կարդալով, եւ իր ատենուան գործերն ալ վրան աւելցընելով, գրեց իր մեհենական պատմութիւնը ասորի լեզուով, որ ետքը յունարէն թարգմանուեցաւ։ Բայց ամենէն աւելի անուանի էր Մծբին քաղքին դպրատունը, ուսկից Աբգար Թագաւորը բոլոր գրքերը տարաւ իր շինած Եդեսիա քաղաքը, իր կողմանէ ալ շատ զարդարելով. անուանի էր Եդեսիոյ Թագաւորական դիւանն ալ՝ ուր կը պահուէին տէրութեան վերաբերեալ գրուածները, թուղթերը, հրովարտակները, վճիռները, եւ այլն։ Այս Եդեսիա քաղքին

մեհենական* գրատունը ու դիւանը Եդե-սիոյ քաղաքը Հռովմայեցոց ձեռքը անցնելէն ետև, շատ աւելի զարդարուեցաւ, վասն զի Պոնտոսի Սինոպ քաղաքին գրատունը ու դիւանն ալ Հռոմայեցիք հոս փոխադրեցին ։

406. Հայաստան ոտնակոխ ըլլալու ատեն գիրքերը ո՞ւր կը պահուէին ։

Վերջի ատենները գիրքերը ասպիս անդին եկեղեցեաց ու վանքերու մէջ կը պահուէին, մանաւանդ ուր որ գիտութիւնը աւելի ծաղկած էր, ինչպէս Ստապև կամ Տաթև վանքը Սիւնեաց մէջ, Յոհաննավանք Արարատ նահանգին մէջ, ուր շատ պատուական գրքեր ժողոված կային, որոնք ինչպէս որ կ'ըսէ Առաքել պատմիչը աւազակները յարձըկելով յափշտակեցին ուրիշ բաներու հետ մէկտեղ ։ Գետիկ վանքը Գուգարաց Ձորափոր գաւառին մէջ, ուր Մխիթար Գոշ վարդապետ եղած էր ․ Գլաձոր կամ Գայլեձոր Սիւնեաց Վայոց ձոր գաւառին

* Մեհենական գրատուն ըսելով չհասկցուիր թէ դից վերաբերեալ գրքերը միայն կը պահուէին մէջը, հապա որովհետև մեհեաններու մէջ կը պահուէին ուրիշ որ և իցէ գիրքերն ալ՝ թէ պատմութիւն ըլլայ թէ յիշատակարաններ, իբրև ապահով ու սրբազան տեղ մը, որոց քուրմերը աւանդապահ էին, անոր համար մեհենական գրքեր կ'ըսուէին ։ Ուստի մեհենական պատմութիւն ըսելով կը հասկըցուի ան՝ որուն մէջ թէ քաղաքական թէ գիցաբանական բաներ գրուած են ։

մէջ․ Սոյն չափ Եփրատացոց երկրին մէջ, ուր շատ վանքեր կային, և գիտութիւնն ալ շատ ծաղկած էր․ Մեծ քար ըսուած վանքը Կիլիկիոյ մէջ, զոր շինեց Հեթումին որդին Լևոն Թագաւորը։

407․ Սիւնեաց աշխարհին մէջ ինչ երևելի դպրատուններ կային։

Մովսէս Խորենացի իր ատենէն կը յիշէ Գեղարքունի գաւառը․ ետքի մատենագիրներու մէջ մասնաւոր յիշատակութիւն մը չկայ, բայց բաւական է այն մեծամեծ գովեստները ուսումնականութեան կողմանէ, որ կու տան մեր հեղինակները Սիւնեաց աշխարհին բնակչացը, մանաւանդ բանաստեղծութեան կողմանէ։ Ասկէց կրնանք հետևցնել թէ կային Սիւնեաց աշխարհին այլևայլ քաղաքներուն մէջ երևելի դպրատուններ, վասն զի Սիւնեաց մէջ Այրարատէն ետև Հայաստանի ամէն կողմէն աւելի ծաղկած էր գիտութիւնը․ իսկ վերջերը եօթներորդ ութերորդ դարերու մէջ Այրարատէն ալ աւելի․ ուր տեղի վարդապետարանը կ'երթային, կ'ըսէ Ստեփաննոս Օրբելեան, ամէն կողմէն հմտանալու համար, վասն զի իմաստութեան աղբիւր սեպուած էր, կ'ըսէ, այն ատենն մեր ազգին մէջ, ու գլուխ ամէն Հայոց գիտուններուն․ և ինչպէս Աթէնք մայր իմաստից համարուած էր Յունաց ու Հռոմայեցոց մէջ, ասանկ ալ Սիւնեաց աշխարհը Հայաստանի մէջ․ վասն զի սուրբ Գիրքը թարգմանելու

ու մեկնելու պաշտօնն ալ՝ սուրբն Սահակ ու Մեսրոպ Սիւնեաց աթոռին տուած էին ։ Սիւնեաց վարդապետարանէն ետեւ անուանի էր ինչուան ԺԳ դար Արշարունեաց վարդապետարանն ալ, որ բացուեցաւ Է դարուն մէջ, որ կ'ըսուէր նաեւ Վարդիկ Հայր ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

### Հայաստանի մէջ գրականութեան եւ մեռնելուն պատճառները .

408 . Ի՞նչ պատճառաւ գրականութիւնը միշտ ծաղկած չմնաց Հայաստանի մէջ ։

Գլխաւոր պատճառն է անդադար պատերազմները, որ կ'ըլլային Պարսից, Արաբացւոց, դէտ Թաթարաց եւ ուրիշ ազգաց, մանաւանդ Բագրատունեաց եւ Ռուբինեաց ատեն ։ Բ, կրօնի համար եղած հալածումները որ կը քաշէր մեր ազգը Պարսիկներէն ու Արաբացիներէն ։ Պարսիկք արգելք ալ դրած էին իրենց բաժնին մէջ եղած Հայերուն վրայ՝ յունարէն չսորվելու ; որպէս զի Յունաց հետ վերաբերութիւն մը չունենան ։ Գ, մեր ազգին քիչ ուսումնասիրութիւնը, որոյ համար կ'ողբայ Խորենացին իր ատենը ու իրմէ առաջ եղած Հայկազանց ժամանակը, անիմաստասէր բնութեան տէր կոչելով այն ատենուան մարդիկը ։ Սակայն այսչափ պատճառներէն ետքն ալ, երեւելի մատենագիրներ պակաս չեղան՝

թէպէտ և սակաւաթիւ ըլլան, հինգերորդ դարէն եւս ինչուան վերջի ատենները. և անշուշտ ալ աւելի կ'ըլլային եթէ Հայաստանը ներքին և արտաքին թշնամիներէ ազատ ըլլար, ու խաղաղութիւնը տիրէր, որ ուսումնականութեան ծաղկելուն գլխաւոր պատճառներէն մէկն է,

409. Մեր ազգին մէջ որչափ գրքեր կորսուած են։

Խորենացին կը գրուցէ թէ իր ատեն կային անբաւ գրուցաց մատեանք դատաստանական բաներու, վէճերու, դաշինքներու, և իւրաքանչիւր նախարարութեանց ցեղին վրայօք, յունական ու Պարսից գրերով գրուած, որոնք հիմա բոլոր կորսուած են։ Նոյնպէս քրիստոնէութեան ատենէն ինչուան վերջի դարերը գրուածներէն, թէ՛ թարգմանութիւն ըլլայ և թէ բնագիր՝ շատ բան կորսուած են, որոնց ապացոյց է անծանօթ ձեռագրաց հետզհետէ գտնուիլն ինչուան հիմա։

410. Ի՞նչ պատճառաւ կորսուած են գրքերը։

Նախ Նինոս Ասորեստանեաց թագաւորը, ինչպէս կ'ըսէ Խորենացին Մարիբասէն առնլով, հրաման տուաւ որ բոլոր պատմական բաները և քաջերու համար եղած գրուածները այրեն, ու միայն իր ըրած քաջութիւնները գրեն. անոնց հետ այրած կը կարծէ Խորենացին մեր Արամայ քաջութեան պատմութիւններն ալ։

Բ. պատճառն եղաւ Ս. Գրիգոր Լուսաւորչի բարեպաշտական դիտումը, որ որպէս զի նորադարձ Հայաստանի ժողովուրդը չըլլայ թէ նորէն կռապաշտութեան դառնան, հրաման տուաւ բարի նախանձով բոլոր կռապաշտական գիրքերը այրելու, որոցմով լեցուն էին մեհեանները: Գ. պատճառ եղաւ ուրացեալն Մերուժան, որ Հայաստանի տիրելու մտքով հաւատքը ուրանալէն ետքը, Պարսիկ զօրքերով Քրիստոսի 380 թուականին վազեց Հայաստան, ու այրել տուաւ բոլոր յունարէն գիրքերը, ու սաստիկ արգիլեց յունարէն լեզու սորվելը, որպէս զի Յունաց հետ վերաբերութիւն չունենալով ու Պարսից լեզուն սորվելով, դառնան Պարսիկ ըլլան. անոր համար սուրբն Սահակ ալ առջի բերան յունարէն գիրք չգտնելով, ասորերէնէ սկսաւ Աստուածաշունչը թարգմանել:

411. Ուրիշ ինչ պատճառներով վերջի ժամանակներն ալ շատ գիրքեր կորսուեցան:

Վերջի ատեններն ալ շատ գիրքեր կորսուեցան այլևայլ թշնամեաց յարձակմունքէն ու աւերմունքէն. որոնց մէջ գլխաւորն է Անի թագաւորանիստ քաղքին այրելն ու աւարհարութիւնը որ եղաւ 1064 ին. երկրորդն է Այլազգիներէն 1144 ին Եդեսիա քաղքին առնուիլը, ուր էր անուանի թագաւորական դիւանն ու դպրատունը: Երրորդն է Հռոմկլայ բերդին աւերումը, ուր կը նստէին կաթողիկոսները Կիլիկե-

ցոց ատենը ։ Զօրաւորն է Սիւնեաց աշխարհին Բաղաբերդ ամուր բերդաքաղաքին աւերումը, որոյ համար կ'ըսէ Ստեփաննոս Օրբելեան, թէ Սիւնեաց աշխարհին վանքերուն մէջ որչափ գիրք կար, թշնամեաց յարձակմունքէն վախնալով բերին հոն լեցուցին անդուոյն ամրութեանը վրայ վստահացած, և միայն Կտակարաններուն թիւը 10,000էն աւելի էր, կ'ըսէ ։ Երբոր 1170ին Իսմայելացիք տիրեցին խաբէութեամբ Բաղաբերդին, մէջի գիրքերն ալ գերի տարին, որ ասդին անդին ցիրուցան եղան ու փճացան ։

Հայաստանի մէջ գիրքերու պակսելուն գլխաւոր պատճառներէն մէկն ալ եղաւ Լէնկթիմուրը որ 1400ին Հայաստան տակն ու վրայ ընելէն ետև, կ'ըսուի թէ բոլոր գիրքերը Սմրղանդ քաղաքը բերդի մը մէջ դրաւ, և թէ հոն մնացած կը փտտին ինչուան հիմա, և ոչ ոք կրնայ մէջը մտնել ։ Պատճառներուն մէկն ալ է տգէտներուն աւելորդապաշտ կարծիքը, որ կ'առնուն հին ու չկարդացուելու գիրքերը գետինը կը թաղեն, կամ պատի մէջ կը հիւսեն, և կամ այրի մէջ կը դնեն թշնամեաց ձեռքէն ազատելու համար, ուր որ թացութենէ կը փտտին կ'անպիտանանան, լաւ սեպելով ինքիրմէ փճանալը քան թէ ուրիշին ձեռքը անցնիլը ։

Ատենօք Սանահնի մայրավանքին կրօնաւորները վախնալով որ չըլլայ թէ իրենց ձեռագիրները ասպատակներու ձեռք ան-

ցնի, վանքին դիմացը բարձր այրի մէջ գտին ամէն իրենց պատուական գրքերը ։ Շատ ատեն անցնելէն ետև Հաղբատայ առաջնորդը հիմներով քարին վրայ ելաւ, ու այրին դուռը բանալով, տեսաւ որ շատ երկաթագիր ու բոլորգիր ձեռագիրներ կան մէջը, բայց ոչ թացութենէ աւրուած ու անպիտանացած, ու միայն Գրիգոր Նիւսացւոյն մէկ գիրքը անարատ մնացեր էր, որ գրուած էր Հայոց ՆԱ (400) թուականին, որ է Քրիստոսի 952 թուականն ։

## ՅՕԴՈՒԱԾ Դ.

*Հայաստանի մէջ ծաղկած գիտութիւններուն վրայ.*

412. Բժշկութեան գիտութիւնը ո՞վ գտած է.

Ոմանք կ'ըսեն թէ բժշկութիւնը Հերմէս Տրիսմեգիստոսը գտաւ, որ հնախօսներուն ըսածին նայելով Քամայ որդին Քանանն է, որուն երկուքն ալ նախ Հայաստանի մէջ բնակեցան ։ Բայց հաւանական ու ամէնուն ընդունելի կարծիքն է Մանեթոնին ու Դիոդորոս Սիկիլիացւոյն կարծիքը, որ կ'ըսեն թէ Սատուռնոսի այսինքն Նոյի Իսիս աղջիկը գտաւ բժշկութիւնը, ու շատ դեղեր հնարեց ։ Արդ այս Իսիսը, ինչպէս որ վերը ցուցըցինք, Նոյին Աստղիկ աղջիկն է, որ ինչպէս Եգիպտացիք կը պաշտէին Իսիս

անունով, ու հիւանդներուն պիտոյապան կը համարէին, ասանկ ալ նաև մեր նախնիքը կը պաշտէին Աստղիկ անունով, ու անոր օգնութիւնը կը խնդրէին բժշկութեան համար: Իսկ Յոյնք Աստղկան որդին Ապողոնը բժշկութեան աստուած կը համարէին. ուստի յայտնի կ'երևի թէ Ապողոն Աստղիկէն սորվելով ու կատարելագործելով տարածեց Յունաց մէջ:

413. Աստղիկ կամ Իսիս Հայաստանէն ելլելէն ետև բժշկութեան գիտութիւնը ինչ վիճակ ունեցաւ հոն:

Որովհետև այս գիտութիւնս մարդուս կեանքին շատ օգտակար է, անոր համար թէպէտ և Աստղիկ Հայաստանէն հեռացաւ, բայց գիտութիւնը երեսի վրայ չմնաց. մանաւանդ որ Հայաստանի զանազան առողջարար ու ախտահալած խոտերն ու բանջարները այս գիտութիւնս ծաղկեցընելու կը յորդորեն. և Ղազար Փարպեցին շատ կը գովէ Արարատ նահանգին առողջարար խոտերը, որոցմէ կ'ըսէ հմուտ ու վարպետ բժիշկներուն ձեռքովը զանազան դեղեր ու սպեղանիներ կը շինուէին: Այս բանիս ապացոյց է Արտաշէս Բին Աստղկան մեհենին մօտիկ շինած պարտէզը որ բժշկութեան պաշտպան աստուածուհին էր, ուր բաց 'ի զանազան անուշահոտ ծաղիկներէն, կային նաև շատ բժշկական տունկեր ալ:

414. Ո՞վ գտաւ Թիւրակէսը:

Թիւրակէսը գտաւ միջին Տիգրանայ քեռայրը մեծն Միհրդատ Պոնտոսի թագաւորը, այլևայլ բուսոց հիւթերու բաղադրութեամբ. և ինչպէս որ կ'ըսէ Պլինիոս, շատ բուսաբանական ու բժշկական գիրքեր ալ գրած ունէր, որոնք Պոմպէոս երբոր իրեն յաղթեց բոլոր թարգմանել տուաւ. ատոնց մէջն էր նաև Թիրիակէին վարդապետութիւնը: Ոմանք կ'ըսեն թէ Ներոնի բժիշկը Անդրոմաքոս կրետացին գտաւ, բայց ստոյգ չէ. թերևս ինքը աւելի կատարելագործած ըլլայ մէջը իժի եղ ալ խառնելով: Թիրիակէն Միհրդատայ գիւտը ըլլալուն մէկ ապացոյցն ալ այս է, որ ինչուան հիմա Եւրոպացոց մէջ այս դեղին Միհրդատեան դեղթափ ալ կ'ըսուի: Միհրդատ թէպէտ և Հայ չըլլայ ազգաւ, սակայն իրեն գիւտը կրնանք մէկ կերպով մեզի ալ սեպհականել, ինչպէս նաև իր քաջութիւնները, միջին Տիգրանայ մեր թագաւորին քեռայրն ըլլալուն համար:

415. Ո՞վ գտաւ ծաղկի հիւանդութենէ ազատելու համար պատուաստելու գիւտը:

Ծաղկի պատուաստը (աշ) ազգային գիւտ է, ինչպէս որ Եւրոպացիք ալ կը վկայեն և Հայերը իրենց ձեռքովը մտուցին այս գիւտը Եւրոպայի մէջ:

416. Ո՞րոնք եղած են ազգային երևելի բժիշկները:

Թէպէտ և շատ բժիշկներ եղած պիտի ըլլան Հայոց մէջ, բայց մեր մատենագիր-

ներսուն մէջ յիշուածները տասնը են ․ Յով-հաննէս լեզուագէտ բժիշկը Թ դարուն մէջ, որուն մէկ քանի թարգմանութիւնները կան միայն ․ ԺԲ դարուն վերջերը կը յիշուի Մխիթար լեզուագէտ բժիշկը Հերացուանէն, անոր համար ալ Հերացի կ'ըսուի և Շնորհա-լւոյն ժամանակակից է, որ բժշկարան մը անոր շինած, որոյ մէջ ըստ մեծի մասին ջերմին հիւանդութեանը վրայ կը խօսի ։

ԺԵ դարուն մէջ երևելի եղաւ Ամիրտով-լաթ բժիշկը, և անոր բժշկարան մը որ կ'ը-սուի Անգիտաց անպէտ, որոյ մէջ կը յիշէ քանի մը խիստ առաջ եղած Հայ բժիշկներու անունները, որ բժշկութեան վրայ բաներ ալ գրեր են, և են Ահարոն, Ստեփանոս, Դեղին բժիշկ, Սիմէոն, Վահրամ, և այլն, խիստ վերջին ալ Ասար ու Բունեաթ Սեբաս-տացիները, և այլն ։

417 ․ Տոմարագիտութիւնը երբ ծաղկե-ցաւ մեր ազգին մէջ ։

Աստղաբաշխութիւնը ամենէն առաջ Հայաստանի մէջ ծաղկելուն համար, պէտք է որ տոմարագիտութիւնն ալ նոյն հետ սկսած ըլլայ, վասնզի աստղաբաշխու-թեան հետևանքն է, որով տարին, ամիսը, օրը կը բաժնուի ։ Բայց Տոմարագիտութիւ-նը ինչպէս նաև ուրիշ գիտութիւնները ծաղ-կեցան աւելի Արտաշէս Բ ին ատեն ։

418 ․ Մովսէս կաթողիկոս ինչ պատ-ճառաւ տոմարը նորոգեց ։

Անդրէաս Բիւզանդացին, Քի 351 թը-

վին, Զատկին տօնը անխափան պահելու համար՝ հնարեց Երկհարիւրեակը, որ է 200 տարուան շրջան, որոյ կարգովը կը տօնէին Հայք իրենց տօները: Երբոր 551 ին այս երկհարիւրեակը լմնցաւ Էաս Աղեքսանդրացի իմաստասէրը ուրիշ իմաստուններու խորհրդովը հաստատեց հինգհարիւրեակը որ 532 տարուան շրջան էր. այն ատենները Հայոց կաթողիկոսն էր Մովսէս Բ., որ Հայաստանի իմաստուն մարդիկները մէկտեղ ժողվելով, որոշեց Զատկի տօնը անխափան պահելու շրջանը ընդունիլ. և այն ատենէն հաստատուեցաւ նաև Հայոց նոր Թուական մը՝ որ կը սկսի Քրիստոսի 532 Թուականին:

419. Մովսէսի Թուականին վրայ վերջէն փոփոխութիւն մը եղա՞ւ:

Քրիստոսի 661 Թուին Անաստաս կաթողիկոս ուզեց աւելի կատարելագործել տումարը. որպէսզի ուրիշ ազգերուն պէս տօները անխափան տօնուին. անոր համար յանձնեց Անանիա Շիրակացւոյն որ այն ատեն խիստ երևելի էր տոմարագիտութեան մէջ, որ իր խնդիրը կատարէ. անիկա ալ շատ աշխատանքով կատարեց: Բայց երբոր Անաստաս կաթողիկոսը կ'ուզէր ժողովքով հաստատել, մահը վրան հասնելով անգործ մնաց, և իրմէ ետքը ոչ ոք հոգ տարաւ այս բանիս:

420. Ազգային ի՞նչ երևելի տոմարագէտներ կան:

Մեր ժամանակագիրներու մէջ գլխաւորն է Անանիա Անեցի կամ Շիրակացին է դարուն, Արարատայ Շիրակ գաւառին Անի քաղաքէն. Գէորգ Քերթող Սիւնեցի, Ներշապուհ Տարօնեցի, Յովհաննէս Սարկաւագ վարդապետ ԺԲ դարուն սկիզբը, որ շատ աշխատեցաւ տումարը նորոգելու, և անշարժ կամ նահանջաւոր տարւոյ տոմար հաստատեց, որով կարգաւորած են Յայսմաւուրաց տօները. և նոր Թուական մ'ալ սկսաւ 1084 ին, որ կ'ըսուի Փոքր կամ Սարկաւագայ Թուական:

421. Ուրիշ ի՞նչ տեսակ գրականութեան մէջ երևելի եղած է մեր ազգը:

Նախ փիլիսոփայութեան մէջ, որով մեծըն Ներսէս կը պապանձեցընէր հերետիկոսները. որով սուրբն Սահակ կ'ապշեցընէր Պարսից Թագաւորը, որով անուանի եղաւ Դաւիթ Անյաղթ, և Ը դարուն մէջ Յովհան Օձնեցին, որ մանաւանդ անուամբ կոչուեցաւ նաև իմաստասէր որ փիլիսոփայ ըսել է: Կան նաև ուրիշ ազգային մատենագիրներ ալ, որ փիլիսոփայի անուն ունեցած են, ինչպէս Անանիա Շիրակացին և Գրիգոր Մագիստրոս, և այլն:

Երևելի եղած է մեր ազգը նաև պատմութեան ու եկեղեցական գրուածոց կողմանէ:

422. Ի՞նչ երևելի պատմիչ մատենագիրներ եղած են Հայոց մէջ:

Թողլով զանոնք որոց գրուածքը չունինք հիմա, գտուածներուն մէջ անուանին է քան

զամէնը Ս. Մովսէս Խորենացին՝ որ կ'ըսուի հայր պատմաբանից, մեր ազգին պատմութիւնը սկիզբէն ինչուան իր ատենը Ե դարուն կէսը ճարտար ու հաստատութեամբ համառօտելուն համար, ուսկից առած է Յովհան կաթողիկոս իր պատմութիւնը, աւելցընելով իր ժամանակի դիպուածներն ալ։

Ագաթանգեղոս որ Լուսաւորչի ու Տրդատայ վարքը գրեց, ոճին կողմանէ շատ երևելի է։ Անուանի են նաև Զենոբ Գլակայ Տարօնոյ պատմութիւնը, Փաւստոս Բիւզանդացիին իր ժամանակակից պատմութիւնը. այս իրեքն ալ Դ դարուն մէջ էին։

Եղիշէի Վարդանանց պատմութիւնը, շարադրութեան ու կարգաբանութեան կողմանէ ամէն ազգային պատմիչներէ գերազանց։ Երևելի է նաև Ղազար Փարպեցւոյն Վահանանց պատմութիւնը։ Մովսէս Կաղանկատուացիին Աղուանից ցեղին պատմութիւնը, որ գրած է Է դարուն, և աւելցուցած են ինչուան Ժ դար. Թովմա Արծրունիին Արծրունեաց ցեղին պատմութիւնը Ժ դարուն. ԺԱ դարուն մէջ Արիստակէս Լաստիվերտցիին իր ժամանակի պատմութիւնը։ ԺԲ դարուն՝ Մատթէոս Ուռհայեցին. ԺԳ դարուն՝ Կիրակոս և Վարդան վարդապետք։ Վերջի ատեններս անուանի եղած է Առաքել պատմիչը՝ որոյ թէպէտ և գրութեան ոճը հասարակ է, բայց պատմութեանը մէջ շատ գիտելիք կան։

423. Բանաստեղծութեան կողմանէ՞ ինչպէս էր մեր ազգը։

Թէպէտ և հին տանն բանաստեղծութիւնք Հայաստանի ամէն կողմը ընդհանուր ծաղկած չըլլայ, բայց տեղ տեղ շատ առաջ գացած էր, ինչպէս Գողթն գաւառին ու Սիւնեաց աշխարհին մէջ. ԺԱ դարուն մէջ, ինչպէս կ'ըսէ Մագիստրոս, մեր տաղանաւորներուն ու երգերուն չափերը ու ոտքերը նոր փոփոխութիւններ առին Արաբացւոց կամ Իսմայելացւոց կանոններուն հետևելով, որոնք շատ ծաղկած էին այն ատեն երաժշտութեան, թուաբանութեան, երկրաչափութեան, աստղաբաշխութեան և ուրիշ գիտութիւններու մէջ։

424. Բանաստեղծութեանց մէջ մեր ազգին մէջ որո՞նք եղան երևելի։

Հեթանոսութեան ատեն երևելի եղածները յայտնի չեն. իսկ քրիստոնէութեան ատեն՝ անուանով կը յիշուին Մովսէս Խորենացին որ Քերթողահայր կ'ըսուի, Ստեփանոս Սիւնի, Պետրոս, Մաթուսաղա և Թէոդորոս իրենք ալ Սիւնեաց աշխարհէն, Գրիգոր Նարեկացի Մագիստրոս, Ներսէս Շնորհալի՝ որ մեր տաղաչափութեան ոճը շատ կարգաւորեց, պարզելով ու նոր անսակ կարգ մը մէջը խոթելով։

425. Եկեղեցական գրուածոց կողմանէ ինչ երևելի մատենագիրներ ունինք։

Եկեղեցական մատենագիրները կարգէն են բոլոր մեր հին թարգմանիչները, ինչպէս են սուրբն Սահակ, Մեսրոպ, Խորենացի, Մամբրէ, Եղնիկ, Եղիշէ, և ու-

րիշ սրբոյն Սահակայ և Մեսրոպայ աշակերտները, որոց միայն անունը կը յիշուի իբրև Թարգմանիչ ։ Անուանի է նաև Ստեփանոս Սիւնեցին, Յովհան իմաստասէր, Խոսրով Անձևացեաց եպիսկոպոսը, Գրիգոր Նարեկացին, Իգնատիոս որ Ղուկասու աւետարանին մեկնութիւնը գրած է, Սարգիս՝ որ կաթուղիկեայ Թղթոց մեկնութիւնը գրած է. և Ներսիսեանք՝ Շնորհալին ու Լամբրոնացին ։ ԺԲ ու ԺԳ դարերուն մէջ Սարկաւագ վարդապետ, Մխիթար Գօշ, Վանական վարդապետ, Վարդան, և այլն ։

426. Ճարտասանութեան մէջ որո՞նք եղած են անուանի Հայոց մէջ ։

Մովսէս Խորենացի մեր հին Հայկազանց և Արշակունեաց մէջէն Անուշաւանը, Ա. Տիգրանը և Վաղարշակը՝ պերճաբան և կորովաբան և աղէկ խօսող կ՚անուանէ ։ Աթէնք սովրող Հայոց մէջ ամենէն անուանի ճարտասանն Բրոյերեսիոսն էր՝ զոր վերը յիշեցինք. իսկ Թարգմանչաց մէջ ճարտասանութեամբ հռչակուեցան Մով. Խորենացի, Եղիշէ, Մամբրէ, Թէոդորոս, Ղազար, Եզրաս Անգեղացի, Խոսրով. և այլն. Մաթուսաղա և Պետրոս և Ստեփանոս Սիւնեաց եպիսկոպոսքն, Յովհան իմաստասէր, Յովհան Սարկաւագ, Ներսէսեանք, Սարգիս վարդապետ, Գրիգոր Տղայ, և այլն ։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

### *Արուեստներու վրայ.*

427. *Ո՞ր արուեստները նախ Հայաստանի մէջ ծաղկեցան:*

*Նախ Երկրագործութիւնը գրեթէ Ադամայ հետ ծնաւ Հայաստանի մէջ, երկրորդ անգամ Նոյին հետ սկսաւ. այս ամէնօգտակար արհեստը աւելի ծաղկեցաւ Վաղարշակ Հայաստանի մէջ, բայց ամենէն աւելի ծաղկեցընողը եղաւ Արտաշէս Բ, որոյ ատենին համար կ՚ըսէ Խորենացի (Բ. ծգ.) թէ անգործ երկիր մը չկար Հայոց աշխարհին մէջ: Նոյնպէս կ՚ըսէ Յովհ. Կթ. Բագրատունեաց Աշոտ թագաւորին համար, թէ շատ ծաղկեցուց երկրագործութիւնը:*

428. *Որսորդութեան վրայ ի՞նչ գիտելիք կան:*

*Երէոց և Թռչուններու որսորդութիւնը հին ատենուան արհեստներէն մէկն է, որ ինչպէս ուրիշ արեւելեան օտար ազգերու մէջ յաճախած էր, ասանկ ալ նաև մեր մէջ. Թագաւորը ատէպ ատէպ որսի կ՚ելլէր բազմութեամբ ու մեծ հանդէսով այլեւայլ լեռներու վրայ, ուր որ վայրենի կենդանիք շատ կը գտնուէին, ինչպէս էր Ծաղկավան լեռը, Կոգայովիտ դաշտը, Մասեաց ոտն, Ապահունիք. և այլն: Որ-*

սորդութեան՝ արհեստը իշխանազունք ու թագաւորական մարդիկ չէ թէ միայն զբօսանաց համար կը գործածէին, հապա նաև իրենց մարմնոյն կրթութեանը համար, որով պատերազմի մէջ թշնամեաց այլևայլ հնարքներուն դէմը կարենան առնուլ, ու նետաձգութեան և զինաշարժութեան մէջ աւելի կրթուին։ Երէոց որսորդութեան համար Երուանդ ու Խոսրով Բ մասնաւոր անտառ տնկեցին ցանկով պատած, ուր երբեմն երբեմն հանդէսով որսի կ'ելլէին ուրիշ թագաւորական պաշտօնէներով ու իրենց որդիքներովը մէկտեղ։

429. Արձանագործութիւնը որչափ ծաղկած էր։

Այս բանիս վրայ մասնաւոր յիշատակութիւն մը չկայ մեր մատենագիրներուն մէջ. բայց Ա. Արտաշէսին ըրածը, որ Յունաստան արշաւելով անկէց գեղեցկագործ արձաններն ու կուռքերը ընտրեց Հայաստան բերաւ, բաց 'ի մեծին Արտաշէսի ընտիր ախորժակէն՝ կը ցուցընեն նաև որ թէպէտ և Արտաշէսէն առաջ այնչափ ծաղկած ալ չըլլար արձանագործութիւնը, սակայն անկէց ետքը պէտք է որ շատ առաջ գացած ըլլայ, ունենալով իրենց աչքին առջևը գեղեցիկ արձաններու օրինակներ։

430. Ճարտարապետութիւնը որչափ ծաղկած էր։

Ստրաբոն շատ կը գովէ Կորդուաց աշխարհին բնակիչները, քաղաք առնելոյ հա-

նեց, ինչպէս որ կ'ըսէ Ասողիկ ։ Շինեց նաեւ Հայաստանի Անի քաղքին փառաւոր կաթողիկէն Սմբատ Բին հրամանովը ։ Նոյն Ժ դարուն մէջ անուանի եղաւ Մանուէլ ճարտարապետն, ալ որ շինեց Գագիկ Արծրունի Թագաւորին հրամանաւ Աղթամարայ փառաւոր եկեղեցին, որոյ մէջ Աբրահամէն ու Դաւիթէն սկսեալ բոլոր նահապետաց, մարգարէից ու առաքելոց պատկերները փորել տուաւ վարպետ քանդակագործ կռածատարի մը ։ Բաց 'ի ուրիշ այլեայլ արձաններէն և կենդանեաց Թռչնոց փորուածներէն, ժամուն մէջ էր նաև Գագիկին հասակը փառաւոր գահ մը ։ Այս շինուածներուն մեծ մասը դեռ ինչուան հիմա կեցած է ։

432. Զօպան քէօփրիւի ըսուած կամուրջին վրայ ի՞նչ գիտելիք կան ։

Այս ութնակամար ու քարաշէն հոյակապ կամուրջը՝ ինչպէս կ'աւանդեն՝ շինեց հայ հօլիւ մը Հասանղալայու մօտ, Երասխ գետոյն ուրիշ գետակի մը հետ միացած տեղը դէպ 'ի քովընտի ձգելով. որ հին ատենէն 'ի վեր ինչուան հիմա խիստ անուանի է, վասն-զի այս կամուրջը միայն կեցած է առանց կործանելու Երասխ գետոյն ջուրերուն սաստկութեանը դէմ դնել, և ուրիշ ամէն կամուրջները փլած են ։

433. Երաժշտութիւնը ո՞րչափ ծաղկած էր մեր ազգին մէջ ։

Երաժշտութեան արհեստը ամէնուն հա-

ճոյ ըլլալով, ու ամենայն խնճոյից, հանդէսներու ու տօներու մէջ մանելով, յայտնի է որ ամմէն ազգի մէջ ալ կար, բաց 'ի Եգիպտացոցմէ որոնք մեղկիչ սեպելով երաժշտութիւնը՝ կ'ատէին: Մեր ազգին մէջն անուանի էին Գողթն գաւառին մուսաներն ու բանաստեղծները՝ որ բամբիռներով երգէին մեր դիւցազուններուն քաջութիւնները, ու նահապետաց պատմութիւնները:

434. Բաց 'ի Գողթն գաւառին երգիչներէն, որո՞նք եղան անուանի քրիստոնէութեան ատեն:

Սուրբն Սահակ, որ շատ հմուտ էր՝ երաժշտութեան, և գտաւ ութը ձայները: Մովսէս Խորենացին՝ որ շատ քաղցրանուագ շարականներ շինած է: Ստեփանոս Սիւնեցին՝ որ ատաղ օրհնութեանց ներդաշնակաւոր շարականները շինեց: Ժ դարուն մէջ երևելի էր Սամուէլ Կամրջաձորեցին, և Թէոդորոս Ալախօսիկ՝ որ անուանի երաժիշտ էր: ԺԲ դարուն մէջ Ս. Ներսէս Շնորհալի, որ նոր կենդանութիւն մը տըւաւ մեր երգարաններուն, ու ժամակարգութիւնը շատ ընտիր շարականներով ճոխացուց: Խաչատուր Տարօնեցին Հաղարծին վանքէն, որ շարականին արդէն ճնարուած խազերը Հայոց մէջ տարածեց և ուրիշներուն սովրեցուց:

# ՅՕԴՈՒԱԾ Բ.

## Վաճառականութիւն.

435. Վաճառականութիւնը երբ սկըսած է ։

Ինչպէս որ առաջին երկրագործները Հայերը եղան, ասանկ ալ առաջին վաճառականները իրենք եղան. վասն զի վաճառականութիւնը ուրիշ բան չէ, բայց եթէ իր աշխարհին բերքերը առնուլ ուրիշ տեղ տանիլ, և անկէ իրեն հարկաւոր եղած բաները իր աշխարհը բերել ։ Վաճառականութիւնը առաջ մօտիկ ազգերու մէջ ըլլալուն համար, ցամաքային վաճառականութիւնը ծովայինէն հին է ։

436. Արտաքին մատենագիրներէն ով կը վկայէ Հայոց վաճառականութեան վրայ ։

Մեր ազգին վաճառականութիւնը կը գովին հին ու նոր օտարազգի մատենագիրներէն շատերը. Նոյնպէս գովեստով կը յիշուի սուրբ Գրոց մէջ, ուր կ'ըսէ. Եւ ՚ի տանէ Թորգոմայ ձիովք և հեծելովք և ջորւովք լցին զվաճառս քո, (այսինքն Տիւրացոց) ։ Ոմանք սխալմամբ և չգիտնալով մեր ազգին պատմութիւնը՝ կարծեցին թէ ՚ի տանէ Թորգոմայ ըսելով կը հասկըցուի Թուրքոմանիա ըսուած Թաթարստանի երկիրը, և ոմանք ալ իմացան Կապա-

գովկիա, հոն տեղի ձիերն ու ջորիները անուանի ըլլալուն համար ։

437 · Հայերը ծովով ինչպէս վաճառականութիւն կ՚ընէին ։

Հայաստան թէպէտ և ցամաք երկիր է, բայց Կասպից ծովը, Սև ծովը, Միջերկրական ծովը և Պարսից ծոցը՝ որով Ովկիանոսին հետ հաղորդակցութիւն ունի, շատ հեռու չեն, և այսպէս ամենէն կողմէն վաճառք կու գար Հայաստան, նմանապէս ալ նոյն վաճառքը իրենց աշխարհէն վաճառքներուն հետ մէկտեղ Հայերը ամէն կողմ թէ ցամաքով և թէ ծովով կը տարածէին ։ Ծովով վաճառականութիւն ընելու այս դիւրութիւնն ալ ունէին, որ մեծամեծ գետերով իրենց մօտիկ եղած ծովերուն հետ հաղորդակցութիւն ունէին. ինչպէս, Կուր և Երասխով Կասպից ծովին, Ճորոխով Սև ծովին, ու Եփրատ և Տիգրիս գետերով Պարսից ծոցին հետ ։

438 · Հնդկաստանի վաճառականութիւնը ի՞նչ ճամբով կ՚ըլլար ։

Կը գրուցեն Ստրաբոն և Պլինիոս թէ Հնդկաստանէն վաճառքները եօթը օր ցամաքով կու գային նախ Բակտրիա, անկէց Իկարոս ըսուած գետով որ Օքսոս գետոյն մէջ կը թափի, անկէց Կասպից ծով, Կասպից ծովէն Կուր գետ, Կուր գետէն ցամաքով կը հասնէր Փասիս կամ Ճորոխ գետը, անկէց Կողքիս, և Կողքիսէն ալ Սև ծովով կը տարածուէր բոլոր Յունա-

տան և Եւրոպա : Այս վաճառքները Հնդկաստանէն բերողներուն շատը Հայերն էին . ինչպէս կը վկայէ Հուետիոս ալ , Թէ Կասպից ու Պոնտոսի ծովը Հայոց ամէն տեսակ վաճառքներ կը մատակարարէր , զորոնք Հայերը Պարսկաստան և ուրիշ տեղեր տանելով կը ծախէին :

439 . Սև ծովով նաւարկութիւնը. Երբ սկսաւ :

Սև ծովը վտանգաւոր ըլլալուն համար , իրեն նաւարկութիւնն ալ Միջերկրական ծովին նաւարկութենէն շատ ուշ սկսաւ . և կ՚երևի թէ նախ Սև ծովուն մէջ նաւարկութիւն ընողները Արգոնաւորդները եղան Քրիստոսէ 1200 տարի առաջ : Սակայն քանի որ Սև ծովուն նաւարկութիւնը այնչափ յաճախուած չէր , Հայերը իրենց վաճառքները կը տանէին Յոնիա , Ասորւոց երկիրը և Կիլիկիա , որոց մէջ անուանի վաճառաքաղաքներ կային , և Փիւնիկեցիք ու Տիւրացիք կու գային այն տեղերէն կ՚առնուին վաճառքները ու ատոնց անդին կը տարածէին :

440 . Հայերը որ ճամբով դէպ 'ի Ովկիանոս վաճառականութիւն կ՚ընէին :

Տիգրիս ու Եփրատ գետերով կ՚երթային Պարսից ծոցը , անկէց ալ Ովկիանոս : Այս գետերուն վրայ այլևայլ վաճառատեղիներ շինուած էին , որոց մէջ անուանի է Բաբելոն քաղաքը Եփրատին վրայ : Երոդոտոս մանր կը պատմէ Հայոց վաճառականու-

թիւնը որ Եփրատ գետոյն մէջէն կ՚ընէին ։ « Հայերը , կ՚ըսէ , իրենց նաւուն կողերը ուռենիի ճիւղերէ կը շինէին , ու դրսի կողմը բոլոր մորթով կը պատէին . և նաւուն առաջքը ետևի կողմէն տարբերութիւն չունէր , վասն զի երկու կողմն ալ կլորկեկ կը շինէին . մէջը կը գնէին այլեայլ տեսակ վաճառքներ , մանաւանդ գինի ։ Այս նաւերուն մեծերը ինչուան 5,000 տաղանդ , այսինքն 725,000 լիտր ծանրութիւն կը տանէր , և ամենուն մէջն ալ էշեր կը գնէին ։ Երբոր Եփրատ գետոյն մէջէն Բաբելոն կը հասնէր նաւը՝ որոյ կառավարողները երկու հոգի էին միայն , մէկը առջևէն մէկալը ետևէն , կը պարպէին նաւը ու կը ծախէին ամէն վաճառքները նաև նաւուն ուռենիէ կողերն ալ , ու նաւուն վրայ պատած կաշին առնլով կը բեռնաւորէին էշերու վրայ . ու կը դառնային Հայաստան , ու նորէն կը շինէին նոյն կերպով ուրիշ նաւեր՝ վասն զի Եփրատ գետէն դէպ 'ի վեր նաւարկելը անկարելի է սաստիկ սրընթացութեանը պատճառաւ » ։

441 . Հայաստանի սեպհական վաճառքները որո՞նք են ։

Հայաստանի սեպհական վաճառքներն են ոսկի , արծաթ , ցորեն , գարի , աղ , վուշ , բամբակ , ոչխարի և այծի մորթ , արջառ , ոչխար , ձի , ջորի , որդան կարմիր , գազպէն՝ որ մանանայի նման բան մի է , ծառերու վրայ կ՚իջնայ և մեղրի համ ու-

նի . չորցուցած ծիրան , չամիչ , գինի , խաշընգեղ , մեղր , տուռեխ՝ որ աղխառած ձուկ է , և կ՚ելլէ Բզնունեաց ծովէն , հայկական , աղքար , և այլն ։

442 . Հայաստանի վաճառատեղիները կամ շահաւոր քաղաքները որո՞նք են ։

Յիշատակութիւն չկայ թէ հին ատեն որ քաղաքներն էին վաճառատեղի , բայց կ՚երևի թէ Արմաւիր , Արտաշատ Թագաւորանիստ քաղաքներն էին , որ դիրքերնին ալ յարմար է վաճառականութեան Երասխայ մօտիկ ըլլալուն համար ։ Վեցերորդ դարուն մէջ խիստ անուանի վաճառատեղի էր Դուին քաղաքը , ուր Վրաստանէն , Պարսկաստանէն , Յունաց երկրէն , Հնդկաստանէն և ուրիշ ամէն ազգերէն վաճառք կու գար , ինչպէս որ կը վկայէ նաև Պրոկոպիոս ։ Շատ կը գովէ Լաստիվերտցին Արծն աւանին վաճառականներն ու վաճառականութիւնը որ Կարնին մօտիկ է , նոյնպէս Կարս քաղքինը որ ԺԱ դարուն ծաղկեցաւ ։ Անուանի էր նաև Բաղէշ և Կոմանա ու Մելիտինէ՝ փոքր Հայոց մէջ ։ Հայաստանի շատ անուանի վաճառատեղիներէն մէկն ալ էր Սպեր կամ Սովփեր , որոյ ոսկին խիստ ազնիւ և առատ էր , որ սուրբ Գրքին մէջը շատ կը յիշուի ։

443 . Ինչէ՞ն կը կարծուի թէ Սովփերը նոյն է մեր Սպերին հետ ։

Նախ Ծննդոց գրքին մէջ ( Ժ . 29 ) բաց 'ի Եօթանասնից Թարգմանութենէ ուրիշնե-

րը Սովփերին տեղ Ոփիր կը դնեն, որ յայտնի է թէ Յեկտանայ որդւոյն Ոփիր նախապետին անունէն եղած էր, վասն զի սուրբ Գրքին մէջ ուրիշ տեղ կ'ըսէ, յիշելով Յեկտանայ զաւկըներուն անունները. (Ծն. Ժ. 30) «Ամենեքին սոքա որդիք Յեկտանայ. և եղև բնակութիւն նոցա 'ի Մասեայ մինչև 'ի գալ 'ի Սովփերա (կամ Ոփիրա) լեառն արևելեայց»։ - որով կ'երևայ թէ Յեկտանայ տասնուերկու զաւկըներէն մէկն՝ Ոփիր, Սափեր լերան մօտ բնակեցաւ, և լերան անունն ալ կոչուեցաւ Ոփիր, ըստ սուրբ գրոց Սովփիր. Սեփարուաիմ, Սափփառ. զոր օտարազգի մատենագիրները ինչպէս Դիոդոր Սիկիլիացի, Ստրաբոն և Երոդոտ քիչ մը ծռմռելով կ'անուանեն Սիպփարիպիտիս, Սիպար, Սափիր կամ Սապփիր, և Հայաստանին մօտիկ կը դնեն Կողքիսի մէջ։ Իսկ թէ մեր Սպերը նոյն է Սովփերին հետ, կը ցուցնէ նախ, անուանց մերձաւորութիւնը. բ, տեղւոյն դիրքը, վասնզի ինչպէս սուրբ Գիրքը և օտարազգի մատենագիրները Հայաստանի մօտիկ կը դնեն, նոյնպէս ալ Խորենացին մեր Սպեր գաւառը բարձր Հայոց մէջ կը դնէ, որ Կողքիսի սահմանակից է։

444. Սողոմոնի և Քիրամայ նաւերը ի՞նչ ճամբով Սովփիր կ'երթային։

Ասոնց նաւարկութիւնը, ինչպէս կ'ըսէ Կալմէթ, Սև ծովով չէր, վասն զի դեռ Սողոմոնի ատեն անծանօթ էր Սև ծովուն

նաւարկութիւնը . Հապա Գասփոնզարներէն
կ'ելլէին , որ Կարմիր ծովուն վրայ է , կ'եր-
թային Պարսից ծոցը , անկէց կը մանէին
Տիգրիս ու Եփրատ գետերուն մէջ , ու կ'եր-
թային անոնց վրայ շինուած վաճառատե-
ղիները , և հոն կ'առնուին վաճառական-
ներէն Սպեր կամ Սոփիր լեռնէն բերած
ոսկին , և ուրիշ վաճառքներ որ կու գային
այն վաճառատեղիները՝ Հնդկաստանէն և
ուրիշ երկիրներէն . ինչպէս են սիրամարգ ,
կապիկ , փղոսկր , և այլն , Եւ կամ թէ
Սողոմոնի նաւերը 'ի դարձին կը հանդի-
պէին Արաբիայի և Եթովպիայի նաւահան-
գիստներն ալ , ու հոնկէ կ'առնուին փը-
ղոսկր , կապիկ , և ասոնց նման բաներ , և
այլն . ասոր համար է որ նաւարկութիւնն
ալ երկայն ատեն կը քշէր :

445 . Ուրիշները Սոփիրը ո՛ւր կը դնեն :

Եղան ոմանք որ Սոփիրը դրին Սպա-
նիա , հոն առնելու ոսկւոյն առատութեանը
համար , ոմանք Հնդկաստան և Սէյլան ու
Սումատրա կղզիները , իբր թէ ինչ որ կ'առ-
նէր Սողոմոն , այս երկիրներուն մէջ կը
գտնուէր . բայց Հնդկաց ծովուն մէջ Սո-
ղոմոնի ատեն դեռ նաւարկութիւնը առաջ
գացած չէր : Եղան ոմանք որ ինչուան Ա-
մերիկայի Բերու աշխարհքը դրին , իրեն
ոսկւոյն շատութեանը համար : Շատերն ալ
Արաբիայի եզերքը կը դնեն այս երկիրը :
Մեզի հաւանական կ'երևնայ վերի ըսած-
նիս , որ սուրբ Գրոց և աշխարհին պատմիչ-
ներու ըսածին ալ կը յարմարի :

ճոյ ըլլալով, ու ամենայն խնճոյից, հանդէսներու ու տօներու մէջ մտնելով, յայտնի է որ ամմէն ազգի մէջ ալ կար, բայց 'ի Եգիպտացոցմէ որոնք մեղկիչ սեպելով երաժշտութիւնը՝ կ'ատէին: Մեր ազգին մէջն անուանի էին Գողթն գաւառին մուսանե[illegible] ու բանաստեղծները՝ որ թամբրիներով [illegible] գէին մեր դիւցազուններուն քաջութի[illegible] րը, ու նահապետաց պատմութիւնները:

434. Բայց 'ի Գողթն գաւառին երգիչներէն, որո՞նք եղան անուանի քրիստոնէութեան ատեն:

Սուրբն Սահակ, որ շատ հմուտ էր՝ երաժշտութեան, և գտաւ ութը ձայները: Մովսէս Խորենացին՝ որ շատ քաղցրանուագ շարականներ շինած է: Ստեփաննոս Սիւնեցին՝ որ աւագ օրհնութեանց ներդաշնակաւոր շարականները շինեց: Ժ դարուն մէջ երևելի էր Սամուէլ Կամրջաձորեցին, և Թէոդորոս Ալախօսիկ՝ որ անուանի երաժիշտ էր: ԺԲ դարուն մէջ Ս. Ներսէս Շնորհալի, որ նոր կենդանութիւն մը տըւաւ մեր երգարաններուն, ու ժամակարգութիւնը շատ ընտիր շարականներով ճոխացուց: Խաչատուր Տարօնեցին Հաղարծին վանքէն, որ շարականին արդէն հնարուած խազերը Հայոց մէջ տարածեց և ուրիշներուն սովրեցուց:

# ՅՕԴՈՒԱԾ Բ.

## Վաճառականութիւն.

435. Վաճառականութիւնը երբ սկըսած է։

Ինչպէս որ առաջին երկրագործները Հայերը եղան, ասանկ ալ առաջին վաճառականները իրենք եղան. վասն զի վաճառականութիւնը ուրիշ բան չէ, բայց եթէ իր աշխարհին բերքերը առնուլ ուրիշ տեղ տանիլ, և անկէ իրեն հարկաւոր եղած բաները իր աշխարհը բերել։ Վաճառականութիւնը առաջ մօտիկ ազգերու մէջ ըլլալուն համար, ցամաքային վաճառականութիւնը ծովայինէն հին է։

436. Արտաքին մատենագիրներէն ով կը վկայէ Հայոց վաճառականութեան վրայ։

Մեր ազգին վաճառականութիւնը կը գովեն հին ու նոր օտարազգի մատենագիրներէն շատերը. նոյնպէս գովեստով կը յիշուի սուրբ Գրոց մէջ, ուր կ'ըսէ. Եւ 'ի տանէ Թորգոմայ ձիովք և հեծելովք և ջորւովք լցին զվաճառս քո, (այսինքն Տիւրացոց)։ Ոմանք սխալմամբ և չգիտնալով մեր ազգին պատմութիւնը՝ կարծեցին թէ 'ի տանէ Թորգոմայ ըսելով կը հասկըցուի Թուրքոմանիա ըսուած Թաթարստանի երկիրը, և ասոնք ալ իմացան Կապա-

գովկիա, հոն տեղի ձիերն ու ջորիները անուանի ըլլալուն համար։

437. Հայերը ծովով ինչպէս վաճառականութիւն կ'ընէին։

Հայաստան թէպէտ և ցամաք երկիր է, բայց Կասպից ծովը, Սև ծովը, Միջերկրական ծովը և Պարսից ծոցը՝ որով Ովկիանոսին հետ հաղորդակցութիւն ունի, շատ հեռու չեն, և այսպէս ամենէն կողմէն վաճառք կու գար Հայաստան, նմանապէս ալ նոյն վաճառքը իրենց աշխարհէն վաճառքներուն հետ մէկտեղ Հայերը ամէն կողմ թէ ցամաքով և թէ ծովով կը տարածէին։ Ծովով վաճառականութիւն ընելու այս դիւրութիւնն ալ ունէին, որ մեծամեծ գետերով իրենց մօտիկ եղած ծովերուն հետ հաղորդակցութիւն ունէին. ինչպէս, Կուր և Երասխով Կասպից ծովին, Ճորոխով Սև ծովին, ու Եփրատ և Տիգրիս գետերով Պարսից ծոցին հետ։

438. Հնդկաստանի վաճառականութիւնը ի՞նչ ճամբով կ'ըլլար։

Կը զրուցեն Ստրաբոն և Պլինիոս թէ Հնդկաստանէն վաճառքները եօթը օր ցամաքով կու գային նախ Բակտրիա, անկէց Իքարոս ըսուած գետով որ Օքսոս գետոյն մէջ կը թափի, անկէց Կասպից ծով, Կասպից ծովէն Կուր գետ, Կուր գետէն ցամաքով կը հանէր Փասիս կամ Ճորոխ գետը, անկէց Կողքիս, և Կողքիսէն ալ Սև ծովով կը տարածուէր բոլոր Յունա֊

ստան և Եւրոպա : Այս վաճառքները Հընդկաստանէն բերողները շատը Հայերն էին . ինչպէս կը վկայէ Հուստինոս ալ , թէ Կասպից ու Պոնտոսի ծովը Հայոց ամէն տեսակ վաճառքներ կը մատակարարէր , զորոնք Հայերը Պարսկաստան և ուրիշ տեղեր տանելով կը ծախէին :

439 . Սև ծովով նաւարկութիւնը. Երբ սկսաւ :

Սև ծովը վտանգաւոր ըլլալուն համար , իրեն նաւարկութիւնն ալ Միջերկրական ծովին նաւարկութենէն շատ ուշ սկսաւ . և կ'երևի թէ նախ Սև ծովուն մէջ նաւարկութիւն ընողները Արգոնաւորդները եղան Քրիստոսէ 1200 տարի առաջ : Սակայն քանի որ Սև ծովուն նաւարկութիւնը այնչափ յաճախուած չէր , Հայերը իրենց վաճառքները կը տանէին Յոնիա , Ասորւոց երկիրը և Կիլիկիա , որոց մէջ անուանի վաճառատեղիներ կային , և Փիւնիկեցիք ու Տիւրացիք կու գային այն տեղերէն կ'առնուին վաճառքները ու ասոնց անգին կը տարածէին :

440 . Հայերը որ ճամբով դէպ 'ի Ովկիանոս վաճառականութիւն կ'ընէին :

Տիգրիս ու Եփրատ գետերով կ'երթային Պարսից ծոցը , անկէց ալ Ովկիանոս : Այս գետերուն վրայ այլևայլ վաճառատեղիներ շինուած էին , որոց մէջ անուանի է Բաբելոն քաղաքը Եփրատին վրայ : Երոդոտոս մանր կը պատմէ Հայոց վաճառականու-

թիւնը որ Եփրատ գետոյն մէջէն կ'ընէին ։ « Հայերը, կ'ըսէ, իրենց նաւուն կողերը ուռենիի ճիւղերէ կը շինէին, ու դրսի կողմը բոլոր մորթով կը պատէին. և նաւուն առաջքը ետևի կողմէն տարբերութիւն չունէր, վասն զի երկու կողմն ալ կլորկեկ կը շինէին. մէջը կը դնէին այլևայլ տեսակ վաճառքներ, մանաւանդ գինի ։ Այս նաւերուն մեծերը ինչուան 5,000 տաղանդ, այսինքն 725,000 լիտր ծանրութիւն կը տանէր, և ամենուն մէջն ալ էշեր կը դնէին ։ Երբոր Եփրատ գետոյն մէջէն Բաբելոն կը հասնէր նաւը՝ որոյ կառավարողները երկու հոգի էին միայն, մէկը առջևէն մէկալը ետևէն, կը պարպէին նաւը ու կը ծախէին ամէն վաճառքները նաև նաւուն ուռենիէ կողերն ալ, ու նաւուն վրայ պատած կաշին առնլով կը բեռնաւորէին էշերու վրայ. ու կը դառնային Հայաստան, ու նորէն կը շինէին նոյն կերպով ուրիշ նաւեր՝ վասն զի Եփրատ գետէն դէպ 'ի վեր նաւարկելը անկարելի է սաստիկ սրընթացութեանը պատճառաւ » ։

441. Հայաստանի սեպհական վաճառքները որո՞նք են ։

Հայաստանի սեպհական վաճառքներն են ոսկի, արծաթ, ցորեն, գարի, աղ, փուշ, բամբակ, ոչխարի և այծի մորթ, արջառ, ոչխար, ձի, ջորի, որդան կարմիր, զագպէն՝ որ մանանայի նման բան մի է, ծառերու վրայ կ'իջնայ և մեղրի համ ու-

նի․ չորցուցած ծիրան, չամիչ ․ գինի, խաշընդեղ, մեղր, տաւեխ՝ որ աղխառած ձուկ է, և կ՚ելլէ Բզնունեաց ծովէն, հայկաւակ, աղքար, և այլն ։

442․ Հայաստանի վաճառատեղիները կամ չահաւոր քաղաքները որո՞նք են ։

Յիշատակութիւն չկայ թէ հին ատեն մը քաղաքներն էին վաճառատեղի, բայց կ՚երևի թէ Արմաւիր, Արտաշատ Թագաւորանիստ քաղաքներն էին, որ դիրքերնին ալ յարմար է վաճառականութեան Երասխայ մօտիկ ըլլալուն համար ։ Վեցերորդ դարուն մէջ խիստ անուանի վաճառատեղի էր Դուին քաղաքը, ուր Վրաստանէն, Պարսկաստանէն, Յունաց երկրէն, Հնդկաստանէն և ուրիշ ամէն ազգերէն վաճառք կու գար, ինչպէս որ կը վկայէ նաև Պրոկոպիոս ։ Շատ կը գովէ Լաստիվերտցին Արծն աւանին վաճառականներն ու վաճառականութիւնը որ Կարինին մօտիկ է, նոյնպէս Կարս քաղքինը որ ԺԱ դարուն ծաղկեցաւ ։ Անուանի էր նաև Բաղէշ և Կոմանա ու Մելիտինէ՝ փոքր Հայոց մէջ ։ Հայաստանի շատ անուանի վաճառատեղիներէն մէկն ալ էր Սպեր կամ Սովփեր, որոյ ոսկին խիստ ազնիւ և առատ էր, որ սուրբ Գրքին մէջը ստէպ կը յիշուի ։

443․ Ինչէ՞ն կը կարծուի թէ Սովփերը նոյն է մեր Սպերին հետ ։

Նախ Ծննդոց գրքին մէջ ( Ժ․ 29 ) բաց ՚ի Եօթանասնից Թարգմանութենէ ուրիշնե-

ըը Սովփերին տեղ Ոփիր կը դնեն , որ յայտնի է թէ Յեկտանայ որդւոյն Ուփիր նախահապետին անուանէն եղած էր , վասն զի սուրբ Գրքին մէջ ուրիշ տեղ կ'ըսէ , յիշելով Յեկտանայ զաւկըներուն անունները . ( Ծն . Ժ . 30 ) « Ամենեքին սոքա որդիք Յեկտանայ . և եղև բնակութիւն նոցա 'ի Մասեայ մինչև 'ի գալ 'ի Սովփերա ( կամ Ուփիրա ) լեառն արևելեայց » - որով կ'երևայ թէ Յեկտանայ տասնուերկու զաւկըներէն մէկն՝ Ուփիր , Սպեր լեռան մօտ բնակեցաւ , և լեռան անունն ալ կոչուեցաւ Ուփիր . ըստ սուրբ գրոց Սովփեր , Սեփարուաիմ , Սափփար . զոր օտարազգի մատենագիրները ինչպէս Գիոդոր Սիկիլիացի , Ստրաբոն և Երոդոտ քիչ մը ծամակելով կ'անուանեն Սեփարխարիդիտիս , Սիպար . Սափիր կամ Սափիր , և Հայաստանին մօտիկ կը դնեն Կողքիսի մէջ : Իսկ թէ մեր Սպերը նոյն է Սովփերին հետ , կը ցուցընէ նախ , անուանին մերձաւորութիւնը . բ , տեղւոյն դիրքը , վասնզի ինչպէս սուրբ Գիրքը և օտարազգի մատենագիրները Հայաստանի մօտիկ կը դնեն , այսպէս ալ Խորենացին մեր Սպեր գաւառը բարձր Հայոց մէջ կը դնէ , որ Կողքիսի սահմանակից է :

444 . Սողոմոնի և Քիրամայ նաւերը ինչ ճամբով Սովփեր կ'երթային :

Ասոնց նաւարկութիւնը , ինչպէս կ'ըսէ Կալմէթ , Սև ծովով չէր , վասն զի դեռ Սողոմոնի ատեն անծանօթ էր Սև ծովուն

նաւարկութիւնը . Հապա Գասպիցարևելքէն կ՚ելլէին , որ Կարմիր ծովուն վրայ է , կ՚երթային Պարսից ծոցը , անկէց կը մտնէին Տիգրիս ու Եփրատ գետերուն մէջ , ու կ՚երթային անոնց վրայ շինուած վաճառատեղիները , և հոն կ՚առնուին վաճառականներէն Սպեր կամ Սովփեր լեռնէն բերած ոսկին , և ուրիշ վաճառքներ որ կու գային այն վաճառատեղիները՝ Հնդկաստանէն և ուրիշ երկիրներէն . ինչպէս են սիրամարգ , կապիկ , փղոսկր , և այլն , Եւ կամ թէ Սողոմոնի նաւերը ՚ի դարձին կը հանդիպէին Արաբիայի և Եթովպիայի նաւահանգիստներն ալ , ու հոնկէ կ՚առնուին փղոսկր , կապիկ , և ասոնց նման բաներ , և այլն . ասոր համար է որ նաւարկութիւնն ալ երկայն ատեն կը քշէր :

445 . Ուրիշները Սովփերը ո՞ւր կը դնեն :

Եղան ոմանք որ Սովփերը դրին Սպանիա , հոն եղած ոսկիին առատութեանը համար , ոմանք Հնդկաստան և Սէյլան ու Սումատրա կղզիները , իբր թէ ինչ որ կ՚ուզէր Սողոմոն , այս երկիրներուն մէջ կը գտնուէր . բայց Հնդկաց ծովուն մէջ Սողոմոնի ատեն դեռ նաւարկութիւնը առաջ գացած չէր : Եղան ոմանք որ ինչուան Ամերիկայի Բերու-աշխարհը դրին , իրենց ոսկիին շատութեանը համար : Շատերն ալ Արաբիայի եզերքը կը դնեն այս երկիրը : Մեզի հաւանական կ՚երևնայ վերի ըսածնիս , որ սուրբ Գրոց և արտաքին պատմիչներու ըսածին ալ կը յարմարի :

446 . Հայաստանին մօտիկ ի՞նչ երևելի շահաստան քաղաքներ կային ուր մեր վաճառականներն ալ կը յաճախէին։

Բաբելոն քաղաքը Եփրատայ վրայ՝ Քաղդէացւոց երկրին մէջ, Անտիոք և Տապատակ Ասորւոց երկիրը Եփրատայ քով, Պալմիրա Փիւնիկեցւոց երկիրը. այս քաղաքին շինութիւնը Յովսեպոս Սողոմոնին կու տայ։ Որիս Տիգրիսին մօտիկ, Գաղնա Միջագետքի մէջ, Դիոսկուրիաս Կողքիսի մէջ Սև ծովուն մօտիկ խիստ անուանի վաճառատեղի էր հին ատեն. Տրապիզոն Սև ծովուն վրայ վերջի ատենները անուանի վաճառատեղի եղաւ Յունաց կայսերութիւնը Կոստանդնուպօլսէն դադրելէն ետև։

447 . Թարշիշին վրայ ի՞նչ գիտելիք կան։

Թարշիշ կամ Թարսիս հռչակաւոր վաճառատեղին էր ըստ ոմանց Կիլիկիոյ մէջ Միջերկրական ծովուն մօտիկ, և այսպէս կոչուած կ'երևի Յաւան Նահապետին Թարսիս կամ Թարշիշ (Ծն. ժ. 27) որդւոյն անունովը։ Այս քաղքին օտար ազգերը Թարսուս կ'ըսեն և մեր լեզուով Տարսոն։ Ոմանք ալ կը կարծեն թէ Թարսիսը Սպանիոյ մէջ է. բայց սուրբ Գրոց խօսքերէն ալ կ'երևի որ Թարշիշը Միջերկրական ծովուն վրայ էր և Հրէաստանէն շատ հեռու չէր։ Եւ դարձեալ, երբեմն Սողոմոնի նաւերը կ'երթային նախ Գասիոնգաբեր՝ որ Կարմիր ծովուն մէջն է, անկէց Թարշիշ. իսկ արդ թէ որ Թարշիշը Սպանիա ըլլար, պէտք էր

որ Սողոմոնի նաւերը պտըտէին բոլոր Ափրիկէի չորս դին, և Բարեյուսոյ գլխէն անցնելով երթային Սպանիա, որ անկարելի է, վասն զի դեռ այն ատենները՝ սովորութիւն չկար այն ծովերուն մէջ ճամբայ ընելու ։

448. Սողոմոնի նաւերը ի՞նչ ճամբով Թարշիշ կ'երթային ։

Սողոմոնի նաւերը երկու ճամբով կրնային Թարշիշ կամ Տարսոն երթալ. մէյմը Միջերկրական ծովուն մէջէն, մէյմ՛ ալ Կարմիր ծովուն մէջէն Գասիոնգաբեր երթալէն ետև, կը մտնէին Պարսից ծոցը, անկէց Եփրատ գետը, և մօտիկ շինած այլևայլ վաճառատեղիները հանդիպելով՝ ուզած վաճառքնին կ'առնուին ու կ'երթային Թարշիշ՝ որ Եփրատ գետոյն մօտիկ էր ։

449. Հայոց հիմակուան վաճառականութեանը վրայ ի՞նչ գիտելիք կան ։

Հայերը իրենց աշխատասէր եռանդուն ու տոկուն բնութեամբը ինչպէս հին ատեն, նոյնպէս նաև հիմակուան ատենս ալ երևելի եղած են վաճառականութեան մէջ, որուն կը վկայեն օտար ազգերն ալ. վասն զի Եւրոպային մէջ վաճառականութիւնը ծաղկեցընողը ու սովրեցընողը Հայերը եղան ։ Ինչպէս Ռըշըլիէօ կարդինալը, որ Լուդովիկոս ԺԳ ին թագաւորահայրը կը համարուէր, վաճառականութիւնը Գաղղիայ մէջ ծաղկեցընելու համար, շատ Հայեր կանչեց Գաղղիա, ու իրենց Մար-

սրբյիս քաղաքը տպարան մը տուաւ Հայերէն գրքեր տպելու համար ։ Մեծն Պետրոս շատ Հայեր կանչեց Ռուսաստան վաճառականութիւնը ծաղկեցընելու համար ։ Եւրոպայի ուրիշ աշխարհներու մէջ ալ վաճառականութիւնը ծաղկեցընողը Հայերն եղան, ինչպէս Լեհաստան, Հոլանտա, Իտալիա՝ ուր Վենետիկ քաղաքը առաջուց շատ հարուստ վաճառականներ կային. իսկ Ասիոյ մէջ Պարսկաստան, Հնդկաստան վաճառականութիւնը ծաղկեցընողը նախ Հայերը եղան, ու Անգղիացիք իրենցմէ ամրելով յաջողակեցին անոնցմէ այս վաճառականութիւնը. բայց ինչուան հիմա ալ այն կողմերը շատ հարուստ վաճառականներ կը գտնուին Հայոց ազգէն ։ Վաճառականութեան ոգին է, որ Հայերը իրենց Հայրենիքէն դուրս օտար երկիրներ բնակեցընել կու տայ ։ Ու ասով կը ցուցնէ թէ Հայերը ինչպէս հին ատեն Փիւնիկեցոց, Տիւրացոց ու Կարքեդոնացոց պէս վաճառականութեան համար եղող ազգերէն մէկն էին, ասանկ ալ հիմա երեւելի են վաճառականութեան մէջ իրենց ճարտարութեամբը ու արթնութեամբը *

* Բազմաթիւ օտարազգեաց վկայութիւններէն, հոս միայն Մալթըպրէնը բերենք, որ կ՚ըսէ իր աշխարհագրական բառագիրքին մէջ. « Հայերը շատ յարմար են վաճառականութեան, ու ամէն ջանքով և ուշով որ կրնան անոր եռանդեն կ՚ըլլան ։

# ԳԼՈՒԽ ԺԷ.

Հայաստանի բնակչաց ճարտարարուեստութիւններն ու վաճառականութիւնները :

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### Հայոց ազգին ճարտարարուեստութիւնները .

450 . Նոյէն ինչուան աղդաց բաժանումը ի՛նչ մասնաւոր բնութեան տէր էին Հայաստանի բնակիչները :

Նոյէն ինչուան Փաղեկայ ատենը, որ 530 տարուան միջոց է, արտաքին պատմիչները Ոսկի դար կ՚անուանեն, և չեն կրնար այն միջոցին եղած Հայաստանի բնակչաց երջանկութիւնը ու առաքինութիւնները պատմելու . վասն զի Նոյէն ինչուան Փաղեկայ ատենն մարդիկ Հայաստանի մէջ բազմացան : Ամէն բան հաստատուած էր այն ատենն, չէր լսուեր ինչ, քաղքի .

Չէ՛ թէ միայն տէր են վաճառականութեան արուեստին մէջ. հապա նաև օգնական Եւրոպայի մեծամեծ վաճառքներուն ». Հուն երկայն բարակ Հայոց ազգին բնութիւնը, ու անոնց վաճառականութեան կերպը գովելէն ետև, կ՚աւելցընէ. « Համառօտ ըսել ; Հայերը որ առաջին երկրագործներն էին, անկէց եղան նաև առաջին վաճառականները . և այս վաճառականները աշխարհիս ամէն կողմերն ՚ի վեր շատ երևելի եղան » :

ոչ յափշտակութիւն կար՝ ուրիշին ստացուածքին, ոչ ագահութիւն, ոչ փառասիրութիւն և ոչ իշխանասիրութիւն: Բարքերնին անմեղ ու կիրթ. բնութեամբ միաբանասէր, ընտանիք ու գթա[illegible] մէկ սիրտ, մէկ լեզու: Պէտք չէ չափազանցութիւն սեպել այս բաները. վասն զի բնական է որ Ջրհեղեղին մեծ պատիժը յիշելով, որ դեռ նոր եղած էր, զգուշանային մարդիկ ամերէն ու առաքինութեան ետեւէ ըլլային, որուն մեծ օրինակ ու յորդորող էր Նոյ նահապետն ալ:

451. Մարդկանց Հայաստանէն ցրուելէն ետև ի՞նչ բնութիւն ունէին մնացած Հայաստանի բնակիչները:

Հայկ երբոր աշտարակաշինութենէ ետև Հայաստան դարձաւ, սկսաւ երկիրը կարգի կանոնի դնել իր որդւոցն ու թոռներով մէկտեղ: Եւ Հայկայ մահուընէ ետև քանի որ Հայաստանի մէջ օտար թշնամիներ չէին յարձակած, խաղաղութիւն էր ամէն տեղ, և շինութեան ետևէ կ'ըլլային. բայց այս խաղաղութեան պատճառաւ կ'երևի թէ Հայկայ յաջորդները մոռցեր էին իրենց նախահօրը քաջութիւնը, որով թշնամիները արձակ համարձակ տիրեցին Հայաստանի զանազան կողմերուն. ինչուան որ ելաւ մեծն Արամ, որ բոլոր թշնամիները վանեց ու աշխարհը կարգի կանոնի դրաւ: Բայց իրմէ ետքը սկսաւ շինութեան ու բարեկարգութեան, անմեղութեան ու խաղաղու-

Թեան ոգին պակսիլ, ինչուան նոր մեծն Տիգրան, որ այլևայլ բարեկարգութիւններով զարդարեց Հայաստան աշխարհը։ Տիգրանէն ետև նորէն իր առջի խեղճ վիճակին դարձաւ, ինչուան Վաղարշակ Պարթևին առեն, որ եկաւ Հայաստանի տիրեց, որով Հայկազանց տէրութիւնը վերցուեցաւ, սկսաւ Արշակունեաց տէրութիւնը։

452. Մարմնոյ ուժի ու քաջութեան կողմանէ ո՞րնք անուանի եղան Հայոց մէջ։

Քաջութեան ու մարմնոյ ուժի կողմանէ խիստ երևելի էր մեր ազգը, անանկ որ եթէ ամէնքն ալ միաբան ըլլային, թերևս օտար ազգ չկարենար իրեն յաղթել, թէ որ մարմնոյ կտրճութեան հետ մէկտեղ նաև պատերազմական կրթութիւնն ալ աղէկ ունենար։ Անթիւ քաջերուն մէջէն զանէ յիշենք հոս, Հայկ, Արամ, մեծն Տիգրան, Վահագն, Տորք, Արշակ Ա., Տրդատ, Բաբիկ՝ Սիւնեաց Անդովկ իշխանին որդին, Վարազդատ, քաջն Մուշեղ՝ Պապ թագաւորին սպարապետը, մեծն Վարդան, Վահան Մամիկոնեան, Սմբատ Բագրատունի, Աշոտ երկաթ, Ապլխարիպ, և ուրիշ շատ երևելի ու քաջ զօրավարներ։ Ուստի համառօտ կերպով կ'ըսենք թէ մեր ազգը 'ի սկզբանէ ինչուան հիմա մարմնական քաջութեան, ու զօրաւոր կազմուածք ունենալու կողմանէ անուանի եղած է։

453. Հայք ո՞ր բարոյական առաքինութեանց մէջ անուանի եղած են։

Ողորմածութեամբ շատերը անուանի ե-
ղան, Թողլով ուրիշները, մեծն Ներսէս,
Խադ, Վահան Մամիկոնեան՝ Գագ Թա-
գաւորին քաջ ապստամբը, Աշոտ Գ Բա-
գրատունի Թագաւորը որ միշտ իր սեղանը
աղքատներով կը զարդարէր, և անոր հա-
մար անուանեցաւ ողորմած ։

Աստուածճանաչութիւնը ընդհանրապէս բո-
լոր մեր ազգային ձիրքն էր, ինչպէս որ
յայտնի կ'երևի Աստղիկին և Վարդանայ
խօսքէն, որ աստուածճանաչութիւնը Հայոց
կու տան, իսկ ուշտութիւնը, այսինքն ծնու-
քը գոց ըլլալը՝ Յունաց ։

454. Աշխարհաշինութեան կողմանէ ո-
րոնք երևելի եղան ։

Աշխարհաշինութեան ընդհանրապէս բոլոր
Հայկազանց ամէն Թագաւորները նշանէ
կ'ըլլային, որոց մէջ ամենէն անուանիներն
են Արամ՝ և Տիգրան ։ Իսկ Արշակունեաց
մէջ երևելի եղան Վաղարշակ, որ ա, ստա-
ցուածքը ծաղկեցուց ։ բ, գիտութեան,
իր պալատին, նախարարներուն ու ազգու-
թեան կազմութեան վրայ ։ գ, այլևայլ օրէնք-
ներ ու քաղաքավարութիւններ հաստատեց ։
դ, զանազան շինութիւններ ըրաւ, և եղաւ
մեր Թագաւորներուն պարծանքն և անմահուն
օրինակ ։ Արշակ Ա, Արտաշէս Բ, որ գի-
տութիւններն ու արուեստները Վաղարշա-
կէն շատ աւելի ծաղկեցուց, ու Հայաստա-
նի ժողովուրդը շատցուց ։ Վահան Մամի-
կոնեան քաջ սպարապետն ու մարզպանը,

և Մամիկոնեան ցեղէն ուրիշ զօրավարներ, որոնք աշխարհաշինութեան կողմանէ շատ երևելի եղան : Նոյնպէս Բագրատունեաց ցեղէն Աշոտ առաջին Թագաւորը որ շատ բարեկարգութիւններ ու շինութիւններ ըրաւ իր տէրութեանը մէջ :

435. Մեծն Ներսէս ի՞նչ շինութիւններ ըրաւ :

Մեծն Ներսէս գրեթէ մեր երևելի Թագաւորներուն հաւասար ու անոնցմէ ալ աւելի շինութիւններ ըրաւ Հայաստանի մէջ, որ են, աղքատանոցներ, հիւանդանոցներ, որբանոցներ, այրենոցներ, հիւրանոցներ, պանդոկներ, դպրոցներ, վանքեր, կուսատուններ, և այլն. և այս ամէն տեղերուն առանձին կալուածներ, Թոշակներ, ու վերակացուներ հաստատեց: ու եղաւ ճըշմարիտ ողորմած հայր բոլոր Հայոց. և բաց 'ի ուրիշ բարեկարգութիւններէն, որոնց նաև որ աղքատները չմուրան ճամբուն վրայ, հապա երթան աղքատանոցներու մէջ բնակին. արգիլեց մերձաւոր ամուսնութիւնները, նոյնպէս արգիլեց որ մեռելոց վրայ հեթանոսաբար սաստիկ ողբ չընեն : Բայց Պապ Արշակունի անարժան Թագաւորը մեծն Ներսէսը Թունաւորելով սպաննելէն ետև, հրաման տուաւ որ բոլոր մեծին Ներսէսի շինած հիւանդանոցները, այրենոցները, աղքատանոցները, կուսատունները, և այլն, աւրեն, ու անոնց եկամուտները տէրութեան գրաւեն, ու աղքատ-

նեղը ամէնքին պէս մուրատն, որով Հայաստան իր առջի խեղճ ու ողորմելի վիճակը դարձաւ։

456. Ուրիշ ինչ կատարելութիւններ ունին Հայք։

Հայերը բնութեամբ շատ աչքաբաց են, և իրենց բանը գործը գիտցող, որով խիստ ալ յարմար են վաճառականութեան ու առեւտուրի։ Դարձեալ խիստ յարմար են ուսման ու արուեստի, որով երեւելի մարդիկ շատ կրնային ելլել մէջերնէն, թէ որ ամէնքն ալ միակերպ ուսումնասիրութեան ետեւէ ըլլային։ Նոյնպէս ամէն ատեն ալ ու ամէն տեղ մեծ յարմարութիւն ցըցուցած են արհեստներու, ու ձեռագործ ճարտարութեանց մէջ։ Բայց ամենէն Հայոց ազգին կատարելութեանց մէկը կը սեպուի նաև այս, որ Հայոց ազգը հին Եգիպտացւոց պէս միայն իր երկիրը պաշտպանել կը ջանար թշնամեաց ձեռքէն, և ոչ հինաւուր ուրիշներուն երկիրները վազել ու յափշտակել՝ անարդարութեան և իրաւանց ազգաց դէմ։ Միայն Արտաշէս եղաւ որ փառասիրութեամբ պատերազմ բանալով տիրեց Պարսկաստանէն ինչուան Յունաստան, բայց իր զօրքերէն սպաննուեցաւ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Հայոց ազգին պակասութիւնները.

457. Հայոց ազգին գլխաւոր պակասութիւնները որո՞նք են ։

Շատ փափագելի էր որ այս գլխոյս վրայօք բան մը չունենայինք գրուցելու. բայց մէկը՝ որ ազգային պատմութիւնը ուշի ուշով կարդայ ու քննէ այլեւայլ ժամանակ, այլեւայլ դէպքերու մէջ ազգին գլուխը եկած կերպ կերպ չարիքը ու թշուառութիւնները, անկարելի է որ չխոստովանի թէ ոչ միայն շրջակայ օտար ազգաց թշնամութիւնը ու անգթութիւնը, այլ շատ հեղ նաեւ ազգայնոց բարոյական պակասութիւնները պատճառ եղեր են ազգին խեղճութեանը ։ Այս պակասութիւններուն մէջ ամենէն աւելի եւ աչքի զարնողը Անմիաբանութիւն կամ երկպառակութիւնն է, որ շատ չարեաց պատճառ եղաւ Արշակունեաց, Բագրատունեաց, եւ մարզպանաց ժամանակը, եւ մանաւանդ Վարդանանց պատերազմին ատեն. որոյ մէջ Վասակ Սիւնիին անմիաբանութեանը պատճառաւ Պարսիկք բոլոր Հայաստանը տակն ու վրայ ըրին ։ Նոյնպէս նաեւ շատ աւերմունք ու նեղութիւններ կրեց Հայաստան, Բուղայի ու Ցուսփայ ոստիկաններուն ատեն մեր իշխանաց անմիաբան ըլլալուն համար ։

Անմիաբանութիւնն էր որ շատ անգամ համազգեաց արիւնով դաշտերը կը ներկէր, նախարար, իշխան մէկմէկու դէմ զրգռելով: Դարձեալ անմիաբանութեան պատճառաւ էր որ Բագրատունեաց ատենը այլեւայլ մանր թագաւորութիւններ բաժնուեցան չուզելով մէկմէկու հնազանդիլ. Նոյն պատճառաւ նաեւ կաթողիկոսական աթոռն ալ զանազան ճիւղ բաժնուեցաւ: Ուստի մեր ազգին պատերազմներուն մէջ յաղթուելուն պատճառը՝ ոչ թէ իրենց վատութիւնը կամ տկարութիւնն էր, հապա շատ անգամ անմիաբանութիւնն էր: Իսկ երբոր իշխանները ու զօրքերը թագաւորին հետ միաբանած թշնամեաց դէմ կը պատերազմէին, միշտ յաղթող կ'ըլլային: Ինչպէս Արշակ Բ ին ատենը քանի որ նախարարներն ու զօրքերը իրենց հետ միաբան էին, 30 տարի անդադար պատերազմ ընելով միշտ յաղթեց Պարսից, բայց երբոր զօրքերը իրենց թագաւորը թողուցին և չուզեցին հնազանդիլ, մէկէն յաղթուեցան:

458. Մեր ազգին ո՞րն է երկրորդ գլխաւոր պակասութիւնը.

Երկրորդ պակասութիւնն է նախանձը որ շատ անգամ անմիաբանութեան ալ պատճառ կ'ըլլայ: Վասն զի ուր որ հաւասար պատուոյ և իշխանութեան մը անձկացեալ նախարարներ ու իշխաններ շատ զանազանին, հոն նախանձն ալ աւելի կ'ըլլայ, որով մէկը մէկալէն աւելի ուզելով մեծնալ ու պա-

տալով , անիրաւ քսութիւններով ընկերին չարեացը ու մահուանն ալ պատճառ կ'ըլլայ . և երբեմն վարպետորհուրդ մատնութեանց ալ :

459 . Ուրիշ ի՞նչ պակասութիւններ կը յիշուին մեր ազգին վրայօք :

Մեր ազգին պակասութիւններէն մէկն էր բնութեամբ անխորագէտ ըլլալը . որով բանի մը ետև առաջը չմտածած իրենք զիրենք կը կործանէին , և վնասէն ետքն ալ դարձեալ չէին զգաստանար . Ինչպէս , թէպէտ այնչափ անգամ փորձեր էին թէ Պարսիկք միշտ նենգեր են զիրենք , ու Հաւատոյ կողմանէ ալ այլևայլ ատեն հալածանք հաներ են , և սակայն նախարարները միաբան գնացին խնդրեցին Պարսից թագաւորէն , որ իրենց բնիկ Արշակունի թագաւորը վերցընէ , ու Պարսիկ մարզպան դնէ . միտքերնին դնելով թէ օտար թագաւորը իրենց համարիւն թագաւորէն աղէկ է . որով անկէ ետքը նեղութիւն ու վիշտ չմնաց զոր Հայաստան չքաշէ թէ՛ հաւատոյ և թէ տէրութեան կողմանէ : Նոյնպէս մեծ սըխալմունք էր բոլոր նախարարներուն միաբան Յազկերտին երթալը . ուր ինչպէս կ'ըսեն Փարպեցին ու Եղիշէ , գիտէին թէ խաղաղութեան համար չիկանչեր զիրենք . հապա սպաննելու կամ հաւատքնէն ուրացընելու համար : Նոյնպէս սխալմունք էր որ Վարդանանց պատերազմին ատեն Վասակը՝ որ այնչափ չարութիւններ ըրեր էր ,

բռնելով նորէն Թողուցին, Թէպէտ՝ կ՚ըսէ Եղիշէ՝ գիտէին Թէ երդմունքը պիտի չպահէ, ու նորէն պիտի Թշնամանայ։ Նոյնպէս սխալմունք էր Գագիկ Բագրատունեաց վերջի Թագաւորին ըրածը, որ Վեստն Սարգիսը բռնելէն ետև նորէն արձըկեց, ու իրեն Ներքին խորհրդական ըրաւ, ուր շատ անգամ փորձեր քններ էր անոր խորամանկութիւնը, չարութիւնը և անհաւատարմութիւնը։ Նոյնպէս անխորագիտութիւն էր բոլոր Նախարարներուն միաբան Բուզային երԹալը. բայց ասկէց ալ աւելին այն է, որ երբոր Բուզա մնացած նախարարներն ալ կանչեց, երդուըննալով ու այլևայլ պարգևներ խոստանալով, անոնք միամտութեամբ հաւատալով անոր խօսքին գնացին իրեն, Թէպէտև գիտէին անոր ըրած չարութիւնները, և Թէ առջի գացած նախարարները բոլոր բռնեց ու զամէնքը կապած ամիրապետին խաւրեց. ասով գրեթէ բոլոր նախարարները ջնջուեցան Հայաստանի մէջէն, որ է իրենց անխորագէտ ու պարզամիտ ըլլալուն պտուղը։

460. Մեր ազգին պակասութեանց պատճառը ո՞րն է։

Առաջին և գլխաւորագոյն պատճառն է անկրթութիւնը. վասն զի 'ի սկզբանէ հետէ շատ պակաս էր մեր ազգին մէջ դպրոցներ բանալու ջանքը և սովորութիւնը, ուր որ պզտիկուց սկսեալ տղոց բարքը յառաքինութիւն կը շտկուի։ Այս պատճառաւ նաև

ուսմունքները ետ կը մնային, ինչպէս կ'ըսեն Մագիստրոս, և Յոհան Եզնկացին։ Ուստի մեծամեծներուն տղաքը իրենց տանը մէջ առանց կրթութեան փափուկ մեծնալով, շատը ըմբոստ, կամապաշտ, ինքնագլուխ մարդիկ կ'ըլլային։ Թէպէտև Արտաշէս Բին, Վռամշապուհոյ և ուրիշ քաղաքագէտ Թագաւորաց ատեն այլևայլ դըպրոցներ բացուեցան, բայց քիչ ատեն տևեցին, և յաջորդ Թագաւորները անփոյթ եղան անոնց վրայ։

Երկրորդ պատճառն է նախարարներուն ազատ իշխանութիւնը, որ մէյմէկ պզտի Թագաւորի պէս իրենց երկիրը կը կառավարէին որդւոց որդի յաջորդելով։ Այս տեսակ կառավարութիւնը Թէպէտև աւելի փառաւոր է, բայց այնչափ աւելի վնասակար կ'ըլլայ ազգի մը, որչափ որ այն ազգը դեռ անկիրթ է. որով տեսակ տեսակ մոլութեանց ու ախտից ենթակայ կ'ըլլայ։

Երրորդ պատճառն է ընտիր և առաքինի անձանց պաշտօնի չհասնիլը, և իրենց քաջութեանցը կամ արդեանցը վարձք չիտրուիլը. և ընդ հակառակն շատ անգամ անպիտան և մոլի մարդկանց պաշտօնի հասնիլը. որով և քաղաքականութիւնը ազգերնուս մէջ շատ ետև մնացած էր Արշակունեաց վերջի Թագաւորներուն ժամանակէն սկսեալ։ Եւ որ տէրութեան և ազգի մէջ անյարմար անձինք շատ կը գտնուին պաշտօնի մէջ, այն տէրութեան և ազգին չէ

թէ միայն՝ յառաջադիմութեանը արգելք կ՚ըլլան, հապա նաև անոր կործանմանը պատճառ :

461 . Մեր ազգին պակասութեանցը ինչ դարման կրնայ ըլլալ :

Որովհետև մեր ազգին աղետից գլխաւոր պատճառը անկրթութիւնն է եղած, ուստի կրթութենէ աւելի զօրաւոր դարման մ՚ալ չկրնար ըլլալ իրեն : Վասն զի միայն դաստիարակութիւնն է որ մարդուս ճանչցընել կու տայ իրեն առ Աստուած առ անձըն և առ ընկերս ունեցած պարտքերը : Եւ ահա այս պարտքերուն ճանաչմանն որով և գործադրութեանը վրայ հաստատեալ է ազգի մը ճշմարիտ երջանկութիւնը . և զատոնք լաւ չճանչնալուն որով և 'ի գործ չդնելուն բնական հետևանքներն են այն ամենայն մոլութիւնք ու աղէտք, որոնք հեռըզհետէ, անապատ դարձուցին մեր ցանկալի հայրենիքը : Արդ եթէ մեր տղաքը մտքերնին կրթելու ու զարգացընելու ջանան իրենց դաստիարակուելու ժամանակը՝ այնուհետև ոչ միայն իրենք իրենցմէ կարող կ՚ըլլան մեր ազգին դաստիարակութեան պակասութենէ կրած թէ կրօնական և թէ քաղաքական աղետիցը խելամուտ ըլլալ, հապա նաև անոր դարմանին ալ իրենք իրենցմէ օգնական եղած կ՚ըլլան, տուած լաւ դաստիարակութեանը գործադրութեամբ :

# ՑԱՆԿ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

